ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

11

ՆՈՅԵՄԲԵՐ

ԵՐԵՎԱՆ 1963

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ


№ 11
ՆՈՅԵՄԲԵՐ
1963 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
42-ՐԴ
ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԼՈՒՍԱՎԱՌ ԴՐՈՇՈՎ

Նոյեմբերը նշանավոր ամիս է: Այս ամսին, 46 տարի առաջ հաղթանակեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան, որը նոր դարագլուխ բացեց մարդկության պատմության մեջ: Հայ ժողովրդի համար նոյեմբերը կրկնակի նշանակալից ամիս է: 1920 թվականի նոյեմբերի 29-ին հոկտեմբերյան ռևոլյուցիայի ազատարար դրոշը ծածանվեց Հայաստանի դաշտերի ու լեռների վրա, հայ ժողովուրդը թոթափեց իր ուսերից օտարերկրյա զավթիչների ու նրանց գործակալների՝ դաշնակ բախտախնդիրների արգահատելի լուծը, բռնեց ազգային վերածնության ու սոցիալիզմի լուսավոր ուղին:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան հիմքից ցնցեց համաշխարհային կապիտալիզմի ամբողջ շենքը, ստեղծեց սովետական սոցիալիստական պետությունը, հզոր խթան հանդիսացավ բանվորական ռևոլյուցիոն շարժումների և ճնշված ժողովուրդների ազգային ազատագրական պայքարի վերելքի համար: Նա վճռական ազդեցություն ունեցավ ինչպես Ռուսաստանի մյուս ժողովուրդների, այնպես էլ հայ ժողովրդի պատմական բախտի վրա:

Հայաստանի պատմությունը, ընդհուպ մինչև սովետական կարգերի հաստատումը, լի է ողբերգական իրադարձություններով: Իր գոյության երկու և կես հազար տարվա ընթացքում հայ ժողովուրդը ճնշվում ու հարստահարվում էր սեփական շահագործողների և օտար նվաճողների կողմից: Գտնվելով Եվրոպայի ու Ասիայի բախման կետում՝ Հայաստանը շարունակ եղել է արյունալի արշավանքների ու պատերազմների թատերաբեմ: Նրա վրայով հրով ու սրով անցել են Արևելքի ու Արևմուտքի բազմաթիվ նվաճողներ: Այդ արշավանքների հետևանքով Հայաստանը շատ անգամ է մասնատվել, ավերվել, տեսել է անչափ ու անհաշիվ կոտորածներ: Տասներեքերորդ դարից սկսած, ամբողջ հարյուրամյակներ, հայ ժողովուրդը զրկված էր անկախությունից, խաղաղ, ստեղծագործ աշխատանքով ապրելու հնարավորությունից: Լինելով աշխարհի հնագույն ու կուլտուրական ժողովուրդներից մեկը, նա հարկադրված էր իր գոյությունը քարշ տալ օտար բռնակալների սրի ներքո, ֆիզիկական ոչնչացման մշտական սպառնալիքի տակ: Բայց ազատության հուրը երբեք չէր մարում հայ ժողովրդի սրտում: Իր անկախության համար նա շատ հերոսական մարտեր է մղել, միշտ երազելով այն բաղձալի օրվա մասին, երբ հնարավոր կլինի ապրել ճնշումներից վերծ, ազատ, խաղաղ կյանքով: Այդ իղձը խոր կերպով արտահայտել է հայ ժողովրդի մեծ բանաստեղծ Հ. Թումանյանը գրելով՝

Տանում ենք հնուց մեր ցանձերն անգին,
Մեր ցանձերը ծով,
Ինչ որ դարերով
Երկնել է, ծնել մեր խորունկ հոգին
Հայոց լեռներում,
Բարձր լեռներում:

...Ու մեր աչքերը նայում են կարոտ՝
Հեռու աստղերին,
Երկնքի ծերին,
Թե ե՞րբ կբացվի պայծառ առավոտ
Հայոց լեռներում,
Կանաչ լեռներում:

Այդ պայծառ առավոտը, որին այնպես կարոտակեզ փափագում էր բանաստեղծը, որին սպասում էին հայ ժողովրդի շատ սերունդներ, բացվեց հայոց լեռներում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի շնորհիվ: Միայն մարքս-լենին-

յան ուսմունքով պինված կոմունիստական պարտիան ցույց տվեց հայ ժողովրդի ազ-
գային ու սոցիալական ազատագրության ճիշտ ուղին: Դեռևս ռևոլյուցիոն շարժ-
ման վաղ արշալույսին ժողովուրդների մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինը «Հայ սոցիալ-
դեմոկրատների միության մանիֆեստի մասին» գրած իր հոդվածում մատնանշում
էր հայ ժողովրդի ազատագրական պայքարի սերտ կապը Ռուսաստանի պրո-
լետարիատի պայքարի, սոցիալիստական ռևոլյուցիայի հետ: Վ. Ի. Լենինը Ռու-
սաստանի մարքսիստների առաջնահերթ խնդիրն էր համարում բոլոր ազգերի աշ-
խատավորների համախմբումը դեմոկրատական ռեսպուբլիկայի ու սոցիալիզմի հա-
մար մղվող պայքարում: Վ. Ի. Լենինի ցուցումը դարձավ ղեկավար դրույթ Հա-
յաստանի բոլշևիկների գործունեության համար: Հայաստանի կոմունիստները,
նրանց ականավոր ներկայացուցիչները՝ Ստ. Շահումյանը, Ս. Սպանդարյանը,
Բ. Կնունյանցը, Ա. Մյասնիկյանը, Ա. Միկոյանը հայ ժողովրդի ազատագրական
պայքարը համարելով համառուսական ռևոլյուցիոն շարժման անբաժան մասը,
անողոք պայքար էին տանում բուրժուական նացիոնալիստների դեմ, բոլոր նրանց
դեմ, ովքեր փորձում էին անջատել հայ աշխատավորներին ռուս մեծ պրոլետարիա-
տից, մյուս ազգությունների աշխատավորներից:
Հայաստանի աշխատավորները ռուս ժողովրդի, մեր հայրենիքի մյուս ժողո-
վուրդների հետ միասին ինտերնացիոնալ ամուր կապերով կոդված, կոմունիստա-
կան պարտիայի ղեկավարությամբ ռևոլյուցիոն պայքարի մեծ ուղի անցան: Սոցիա-
լիստական ռևոլյուցիայի հաղթանակը Հայաստանում բանվորների ու գյուղացի-
ների այդ ռևոլյուցիոն պայքարի օրինաչափ արդյունքն էր:
«Հայաստանի աշխատավորները,—նշել է Ն. Ս. Խրուշչովը,—լուսավոր, ազատ
կյանքի են հասել ռևոլյուցիոն պայքարի դժվարին ու փշոտ ճանապարհով, Լենինի
դրոշով, կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ: Հայաստանի բանվորներն
ու գյուղացիները բոլոր հիմքերն ունեն հպարտանալու իրենց ռևոլյուցիոն տրադի-
ցիաներով, իրենց մարտական անցյալով»:
Սովետական իշխանությունը Հայաստանին բերեց խաղաղություն, նրա ժո-
ղովրդին փրկեց բնաջնջման վտանգից, նրան տվեց ազգային վերածնության հնա-
րավորություն: Պատմության մեջ առաջին անգամ Հայաստանի աշխատավորները
ստացան իսկական ազատություն ու անկախություն:
Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ,
որն ապահովում է ժողովուրդների քաղաքական իրավահավասարությունն ու սովե-
տական ազգային պետականությունը, տնտեսական ու կուլտուրական ասպարեզում
նրանց սերտ համագործակցությունը, եղբայրական բարեկամությունը, նրանց էկո-
նոմիկայի ու կուլտուրայի ծաղկումը, Սովետական Հայաստանը կարճ ժամանակա-
միջոցում ո՛չ միայն բուժեց անցյալից ժառանգած ծանր վերքերը, այլև վերջ տվեց
դարավոր հետամնացությանը, դարձավ ծաղկուն, զարգացած սոցիալիստական
ռեսպուբլիկա:
Հենվելով ՍՍՌՄ ժողովուրդների փոխադարձ եղբայրական օգնության, առա-
ջին հերթին՝ ռուս ժողովրդի անգնահատելի օգնության վրա, Սովետական Հա-
յաստանն ստեղծեց ժամանակակից արդյունաբերություն, բանվոր դասակարգի և
ինտելիգենցիայի մեծաթիվ կադրեր, զարգացրեց ձևով ազգային, բովանդակությամբ
սոցիալիստական կուլտուրա:
Սոցիալիզմի պայմաններում հայ ժողովուրդը անցած 43 տարվա ընթացքում
ապրեց քաղաքական, տնտեսական ու կուլտուրական կյանքի այնպիսի մեծ առա-
ջադիմություն, ինչպիսին նա չէր ունեցել իր դարավոր պատմության ամբողջ ժա-
մանակամիջոցում: Բավական է նշել, որ սովետական իշխանության տարիներին
արդյունաբերության արտադրանքի թողարկումը ռեսպուբլիկայում 90 անգամ ավե-
լացել է: Ներկայումս Հայաստանում մեկ և կես անգամ ավելի շատ էլեկտրաէներ-
գիա է արտադրվում, քան արտադրվում էր ամբողջ ցարական Ռուսաստանում 1913
թվականին: Բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրման աս-
պարեզում Սովետական Հայաստանը գերազանցում է կապիտալիստական այնպիսի
զարգացած երկրների, ինչպիսիք են՝ Ֆրանսիան, Իտալիան, Ճապոնիան:
Անճանաչելի փոխվել է Հայաստանի գյուղը: Կոլտնտեսային կարգի հաղթա-



նակը հնարավորություն տվեց գյուղացուն ապրելու բարեկեցիկ ու կուլտուրական կյանքով: Գյուղատնտեսության զարգացման գլխավոր պայմանը Հայաստանում Վ. Ի. Լենինը համարում էր ոռոգումը: Կատարելով մեծ Լենինի ցուցումը՝ ռեսպուբլիկայում հսկայական աշխատանք կատարվեց ոռոգման, ջրանցքների կառուցման ուղղությամբ: 1919 թվականի համեմատությամբ ոռոգելի հողերի տարածությունը ռեսպուբլիկայում ավելացել է չորս անգամ:

Սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի վերափոխումների շնորհիվ հայ ժողովուրդը, սովետական մյուս եղբայրական ժողովուրդների հետ միասին սկսեց առաջ ընթանալ կոմունիզմի լայն ճանապարհով:

Սովետական մարդկանց կյանքի ու գործունեության հիմնական նպատակն է դարձել կոմունիստական հասարակարգի կառուցումը, մի հասարակարգ, որը եղել և մնում է մարդկության նվիրական իղձը: Սովետական ժողովուրդը իր փորձված ավանգարդի՝ կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ձեռնամուխ է եղել կոմունիզմի ծավալուն կառուցմանը:

Կոմունիստական հասարակության կառուցման հոյակապ պլանը շարադրված է ՍՄԿՊ XXII պատմական համագումարի կողմից հաստատված պարտիայի Ծրագրում: ՍՄԿՊ XXII համագումարը, պարտիայի նոր Ծրագիրը նշանավորում են նոր էտապ մեր երկրի և համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժման զարգացման մեջ:

Հայաստանի աշխատավորները սովետական բոլոր մարդկանց հետ միասին միահամուռ հավանություն տվին ՍՄԿՊ XXII համագումարի որոշումներին և պայքար ծավալեցին դրանց կենսագործման համար: ՍՄԿՊ Ծրագիրը սովետական ժողովրդի ստեղծագործական ակտիվության անընդհատ վերելքի հզոր ազդակն է: Ոգեշնչված կոմունիզմի վեհ նպատակներով Հայաստանի աշխատավորներն անձնուրաց եռանդով պայքարում են ժամկետից շուտ կատարելու ու գերակատարելու ժողովրդական տնտեսության զարգացման 7-ամյա պլանը, որը կարևոր նշանակություն ունի մեր երկրում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում: Հայաստանի բանվորները, կոլտնտեսականները, ինտելիգենցիան հաջողությամբ կատարում են 7-ամյա պլանով նախատեսված առաջադրանքները, իրենց արժանավոր ավանդը մուծելով մեր երկրում կոմունիզմի կառուցման մեծ, համաժողովրդական գործում:

Արագ տեմպերով զարգանում է ռեսպուբլիկայի բազմաճյուղ արդյունաբերությունը: 7-ամյակի չորս տարում կառուցվել ու շահագործման են հանձնվել ավելի քան 100 նոր ձեռնարկություններ ու խոշոր ցեխեր: Այժմ Հայաստանի արդյունաբերությունը երկրին տալիս է ժամանակակից հաստոցներ, տրանսֆորմատորներ, կոմպրեսորներ, գեներատորներ, բարձր ճշգրտության սարքեր, թանկարժեք հանածոներ, սինթետիկ կաուչուկ, ավտոդողեր, հանքային պարարտանյութեր, քիմիկատներ, շինանյութեր, թեթև և սննդի արդյունաբերության բազմազան ապրանքներ ու մթերքներ: Հայաստանի արդյունաբերության տեխնիկական բարձր մակարդակի մասին է վկայում այն փաստը, որ այժմ ռեսպուբլիկայի ձեռնարկությունների ավելի քան 90 տեսակի արտադրանք՝ դրանց թվում մեքենաներ ու բարդ սարքավորումներ, արտահանվում են աշխարհի 32 երկրներ:

Ժողովրդական տնտեսության, կուլտուրայի ու գիտության վերելքի գործում առանձնապես խոշոր առաջընթաց կատարվեց վերջին տասնամյակում: Հատկանշական է, որ ռեսպուբլիկայի արդյունաբերությունը 1953 թվականից մինչև 1963 թվականը 2,5 անգամ ավելի շատ արտադրանք է թողարկել, քան նախորդ 32 տարում՝ 1921-ից 1952 թվականը: Առանձնապես աճել է քիմիական արդյունաբերության ծավալը, մեքենաշինությունն ու մետաղամշակությունը, զգալիորեն ավելացել է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը: 1953-ից մինչև 1962 թվականը մսի արտադրությունն ավելացել է 63, կաթինը՝ 86, բրդինը՝ 60, ձվինը՝ 125 տոկոսով: Մեծ հաջողություններ են ձեռք բերվել ռեսպուբլիկայի բնակչության նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման գործում: Այս տասնամյակում կառուցվել ու շահագործման է հանձնվել երկու միլիոն 817 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն՝ նախորդ 32 տարվա մեկ միլիոն 907 հա-

կար քառակուսի մետրի դիմաց, 2,3 անգամ ավելացել է ապրանքաշրջանառությունը:

Ժողովրդական տնտեսության վարգացման տեմպերը գնալով ավելի հզոր թափ են ստանում: Շարք են մտնում նորանոր գործարաններ ու ֆաբրիկաներ, էլեկտրակայաններ ու ջերմակայաններ, հանքահորեր ու ջրանցքներ: Հայաստանի արդյունաբերության աշխատողները ծավալելով սոցիալիստական մրցություն 7-ամյակի 5-րդ տարվա պլանները ժամկետից շուտ կատարելու համար, ձեռք են բերել խոշոր հաջողություններ: Արդյունաբերությունը 1963 թվականի 9 ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարել է 102,7 տոկոսով, կատարված է աշխատանքի արտադրողականության բարձրացման և գերակատարված է արտադրանքի ինքնարժեքի իջեցման առաջադրանքները: Յուրացված է ավելի քան 60 նոր տեսակի արտադրանքի թողարկումը:

1963 թվականի միայն առաջին կիսամյակում շահագործման հանձնվեցին Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատի առաջին հերթը, Երևանի ջերմաէլեկտրակայանի առաջին ագրեգատը, Լուսավանի կենտրոնական ձուլարանը, Երևանի դաշնամուրի գործարանը, մեծացվեցին Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական և հախճապակու գործարանների հզորությունը, էլեկտրիֆիկացվեց երկաթուղու Հրազդան—Սևան հատվածը, շահագործման հանձնվեց 171 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն:

Արդյունաբերական հին օջախների՝ Երևանի, Լենինականի, Կիրովականի, Ալավերդու ու Ղափանի կողքին աճում են որպես արդյունաբերական նոր քաղաքներ Հրազդանը, Լուսավանը, Իջևանը, Ստեփանավանը, Սպիտակը, Սևանը, Աբովյանը, Հոկտեմբերյանը, Արթիկը, Քաջարանը և այլն:

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները 1963 թվականի 8 ամսում անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ պետությանը կաթի վաճառքն ավելացրին 19,4, միսը՝ 14,2, ձվինը՝ 17,3 և բրդինը՝ 18,6 տոկոսով, կատարեցին և գերակատարեցին անասնապահական մթերքների արտադրության ութամսյա առաջադրանքները:

Ռեսպուբլիկայի արդյունաբերության ու գյուղատնտեսության աշխատողները չեն խնայում ոչ մի ջանք ու եռանդ բազմապատկելու կոմունիստական շինարարության նվաճումները հանուն մեր հայրենիքի հետագա էլ ավելի հզորացման, բարգավաճման, ժողովրդի բարեկեցության բարձրացման: Նրանք՝ «սովորել, աշխատել և ապրել կոմունիստաբար» նշանաբանով, պարտիական, կոմերիտական ու պրոֆմիութենական կազմակերպությունների ղեկավարությամբ ծավալել են սոցիալիստական մրցության լայն շարժում: Ռեսպուբլիկայում 131 հազար աշխատավորներ պայքարում են արժանանալու կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչման: Կոմունիստական աշխատանքի ձեռնարկության բարձր կոչմանն են արժանացել Ս. Մ. Կիրովի անվան գործարանի և Շահումյանի տրիկոտաժի ֆաբրիկայի, ինչպես նաև 160 ցեխերի, բաժինների, տեղամասերի և հերթափոխությունների կոլեկտիվներ: Սրբազան տրադիցիա է դարձել ամեն մի նշանավոր տոնի, իրադրության առթիվ սոցիալիստական մրցության ծավալումը:

Սովետական Հայաստանի սոցիալիստական էկոնոմիկայի բուռն աճը պայմաններ ստեղծեց բարելավելու ժողովրդի բնակարանային-կենցաղային պայմանները, բարձրացնելու նրա նյութական բարեկեցությունը: Ծաղկեցին հայ ժողովրդի սոցիալիստական կուլտուրան, արվեստն ու գրականությունը: Աճեցին կուլտուրայի, գիտության ու տեխնիկայի շատ տաղանդավոր կադրեր, որոնց անունները հռչակված են ամբողջ երկրում և երկրից դուրս:

Գիտության, կուլտուրայի, ժողովրդական լուսավորության և առողջապահության վարգացման բարձր մակարդակի մասին են վկայում այն փաստերը, որ 2 միլիոնից քիչ ավելի բնակչություն ունեցող ռեսպուբլիկայում ավելի քան 457 հազար մարդ ընդգրկված են ուսման տարբեր ձևերի մեջ՝ այդ թվում 26000 մարդ սովորում են Հայաստանի բարձրագույն ուսումնական հաստատություններում: Ռեսպուբլիկայում կան 85 գիտական հիմնարկություններ՝ 6191 գիտական աշխատողներով, 900 կուլտուրայի տներ և ակումբներ, 2610 մասսայական, տեխնիկական,



գիտական, դպրոցական և այլ կարգի գրադարաններ՝ 20 միլիոնից ավելի գրքի ֆոնդով: 1962 թվականին ռեսպուբլիկայում 600 հազար մարդ օգտվել են այդ գրադարաններից՝ ընթերցելով 10 միլիոն գիրք: Փաստ է և այն, որ ռեսպուբլիկայում չկա համարյա մի ընտանիք, որ չունենա իր անձնական գրադարանը: Հայաստանում 10 հազար բնակչին ընկնում է 24 բժիշկ, 75 հիվանդանոցային մահճակալ, մինչդեռ նրա հարևան Թուրքիայում՝ 3 բժիշկ, 10 մահճակալ:

Սովետական Հայաստանն իր տնտեսական ու կուլտուրական այս հոյակապ նվաճումներով հանդիսանում է կապիտալիզմի հանդեպ սոցիալիստական հասարակարգի գերազանցությունն ապացուցող վառ օրինակներից մեկը: Եվ պատահական չէ, որ արտասահմանյան երկրներից Հայաստան այցելող հազարավոր մարդիկ, դրանց թվում և մեր բարեկամները, և նույնիսկ ո՛չ բարեկամները, չեն կարողանում զսպել իրենց հիացմունքը հայ ժողովրդի հիանալի աշխատանքի ու նվաճումների հանդեպ:

Սովետական Հայաստանը հնարավորություն ունեցավ լայնորեն բացելու իր դռները արտասահմանյան երկրներում դեգերող հարյուր-հազարավոր հայերի համար, որոնք եկան միավորվեցին իրենց արենակից եղբայրների հետ և իրենց աշխատանքով մասնակցում են հայրենիքի հետագա էլ ավելի բուռն ծաղկման գործին, կոմունիզմի կառուցման գործին:

Որքան էլ արտասահմանում ծվարած դաշնակցական պարագլուխները փորձեն խանգարել հայրենադարձությունը, նրանց այդ չի հաջողվի: «Սովետական սոցիալիստական Հայաստանը,— ինչպես նշել է ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— այժմ այն կենտրոնն է, մագնիսը, որն իրեն է քաշում հայ ժողովրդի լավագույն դուստրերին ու որդիներին»:

43 տարվա ընթացքում հայ ժողովրդի բոլոր հաջողությունները և մեծ նվաճումները ձեռք են բերվել շնորհիվ կոմունիստական պարտիայի լենինյան ազգային իմաստուն քաղաքականության հետևողական կենսագործման, Սովետական Միության բոլոր ժողովուրդների հետ եղբայրական բարեկամության ու սերտ համագործակցության: ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը սովետական պետության շարժիչ ուժն է: Կոմունիստական ծավալուն շինարարության պայմաններում Սովետական Միության ազգերի միջև մերձեցումը ավելի կզարգանա:

«Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցումը,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— տանում է դեպի սովետական ժողովուրդների էլ ավելի սերտ միավորում: Ավելի ու ավելի ինտենսիվ է դառնում նյութական և հոգևոր հարստությունների փոխանակումը ազգերի միջև, աճում է յուրաքանչյուր ռեսպուբլիկայի ավանդը կոմունիստական շինարարության ընդհանուր գործում»:

Պարտիայի ծրագրի այս կարևոր դրույթի կենսագործման ուղղությամբ կարևոր քայլ է հանդիսանում Անդրկովկասի ռեսպուբլիկաների միջև տնտեսական ու կուլտուրական կապերի հետագա ամրապնդումը, ժողովրդա-տնտեսական խոշոր խնդիրները լուծելու համար նրանց ջանքերի միավորումը: Անդրկովկասի միասնական էներգետիկ սիստեմի ստեղծումը, երկաթուղիների միավորումը, Անդրկովկասի տնտեսական շրջանի պլանային հանձնաժողովի կազմակերպումը նպաստում են Անդրկովկասի ընդհանուր և յուրաքանչյուր ռեսպուբլիկայի էկոնոմիկայի հետագա վերելքին, ռեսուրսների լրիվ օգտագործմանը: Կարևոր իրադարձություն է ՍՄԿՊ Կենտկոմի Անդրկովկասյան բյուրոյի ստեղծումը, որը միավորում է սովետական Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի ջանքերը ժողովրդական տնտեսության զարգացման գործում, ամրապնդում Անդրկովկասյան ժողովուրդների տրադիցիոն եղբայրական բարեկամությունը, նրանց տնտեսական, գիտական ու կուլտուրական համագործակցությունը: Հայաստանի կոմունիստական պարտիան անդուլ կերպով հոգ է տանում ՍՍՌՄ և սոցիալիզմի լագերի ժողովուրդների հետ բարեկամության ոգով, ինտերնացիոնալիզմի ոգով ժողովրդի դաստիարակության մասին, անդուլ պայքար մղելով տեղայնության, ազգային սահմանափակվածության ամեն մի դրսևորման դեմ: Կոմունիզմի ճանապարհով մեր առաջխաղացմանը մեծապես օգնում է պարտիական կազմակերպությունների գաղափարական աշխատանքի հետագա ուժեղացումը: Այս տեսակետից կարևոր նշանակություն ունի ՍՄԿՊ Կենտկոմի

1963 թվականի հունիսյան պլենումի որոշումների կենսագործումը: Հունիսյան պլենումն ընդգծեց, որ «արդի պայմաններում պարտիայի գաղափարական-դաստիարակչական աշխատանքի գլխավոր խնդիրն է՝ գաղափարապես ապահովել ՍՄԿՊ Ծրագրի կենսագործումը, ստեղծել կոմունիզմի նյութատեխնիկական բազան, ձևավորել կոմունիստական հասարակական հարաբերություններ, դաստիարակել նոր մարդուն, բարձրացնել քաղաքական զգոնությունը, ծավալուն հարձակում գործել իմպերիալիստական գաղափարախոսության դեմ, մարդկանց գիտակցության մեջ անցյալի մնացուկների դեմ»:

Հայաստանի աշխատավորները Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի վավակ Սովետական Հայաստանի 43-րդ տարեդարձը նշում են այնպիսի օրերում, երբ մեր պարտիան մշակել և կենսագործում է խոշոր միջոցառումներ մեր երկրի էկոնոմիկայի հետագա վերելքի, առանձնապես գյուղատնտեսության մթերքների արտադրության ավելացման ուղղությամբ հանքային պարարտանյութերի, քիմիական միջոցների արտադրության, ոռոգելի տարածությունների ավելացման ուղղությամբ:

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը գյուղատնտեսական արտադրության հետագա վերելքը համարում են կոմունիստական շինարարության հարվածային ճակատ: Գյուղատնտեսության արտադրության ավելացման գործում իրենց արժանի ավանդը պետք է դնեն Հայաստանի աշխատավորները, առանձնապես մեր ռեսպուբլիկայում զարգացած քիմիական արդյունաբերության աշխատողները:

Հայաստանի աշխատավորները միահամուռ կերպով իրենց հավանությունն են տալիս կոմունիստական պարտիայի և սովետական կառավարության արտաքին իմաստուն քաղաքականությանը, որի նպատակն է հասնել կայուն խաղաղության և ապահովել կոմունիստական հասարակության կառուցումը: Այդ տեսակետից խաղաղության ուժերի խոշոր հաղթանակը պետք է համարել միջուկային փորձարկումների արգելման մասին համաձայնության կնքումը, որն արժանացավ ամբողջ պրոգրեսիվ մարդկության հավանությանը, բացառությամբ մոլի իմպերիալիստների և մարքսիզմ-լենինիզմի դիրքերից դոգմատիզմի, ավանտյուրիզմի կողմը գլորված մի խումբ պառակտիչների:

Հայ ժողովուրդը, Հայաստանի աշխատավորները, համախմբված Սովետական Միության կոմունիստական պարտիայի, նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեի շուրջը, սովետական եղբայրական ժողովուրդների հետ միասին առաջ կընթանան կոմունիզմի լայն ճանապարհով:

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆԻ ՆԵՐԱՃԵԼՈՒ ՕՐԻՆԱՉԱՓՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Մ. ԵԳԱՆՅԱՆ

*Հոկտեմբերյան սոցիալիստական ռևոլյուցիան հանդիսացավ անհատի բազմակողմանի զարգացման սկիզբը, որի տնտեսական հիմքը, ըստ Լենինի, աշխատանքի մեծ փոփոխությունն է, այն, որ ուրիշի համար կատարվող հարկադրական աշխատանքը դարձավ աշխատանք իր համար: Հանրայնացնելով արտադրության միջոցները և դրա հիման վրա վերացնելով շահագործումը, սոցիալիստական հասարակությունը վերջ տվեց մեռյալ աշխատանքի տիրապետությանը կենդանի աշխատանքի վրա և մարդու կողմից մարդու շահագործման իրավունքին՝ այն վիճակին, երբ մարդկանց մի մասը պարապ ու պորտաբույծ կյանք է վարում, իսկ մյուս մասը տնքում է աշխատանքի չափազանց ծանր բեռի տակ և սորկացվում, երբ կուլտուրայի ու տեխնիկայի բոլոր բարիքները կենտրոնանում են քաղաքում, իսկ գյուղը խարխափում է խավարի մեջ, երբ մարդկանց մեծ մասը կատարում է զուտ ֆիզիկական աշխատանք:*

*Բուրժուական սեփականության վերացմամբ սոցիալիզմը հնարավորություն տվեց արտադրությունը կազմակերպել այնպես, որ արտադրության միջոցները, որպես արտադրության իրային գործոններ, գտնվեն հասարակության տրամադրության տակ և ծառայեն նրա շահերին: Դրանով իսկ պայմաններ ստեղծվեցին, մի կողմից՝ ապահովելու արտադրողական ուժերի անկաշկանդ զարգացումը և, մյուս կողմից՝ արտադրության, բաշխման, փոխանակման ու սպառման հասարակական օրենքները դարձնել արտադրողների համար միանգամայն հասկանալի, իբրև նրանց գիտակից գործունեության արդյունք, ենթարկել այդ օրենքները մարդու իշխանությանը, կանխել դրանց կործանարար ազդեցությունը և այն նպատակահարմար ձևով ծառայեցնել ամբողջ հասարակության շահերին:*

*Սոցիալ-տնտեսական այդ արմատական փոփոխությունների շնորհիվ մեր երկրում իսպառ վերացավ ինչպես վարձու, այնպես էլ մանր արտադրողների անհատական, գերազանցապես չեզոք՝ ոչ հասարակական բնույթի աշխատանքը: Դրանց փոխարեն ժողովրդական տնտեսության բոլոր ասպարեզներում հաստատվեց աշխատանքի սոցիալիստական ձևը:*

*Սոցիալիզմը և կոմունիզմը միևնույն հասարակական ֆորմացիայի զար-*

գացման փուլերն են։ Այդ պատճառով էլ սոցիալիստական և կոմունիստական աշխատանքներն ունեն մի շարք ընդհանուր գծեր։ Աշխատանքի համընդհանուր, կոլեկտիվ և անմիջական հասարակական բնույթը, նրա, բոլորին պարտականություն և անհրաժեշտ լինելը ընդհանուր են թե՛ սոցիալիզմին և թե՛ կոմունիզմին։ Երկու դեպքերում էլ աշխատանքը ծառայում է մարդու աճող պահանջների բավարարմանն ու զարգացմանը։ Կոմունիզմի ժամանակ են աշխատանքի այդ նոր և ընդհանուր գծերը լիակատար զարգանում և կատարելագործվում։ Սակայն այդ ընդհանուր գծերի հետ միասին նրանց միջև գոյություն ունեն տարբերություններ, որոնք աստիճանաբար պետք է վերանան։

## 1

Սոցիալիզմից կոմունիզմին անցումը նախատեսում է ամենից առաջ սոցիալիստական սեփականության երկու ձևերից բխող աշխատանքի տարբերությունների վերացում և ընդհանուր կոմունիստական հարաբերությունների ստեղծում։ Այդ պետք է ապահովվի ինչպես կոլտնտեսությունների խմբային սեփականության հետագա զարգացման և վերափոխման, այնպես էլ պետական սեփականության կատարելագործման ճանապարհով։ Կոլտնտեսություններում արտադրության միջոցները մասնավոր մարդկանց սեփականությունը չեն, աշխատանքի պրոցեսը ենթարկված է սոցիալիստական կոլեկտիվին, պրոդուկտներն ստեղծվում են արտադրողների ընդհանուր ջանքերով, մարդն աշխատում է իր և հասարակության համար։ Այդպիսով, գյուղատնտեսության բնագավառում և արդյունաբերության մեջ ստեղծված արտադրության եղանակները նույնատիպ են։ Սակայն, չնայած դրան, սոցիալիզմի զարգացման ներկա էտապում դրանք նույնական չեն, նրանց միջև գոյություն ունեն տարբերություններ, ընդհանուրի մեջ երևան են գալիս և նրանց առանձնահատկությունները։

Այդ առանձնահատկությունները բխում են նրանից, որ նախ՝ արտադրական օբյեկտների մի մասը գտնվում է սոցիալիստական պետության տրամադրության տակ և ունի համաժողովրդական նշանակություն, իսկ մյուս մասը՝ առանձին կոլեկտիվ արտադրողների տրամադրության տակ և այդ պատճառով էլ խմբային նշանակություն ունի։

Երկրորդ տարբերությունն այն է, որ, ինչպես կոլտնտեսությունների, նույնպես և դրանց ու համաժողովրդական սեփականություն հանդիսացող ձեռնարկությունների միջև գոյություն չունի անմիջական արտադրական կապ։ Այդ պատճառով էլ կոլտնտեսության աշխատանքի արդյունքը հանդիսանում է արտադրողների առանձին խմբերի աշխատանքի արդյունք, այն ընդհանուր բնույթ չունի, չի դառնում ընդհանրական պրոդուկտի անմիջական մաս։ Պետական ձեռնարկությունները կազմում են միասնական սեփականություն. դրանց միջև գոյություն ունի անմիջական արտադրական կապ, դրանց փոխադարձ պայմանավորվածությունն ապահովում է սոցիալիստական պետությունը։ Այդ պատճառով էլ նրանց պրոդուկտները բոլոր ձեռնարկությունների կոլեկտիվների ընդհանուր աշխատանքի արդյունք են, ունեն համընդհանուր բնույթ և կազմում են ընդհանրական պրոդուկտի անմիջական մասը։

Երրորդ. կոլտնտեսության արտադրանքը կազմում է արտադրողների առանձին խմբերի սեփականությունը, այդ պատճառով էլ կուտակումն ու սպառումը նեղ, խմբային բնույթ են կրում։ Դրա համար էլ կոլտնտեսություններն արտադրության զարգացման ու կատարելագործման տեսակետից, համեմատած պետական ձեռնարկությունների հետ, ինչպես նաև կոլտնտեսականներն իրենց պահանջների բավարարման տեսակետից, համեմատած բանվորների հետ, գտնվում են ոչ միատեսակ պայմաններում։ Պետական ձեռնարկությունների արտադրանքն անցնում է պետության տրամադրության տակ, որի շնորհիվ կուտակումը և սպառումը դուրս են գալիս ձեռնարկությունների շրջանակներից և ընդունում համընդհանուր բնույթ։ Դա հնարավորություն է տալիս պետությանը՝ սահմանելու ճիշտ համամասնություն կուտակման և սպառման ֆոնդերի միջև, պլանաչափորեն զարգացնելու արտադրության բոլոր ճյուղերը, վերացնելու արտադրության պրոցեսում առաջացող ճեղքվածքները, բարձրացնելու ետ մնացող ձեռնարկությունները, արտադրության աճին զուգընթաց հավասարապես բարձրացնելու աշխատավորների ընդհանուր բարեկեցությունը և այլն։ Կոլտնտեսային խմբային սեփականությունն այդ հնարավորություններն ստեղծում է, գլխավորապես, իր սահմաններում՝ կախված սեփական եկամուտներից։

Վերջապես՝ չորրորդ. եթե համաժողովրդական ձեռնարկությունների միևնույն արտադրանքն իրացվում է պետության կողմից սահմանվող միասնական գներով ու փողային ձևով, կոլտնտեսությունների միևնույն արտադրանքի մի մասը բոլորովին փողային ձև չի ստանում, մյուս մասը տրվում է պետությանը շերտավորված, զոնալ գներով, իսկ երրորդ մասը վաճառվում է ազատ շուկայական գներով։

Դժվար չէ հասկանալ, որ սեփականության երկու ձևերի միջև նշված այդ բոլոր տարբերություններն անխուսափելիորեն հանգեցնում են այն բանին, որ միևնույն տեսակի աշխատանքի քանակը և որակը տարբեր կոլտնտեսություններում տարբեր արժեքային արտահայտություն են ստանում։ Ավելին. միևնույն միավոր պրոդուկտը տարբեր կոլտնտեսություններում, հողակլիմայական և տեխնիկական պայմաններին համապատասխան, տարբեր քանակի աշխատանք է մարմնավորում և, հետևապես, տարբեր անհատական արժեքներ ներկայացնում, բայց դրանք վաճառվում են նույն գնով։ Այդ պատճառով էլ միավոր պրոդուկտի մեջ շատ աշխատանք վատնող կոլտնտեսությունների համար ստեղծվում է տնտեսական ծանր վիճակ։ Պետական սեփականության շրջանակներում էլ է գինը շեղվում նույն ապրանքն արտադրող ձեռնարկությունների անհատական արժեքից, կախված նրանց կազմից, բայց այդ չի ազդում նրանց զարգացման վրա, որովհետև նրանք զարգանում են ընդհանուր կուտակման հաշվին։

Արտադրության միջոցների սեփականության, պրոդուկտների արտադրության և աշխատանքի պրոցեսի տարբեր բնույթը կոլտնտեսություններում և պետական ձեռնարկություններում իրենց կնիքն են դնում նաև աշխատավորների դրության վրա։ Տարբեր տեղերում կոլտնտեսականները միևնույն տեսակի հավասար աշխատանքի քանակի ու որակի համար ստանում են տարբեր, ստացվող եկամտին համապատասխան վարձատրություն, մինչդեռ պետական ձեռնարկություններում հավասար աշխատանքի համար հավասար են վարձատրում։ Այսպիսով ըստ աշխատանքի վարձատրման սկզբունքը կոլտնտեսություններում դեմ է առնում խմբային սեփականության նեղ բազիսին և հարուցում անհավասարություն։ Հենց այդ վերացնելու համար է, որ սո-

ցիալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում նախատեսվում է հաղթահարել նշված բոլոր տարբերությունները և ստեղծել գյուղատնտեսական ու արդյունաբերական աշխատանքի միասնություն։ Այդ նպատակով անհրաժեշտ է.

արտադրության միջոցները դուրս բերել խմբային սեփականության շրջանակներից և դարձնել ընդհանուր ժողովրդական սեփականություն.

փոխել աշխատանքի պրոցեսը գյուղատնտեսության բնագավառում՝ կոլտնտեսային աշխատանքը դարձնել ինդուստրիալ աշխատանքի տարատեսակը, իսկ յուրաքանչյուր կոլտնտեսականի աշխատանքը գյուղատնտեսության բնագավառում ծախսվող ընդհանուր աշխատանքի մասնիկը.

գյուղատնտեսական արտադրանքը դարձնել ընդհանրական պրոդուկտի մասնիկ, իբրև ընդհանուր աշխատանքի արդյունք և նրա յուրաքանչյուր տեսակի արժեքը սահմանել՝ ելնելով ընդհանուր աշխատանքի ծախսումից.

գյուղատնտեսության բնագավառում աշխատողների վարձատրությունը կատարել ըստ աշխատանքի սկզբունքի՝ անկախ կոլտնտեսության սահմաններից ու եկամտից։

Գյուղատնտեսության բոլոր արտադրամիջոցները հնարավոր է համաժողովրդական սեփականություն դարձնել կոլտնտեսությունների խոշորացման, անբաժանելի ֆոնդերի մեծացման, միջկոլտնտեսային շինարարության ծավալման, կոլտնտեսությունների և պետական ձեռնարկությունների արտադրական կապերի ամրապնդման, կոլտնտեսությունների ու սովխոզների տերիտորիալ միավորման և այլ միջոցառումներով։

Այդ բոլոր բնագավառներում սովետական պետությունը ցույց կտա իր անմիջական աջակցությունը։ Պարտիայի ծրագրում ասված է. «Պետությունը կնպաստի կոլտնտեսային կարգի արտադրողական ուժերի աճին, բոլոր կոլտնտեսությունների տնտեսական վերելքին... կապահովի ժամանակակից մեքենայական տեխնիկայի, պահեստամասերի, քիմիկատների և արտադրության մյուս միջոցների ասպարեզում կոլտնտեսությունների պահանջների լրիվ բավարարումը, կպատրաստի նոր հարյուր հազարավոր որակյալ աշխատողներ, զգալիորեն կավելացնի կապիտալ ներդրումները գյուղում...» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 503)։

Կոլտնտեսությունների սեփականության զարգացման և կոմունիստականի ներաճման ժամանակաշրջանում պետք է զարգանա ու կատարելագործվի ինքը՝ պետական սեփականությունը, առաջատար դեր խաղալով կոմունիստական շինարարության բնագավառում. այն դեռ կոմունիստական սեփականություն չէ, քանի որ, նախ՝ չի ընդգրկում ամբողջ ժողովրդական տնտեսությունը և երկրորդ՝ կազմակերպման, համակենտրոնացման ու մասնագիտացման տեսակետից այն դեռ պատրաստ չէ արտադրության և բաշխման անմիջական կոմունիստական սկզբունքին անցնելու։ Այդ նշանակում է, որ սոցիալիզմի ներաճումը կոմունիզմին պետք է ընթանա պետական ու կոլտնտեսային արտադրության զարգացման, փոխադարձ ներգործման և օրգանապես միավորվելու միջոցով։

Աշխատանքի բնույթի փոփոխումը կենսագործվում է գյուղատնտեսական արտադրության պրոցեսի մեքենայացման, աշխատանքի հասարակական բնույթի զարգացման, արտադրության պրոցեսը ընդհանուր հասարակական պահանջմունքներին համապատասխան կազմակերպելու, արտադրության ար-



դյունքը համընդհանուր սեփականություն դարձնելու և այդ ամենով ամբողջ գյուղատնտեսական աշխատանքն անմիջական հասարակական աշխատանքի փոխարկելու ճանապարհով։

Արտադրության միջոցների խմբային սեփականությունից համընդհանուր սեփականության անցնելը և դրա հիման վրա խմբային աշխատանքի փոխարկումն ընդհանուր հասարակական աշխատանքի, կապահովի նաև ըստ աշխատանքի բաշխման սկզբունքի կենսագործումը՝ հավասար աշխատանքի համար հավասար վարձատրության առումով։ Այդպիսով երկրում կստեղծվեն արտադրության միջոցների սեփականության միասնական ձև, արտադրության և աշխատանքի միասնական եղանակ, հավասար սոցիալական վիճակ բոլոր աշխատողների համար, արտադրության և բաշխման պրոցեսի ղեկավարման միասնական սիստեմ։

Արտադրության և բաշխման միասնական կոմունիստական սեփականության ստեղծման պրոցեսն ուղեկցվում է գյուղատնտեսական աշխատանքի արտադրողականության բարձրացման, կոլտնտեսային արտադրության հաշվին կոլտնտեսականների պահանջների բավարարման և դրա հիման վրա տնամերձ տնտեսությունների վերացմամբ։

Այդ արմատական փոփոխությունները լայն հնարավորություն կստեղծեն՝ հետզհետե վերացնելու նաև գյուղի և քաղաքի տնտեսական ու կուլտուրական, կենցաղային տարբերությունները։ «...Պարտիան նպատակ է դնում կոլտնտեսային գյուղերը վերածել քաղաքատիպ բարեկարգ բնակավայրերի՝ օգտագործելով ժամանակակից կոմունալ ու կուլտուր-կենցաղային սպասարկման բոլոր նվաճումները» (Ն. Ս. Խրուշչով, ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թթ. կոնտրոլ թվերը, էջ 144)։

Սոցիալիզմի ներաճումը կոմունիզմի՝ մի ընդհանուր պրոցես է, ուր արտադրության միջոցների և արդյունքների միասնական սեփականության ստեղծումը զուգորդվում է գյուղի և քաղաքի աշխատավորների աշխատանքի միատեսակ պայմանների ստեղծման հետ և դրա հիման վրա վերանում են մարդկանց միջև եղած սոցիալական տարբերությունները, ավարտվում է դասակարգային հարաբերությունների պատմությունը։ Մարդկությունը վերջնականապես կթևակոխի այնպիսի հասարակարգ, որտեղ լիովին կկիրառվի մեկը բոլորի, բոլորը մեկի համար սկզբունքը։

Միասնական կոմունիստական արտադրական հարաբերությունների ստեղծումը մեր երկրում նոր թափ կհաղորդի արտադրողական ուժերի զարգացմանը և պայմաններ կստեղծի աստիճանաբար վերացնելու մտավոր ու ֆիզիկական աշխատանքի տարբերությունները։ Երբ ֆիզիկական աշխատանք կատարողներն իրենց կուլտուր-տեխնիկական մակարդակով կհասնեն մտավոր աշխատանք կատարողների մակարդակին, ինտելիգենցիան կդադարի սոցիալական առանձին խավ լինելուց։ «Կոմունիզմի ժամանակ բոլոր մարդիկ,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— կունենան հավասար դրություն հասարակության մեջ, միատեսակ հարաբերություն արտադրության միջոցների նկատմամբ, աշխատանքի ու բաշխման հավասար պայմաններ և ակտիվ կմասնակցեն հասարակական գործերի կառավարմանը» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 485)։

## 2

Կոմունիստական արտադրահարաբերությունների հաստատմամբ ո՛չ միայն կստեղծվեն աշխատավորների համար հավասար սոցիալ-տնտեսական պայմաններ, այլև կփոխվի բուն աշխատանքի բովանդակությունը։ Հետազոտելով արտադրության եղանակների զարգացման և փոփոխման պատմությունը, մարքսիզմի կլասիկները տեսականորեն վաղուց են հիմնավորել այն փաստը, որ աշխատանքի բաժանման զարգացման հետևանքով մարդու կատարած աշխատանքը հետզհետե մանրատվել է։ Մարդն իր ամբողջ կյանքում գամված է միևնույն մասնագիտությանը, բանեցնում է միևնույն գործիքը, կատարում նույն ֆունկցիան, ուստի և նրա աշխատանքը դարձել է անհրապույր, ծանր պարտականություն։

Շարադրելով աշխատանքի այդ վիճակը, Մարքսը, Էնգելսը, Լենինը անհրաժեշտ են համարել կոմունիզմի ժամանակ հասարակական արտադրությունը կազմակերպել այնպես, որ մարդիկ հնարավորություն ունենան զարգացնելու և դրսևորելու իրենց ընդունակությունները, որ մասնակի բանվորին փոխարինի համակողմանի զարգացած մարդը, որի համար հասարակական տարբեր ֆունկցիաներ կատարելը կհանդիսանա նրա կենսական գործունեության հիմքը։ Սակայն ինչպե՞ս այդ ապահովել գործնականում։ Հենց այստեղից էլ սկսվում է դժվարությունը։

Մարքսը և Էնգելսը, համաձայնելով ուտոպիստ սոցիալիստների հետ, հնարավոր էին համարում, որ հասարակության անդամները հաջորդաբար զբաղվեն և՛ արդյունաբերական, և՛ գյուղատնտեսական աշխատանքով։ Այնուհետև նրանք արտահայտել են այն տեսակետը, թե կոմունիստական հասարակարգում մարդու գործունեությունը չի սահմանափակվի որևէ մասնագիտության շրջանակներով, որ ամեն ոք կկարողանա կատարելագործվել ցանկացած բնագավառում, հնարավորություն կունենա այսօր անել մի, վաղը մի այլ բան, առավոտյան որսի գնալ, կեսօրից հետո ձուկ որսալ, երեկոյան զբաղվել անասնապահությամբ, ճաշից հետո՝ քննադատությամբ, ինչպես ինքը կուզենա,— առանց իրեն դարձնելու որսորդ, ձկնորս, չոբան կամ քննադատ։ Այդ թեզը նրանք տարբեր առիթներով կրկնել են Կոմունիզմի սկզբունքներում, Փիլիսոփայության աղքատություն, Կապիտալ, Անտի-Դյուրինգ աշխատություններում։ Անդրադառնալով այդ հարցին, Վ. Ի. Լենինը գրել է, որ կոմունիզմի օրոք մենք կհասնենք «...մարդկանց միջև աշխատանքի բաժանման վերացմանը, բազմակողմանի զարգացած և բազմակողմանի պատրաստված մարդկանց դաստիարակությանը, ուսուցմանը և պատրաստմանը, որոնք կարողանում են ամեն ինչ անել» (Երկեր, հ. 31, էջ 42)։

Ելնելով այդ դրույթներից, գիտնականների մի մասը գտնում է, որ մասնագիտացումը պետք է պահպանվի, բայց մարդիկ հնարավորություն կունենան տիրապետել հարակից մասնագիտությունների և անցում կատարել մի աշխատանքից մյուսին։ Այսինքն՝ էլեկտրիկը, որը վերանորոգում է հաստոցի էլեկտրական մասը, կկարողանա հաստոց սարքել, կատարել հսկիչի, պրիբորիստի ֆունկցիա և այլն։ Այլ կերպ ասած՝ աշխատանքի փոփոխումը պետք է կատարվի տվյալ տեխնոլոգիական խումբ մեքենաների գործածման շրջանակներում և բնույթով մոտ աշխատանքի սահմաններում։

Գիտնականների մյուս մասը գտնում է, որ արտադրության ավտոմատա-



ցումն աշխատանքի առանձին պրոցեսների տարբերությունը հարթում է և այդ պատճառով էլ մարդն ի վիճակի է դառնում կատարելու ամեն տեսակի աշխատանք։ Ստացվում է, որ մարդն այսօր կզբաղվի կարծր մարմինների ֆիզիկայով, վաղը՝ բույսերի ֆիզիոլոգիայով, մյուս օրը՝ հանքաբանությամբ և այլն։

Մեր կարծիքով առաջադրված հարցը լուծելու համար ամենից առաջ պետք է ելնել կոմունիզմի ժամանակ մարդու զարգացումն ապահովող պայմաններից։ Մարքսը, Էնգելսը, Լենինը գտնում էին, որ կոմունիստական հասարակարգում կվերանա մարդու միակողմանի զարգացումը, նրա ստրկացումն աշխատանքի հին, պրոֆեսիոնալ բաժանմանը, ցմահ մեխվածությունը միևնույն մասնագիտությանը։ Կոմունիզմն այդ հնարավոր է դարձնում նախ նրանով, որ արտադրողական ուժերի աճի և մարդկանց աշխատանքի մեջ ներգրավելու շնորհիվ կրճատվում է աշխատաժամանակը, մեծանում ազատ ժամանակը, երկրորդ՝ նրանով, որ բոլորը հնարավորություն են ունենում բարձրագույն կրթություն ստանալու, վերջապես, երրորդ՝ որ ընդհանուր կրթությունը շաղկապվում է արտադրության ընդհանուր հիմունքների յուրացման հետ։ Մեզ թվում է, որ այդպիսի պայմաններում նախ կվերանա ֆիզիկական ու մտավոր աշխատանքի տարբերությունը և երկրորդ՝ յուրաքանչյուրը հնարավորություն կունենա ընտրելու աշխատանքի իր նախընտրած բնագավառը, մասնագիտությունը։ Նա հնարավորություն կունենա յուրացնելու տվյալ տեխնոլոգիական խումբ մեքենաներից բխող, առնչվող մասնագիտությունները և անցնելու մի աշխատանքից մյուսին։ Բացի դրանից, ունենալով մեծ չափով ազատ ժամանակ, դրա մի մասը նա կօգտագործի իր հանգստի ու ժամանցի համար, իսկ մյուս մասը կհատկացնի արվեստի, գրականության, բնագիտության, հասարակագիտության իրեն հետաքրքրող հարցերին։ Այսպիսով, կոմունիզմը կվերացնի մարդու բազմակողմանի զարգացումն արգելակող բոլոր տնտեսական և սոցիալական խոչընդոտները։

Մտավոր և ֆիզիկական աշխատանքի տարբերության վերացումն ու զբաղմունքի փոփոխումը, ինչպես տեսանք, բոլորովին էլ չի նշանակում աշխատանքի բաժանման և մասնագիտացման վերացում։ Կոմունիզմը վերացնում է միայն բուրժուական արտադրաեղանակին հատուկ աշխատանքի բաժանումը, որը սահմանափակում է մարդու գործունեությունը որևէ նեղ մասնագիտության շրջանակներով։ Կոմունիզմին օտար է նաև միջակության գաղափարը, այն, որ բոլոր մարդիկ պետք է դառնան հավասարաչափ, միջին կարողությունների տեր։ Յուրաքանչյուրն ըստ ընդունակությունների կոմունիզմի սկզբունքը նախատեսում է հենց մարդկանց բազմակողմանի զարգացումը՝ նրանց անհատական հակումների, ընդունակությունների և ճաշակի համապատասխան։

## 3

Խոսելով աշխատանքի բովանդակության մասին, չի կարելի չանդրադառնալ արտադրական աշխատանքի դերին ու բնույթին՝ կոմունիստական հասարակության պայմաններում։ Պարտիայի ծրագրում նշված է, որ մոտիկ ապագայում, նոր տեխնիկայի հիման վրա, կվերանա ծանր ֆիզիկական աշխատանքը։ Այդ նշանակում է, որ ամենից առաջ կվերանա ձեռքի և օժան-

դակ կարգի աշխատանքը, որոնք միասին վերցրած այսօր կազմում են ընդհանուր արտադրական աշխատանքի մոտ 2/3-ը։ Կվերանա նաև մեքենաների կարգավորման ֆունկցիան մարդկանց կողմից, որովհետև արտադրության պրոցեսի լրիվ կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը նախատեսում են այդ ֆունկցիան ամբողջովին հանձնել ավտոմատ սարքերին, կիբեռնետիկ կառուցումներին։ Մնում են մեքենաների զանազան ապարատների սարքավորման, նրանց աշխատանքի նախապատրաստման ու վերանորոգման ֆունկցիաները, որպիսիք արտադրության պրոցեսում չնչին տեղ են գրավում և հավանական է՝ հիմնականում կհանձնվեն հատուկ սարքավորումների։

Նշանակում է արտադրության բուն պրոցեսում նվազում է անմիջական աշխատանքը։ Այդ առթիվ Կ. Մարքսը նկատել է ժամանակին, որ արտադրության պրոցեսի ավտոմատացման դեպքում այն ընթանում է որպես բնական պրոցես, դուրս է մղվում այնտեղից բանվորը, որն այլևս այդ պրոցեսի գլխավոր ագենտը չէ, այլ կանգնած է նրա կողքին, հանդես է գալիս որպես վերակացու և կարգավորիչ (տե՛ս «Большевик» ամսագրի № 11—12, 1939 թ., էջ 62)։

Բնականաբար հարց է ծագում՝ արդյոք տեխնիկայի զարգացումն ապագայում ավելորդ չի՞ դարձնի մարդու արտադրական գործունեությունը։ Այդ հարցին պատասխանելու համար անհրաժեշտ է նկատի ունենալ տեխնիկայի զարգացման պատմական տենդենցը։ Հայտնի է, որ աշխատանքի մանուֆակտուրային բաժանումը միևնույն պրոդուկտի արտադրության հետ կապված աշխատանքի պրոցեսը բաժանեց իր պարզ ձևերին, դրանց հետ կապված գործիքները կատարելագործելով՝ նախապատրաստեց մեքենայական արտադրության առաջացումը։ Վերջինս ավելի ծավալեց աշխատանքի բաժանման շրջանակները. սկիզբ առավ արտադրության նեղ մասնագիտացումը. նախ մի որևէ պրոդուկտի, ապա՝ մի մասնիկի (դետալի) գծով, որի հիման վրա էլ տեխնիկայի ու գիտության զարգացման շնորհիվ ստեղծվեցին արտադրության բազմաթիվ նոր ճյուղեր, հանդես եկան տասնյակ հազարավոր նոր գործարաններ։

Արտադրության նեղ մասնագիտացումը նույն տեխնիկայի և գիտության զարգացման շնորհիվ մարդկությանն այսօր անհրաժեշտաբար մղում է դեպի արտադրության պրոցեսի կոմպլեքսային մեքենայացում և լիակատար ավտոմատացում։ Ինքը՝ այդ պրոցեսը, առաջադրում է բազմաթիվ նոր արտադրության ճյուղերի և ձեռնարկությունների ստեղծում, ընդ որում այս անգամ ո՛չ միայն աշխատանքի միջոցների, այլև աշխատանքի առարկայի գծով։ Նշանակում է գիտա-տեխնիկական նոր հեղաշրջման հասարակական աշխատանքի բաժանումն ավելի է ծավալվում, դրա հիման վրա հանդես են գալիս արտադրության բազմաթիվ նոր ճյուղեր ու ձեռնարկություններ։ Խոսելով արտադրության եղանակի, արտադրության միջոցների անընդհատ փոփոխումների մասին՝ Մարքսը գրում է. «...աշխատանքի բաժանումն անխուսափելիորեն կձգտի ավելի մեծ աշխատանքի բաժանում, մեքենաների կիրառումը՝ մեքենաների ավելի լայն կիրառում, խոշոր ծավալի արտադրությունը՝ էլ ավելի խոշոր արտադրություն» (К. Маркс и Ф. Энгельс, Соч. т. V, էջ 440, I издание)։ Այդպիսին է արտադրության զարգացման դիալեկտիկան։

Այս վկայում է այն մասին, որ աշխատանքը, կորցնելով իր նշանակու-



թյունն արտադրության անմիջական պրոցեսում, ծավալվում է նրա կողքին, նրա շուրջը։ Նախ՝ յուրաքանչյուր ավտոմատացված ձեռնարկություն պահանջում է իր կառավարման համար անհրաժեշտ թվով մեքենագետներ, էլեկտրատեխնիկներ, պրիբորիստներ և այլն. մյուս կողմից՝ մարդկանց գործունեությունը ծավալվում է այդ բոլոր մեքենաների, պրիբորների և այլ սարքավորումների նախագծման, արտադրական պրոցեսի ծրագրման, կազմակերպման ու իրականացման, արտադրության զարգացման ուղիների որոնման և նոր խնդիրների առաջքաշման ու լուծման գծով։ Անշուշտ այդ բոլոր տեսակի աշխատանքները կպահանջեն հարաբերականորեն ավելի քիչ մարդիկ, քան ներկայումս են աշխատում նյութական բարիքների արտադրության բնագավառում։ Սակայն հենց դրանում է հասարակության օգտին անհրաժեշտ աշխատանքի կրճատման և ազատ ժամանակի մեծացման երաշխիքը։ Իսկ ազատ ժամանակը հենց այն հիմնական պայմանն է, որը հնարավորություն կընձեռի անհատին՝ բազմակողմանի դրսևորելու ու զարգացնելու իր ընդունակությունները։

Սա խնդրի մի կողմն է։ Մյուս կողմն այն է, որ արտադրության պրոցեսի հիման վրա հանդես եկող նոր մասնագիտությունները մարդու աշխատանքը դարձնում են բարձրորակ և ըստ էության ստեղծագործական։ Ներկա գործող ավտոմատ գծերը, որոնք ապագա տեխնիկայի նախատիպն են, ապացուցում են, որ այդ մասնագիտությունները կարող են զբաղեցնել միայն բազմակողմանի զարգացած մարդիկ։ Նրանք այնուհետև ցույց են տալիս, որ անհնար է այդ պրոֆեսիային վարպետորեն տիրապետել՝ առանց իմանալու հարակից պրոֆեսիաները և տեխնոլոգիական խումբ մեքենաների աշխատանքը։ Այս հանգամանքը, ինչպես նաև անվերջ կատարելագործվող արտադրության պրոցեսը պահանջում են աշխատողներից՝ երբեք չբավարարվել ձեռք բերած ունակություններով ու գիտելիքներով և չսահմանափակվել այն մասնագիտությամբ, որը հանդիսանում է նրա անմիջական զբաղմունքը։ Անընդհատ կատարելագործել սիրով ընտրած մասնագիտությունը, ուսումնասիրել դրա հետ առնչվող պրոցեսները և գիտությունները. այդ են պահանջում հասարակության ու անհատի զարգացման շահերը։

Այն հասարակությունը, որտեղ մարդիկ ստանում են անհրաժեշտ ընդհանուր և մասնագիտական կրթություն՝ ըստ ընդունակությունների ու հակումների, ընտրում են համապատասխան մասնագիտություն և դրա շրջանակներում փոփոխում իրենց գործունեության ձևերը, հնարավորություն ունեն յուրացնելու նրա հետ առնչվող այլ մասնագիտություններ և աշխատանքից դուրս զբաղվելու նաև իրենց հետաքրքրող այլ հարցերով, աշխատանքը դարձնում է ստեղծագործական, հրապուրիչ։ Այս բոլորը կոմունիզմն է տալու մարդկանց, սովետների երկրի աշխատավորները կկերտեն այդ ցանկալի հասարակարգը։



# ԲԱՐՈՅԱԿԱՆ ԳՈՐԾՈՆԻ ԴԵՐԸ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ԷՊՈԽԱՅՈՒՄ

ՀՐ. ՇԱՔԱՐՅԱՆ

Յուրաքանչյուր հասարակարգ ունի իր էթիկական կողմը, սոցիալական երևույթների գնահատման իր բարոյական չափանիշը։ Պատմությանն անհայտ է մարդկության զարգացման որևէ փուլ կամ մարդկանց հասարակական միավորման որևէ ձև, որտեղ չթագավորեին այս կամ այն բարոյական ըմբռնումները։ Այդ իմաստով բարոյականությունը, որպես մարդկանց հարաբերությունները կարգավորող նորմաների որոշ սիստեմ, նույնքան հին է, որքան ինքը՝ հասարակական մարդը։ Բարոյականության՝ մարդու հետ հանդես գալն արդեն վկայում է, թե որքանով է այն հարազատ մարդկային էությանը, ինչքան անմիջականորեն է արտահայտում մարդու սոցիալական բնությունը։ Հենց այն հանգամանքը, որ նախնադարյան անդասակարգ համայնական հասարակարգում, քաղաքական, իրավական և սոցիալական այլ նորմաների բացակայության պայմաններում բարոյական պարտքն էր ընկած մարդկանց գործելակերպի հիմքում,— արդեն ենթադրում է, որ մյուս բոլոր, ոչ բարոյական նորմաներն ուղեկցում են մարդկությանը միայն որոշ էպոխաներում, մինչդեռ բարոյականի պատմականությունը չափվում է մարդու պատմականությամբ։

Բարոյականի սոցիալական նման դերը առավել ակնհայտ է դառնում հասարակական կյանքի զարգացման կոմունիստական էտապում. միաժամանակ դա խոսում է այն մասին, թե ինչքան վճռական նշանակություն կարող է ունենալ բարոյական գործոնը կոմունիզմի կառուցման էպոխայում։

Հայտնի է, որ յուրաքանչյուր ֆորմացիա ունի մարդու իր տիպը և յուրաքանչյուր նոր հասարակարգի ստեղծումը միաժամանակ նոր մարդու կազմավորման պրոցես է, նոր հոգեբանության, նոր բարոյական կերպարի, նոր աշխարհըմբռնման ստեղծման պրոցես։ Սակայն մարդու ներքնաշխարհի տարբեր կողմերը չեն կարող վերափոխվել միևնույն ձևով ու միևնույն հաջողությամբ և վերափոխված տարբեր կողմերը բոլորովին ոչ միևնույն նշանակությունն են ձեռք բերում տվյալ հասարակարգի կառուցման ու զարգացման գործում։

Սովորաբար մարդկանց հայացքների սիստեմում ամենից արագ փոփոխության են ենթարկվում նրանց քաղաքական ըմբռնումները։ Հասարակության անդամների քաղաքական միասնությունն ավելի հեշտությամբ և կարճ ժամանակում է ձեռք բերվում, քան, օրինակ, բարոյական միասնությունը։ Այդ պայմանավորված է, մասնավորապես, հասարակական գիտակցության ձևերի սիստեմում քաղաքականության գրաված տեղով։ Քաղաքականությունն ավելի մոտ է կանգնած էկոնոմիկային և վերջինիս անմիջական «խոսափողն» է ծա-



տայում։ Էկոնոմիկայում տեղի ունեցող ամեն մի տեղաշարժ անմիջապես իր արտացոլումն ու արձագանքն է գտնում քաղաքականության մեջ։ Յուրաքանչյուր հասարակական խավ իր սոցիալական պահանջներն ընկալում է ամենից առաջ քաղաքական հայացքների ձևով։ Հետո է միայն (այն էլ հիմնականում միջնորդավորված քաղաքականության միջոցով) տվյալ էկոնոմիկական փոփոխությունը ստանում իր փիլիսոփայական իմաստավորումը կամ ուղղումներ մտցնում համապատասխան դասակարգի բարոյական կոդեքսում։ Այդ իմաստով, Էնգելսի արտահայտությամբ, բարոյականն այն բնագավառներից է, որոնք էկոնոմիկականի նկատմամբ առավել բարձր են սավառնում, կամ, այլ կերպ ասած, որոնց հարաբերական անկախությունն ու ինքնուրույնությունն առավել ընդգծված ձևով են հանդես գալիս։

Կոմունիզմի կառուցման էպոխայում բարոյական գործոնի դերի պարզման համար հետաքրքրություն է ներկայացնում նաև բարոյականության մի այլ հատկանիշը։ Հայտնի է, որ երբեմն մարդիկ կարող են իրենց հայացքներով բավականին առաջ ընկնել իրերի բնական ընթացքից. պրոլետարիատը սովորաբար ավելի շուտ է քաղաքականապես, տեսական-փիլիսոփայական առումով լուսավորվում, քան սոցիալական ռևոլյուցիայի գործնական իրականացման է ձեռնամուխ լինում։ Մինչդեռ բարոյական ըմբռնումները զուրկ են գիտակցության այդ ձևերին հատուկ առաջ ընկնելու ճկունությունից և դրա փոխարեն նրանք ետ մնալու, արդեն հնացած նորմաներին կառչելու առավել շոշափելի տենդենց ունեն։ Ահա այդ պատճառով էլ ռևոլյուցիան էկոնոմիկական հարաբերություններում կամ մարդկանց սոցիալ-քաղաքական ըմբռնումներում ավելի հեշտ ու կարճ ժամանակաընթացքում է տեղի ունենում, քան բարոյական աշխարհում։ Այստեղ այլ գործոնների հետ միասին վճռական նշանակություն է ստանում նաև ժամանակի գործոնը։ Ժամանակ է պահանջվում, որպեսզի հնությամբ սրբագործված սովորույթներն իրենց տեղը զիջեն նոր հարաբերությունների բարոյական պահանջներին։

★ ★ ★

Մարդու ծագումից հետո կոմունիստական հասարակության առաջացումը ամենամեծ հեղաբեկումն է մարդկային բնության մեջ։ Ֆ. Էնգելսը նույնիսկ գտնում է, որ որոշ իմաստով մարդու կազմավորման պրոցեսը վերջնականապես ավարտվում է հասարակական կյանքի կոմունիստական վերակառուցման սկզբնավորումով. այստեղ է, որ մարդը վերջնականապես բաժանվում է կենդանական աշխարհից և անցում կատարում դեպի իր իսկական մարդկային կեցությունը։ Ի դեպ, նշենք, որ այն բավական տևական ու հակասական պրոցես է։

Արդեն վերն ասվեց, որ մարդկանց քաղաքական համոզմունքները ավելի մեծ արագությամբ են փոխակերպվում։ Պատահական չէ, որ պատմության համար խիստ կարճ ժամանակաընթացքում սովետական ժողովրդի քաղաքական միասնությունն այնպիսի մակարդակի հասավ, որ օրինաչափությունից հեռու եզակի դեպքերի հասցվեց և նույնիսկ բացառվեց մեր երկրում քաղաքական հանցագործների գոյությունը։ Մինչդեռ բանն այլ է բարոյականության բնագավառում. այստեղ պատճառներն ավելի բազմազան են, անցյալը՝ անհամեմատ կենսունակ, տատանումներն ավելի նուրբ։

Քաղաքականությունը պետությունների, դասակարգերի, սոցիալական խմբերի հարաբերություն է, մինչդեռ բարոյականը ձգվում է մինչև մարդու ներքին ինտիմ կյանքը, նրա հույզերի ու զգացմունքների աշխարհը։ Եվ երբ հիմնականում լուծվում են սոցիալ-քաղաքական պրոբլեմները, վճռական նշանակություն են ստանում մարդկանց էթիկական-բարոյական հարաբերությունները։ Ինչպես նշվում է մեր պարտիայի նոր ծրագրում, կոմունիզմը հասարակական կյանքի կազմակերպման ամենաբարձր ձևն է։ Կոմունիզմը մարդկանց հարաբերություններից դուրս է մղում ոչ միայն հասարակության անդամների կազմակերպված սոցիալ-քաղաքական պայքարը, ազգային երկպառակությունները ու ռասայական խժդժությունները, այլև անհատների միջև գոյություն ունեցող ոչ սկզբունքային սոցիալական հողի վրա բարձրացող պայքարը՝ անցյալից եկող կամ տնտեսական վատթար պայմանների ու ցածր կուլտուրայի արդյունք հանդիսացող, մարդուն խիստ անարժան այն քաղքենիական մանրուքներն ու խծբծանքները, որոնք այնքան էներգիա ու ժամանակ են խլում անհատներից։ Ահա թե ինչու մեր պայմաններում քաղաքական դաստիարակության կողքին այնքան վճռական նշանակություն է ստանում ժողովրդի բարոյական դաստիարակությունը։ Երկրորդի փոխարինումը առաջինով ոչ միայն ապարդյուն կլինի, այլև երբեմն նույնիսկ վնասակար. այլ ձևերի հետ միասին մասնավորապես այդ կարող է արտահայտվել կոնկրետ անհատների հետ գործնական աշխատանքի ընդհանրապես բոլորին վերաբերվող ճառերով փոխարինելու ձևով։ Այս դեպքում, օրինակ, գործարանի դիրեկտորը բանվորի մեջ տեսնում է բանվոր ընդհանրապես, կամ ուսուցիչն աշակերտի մեջ՝ աշակերտ ընդհանրապես և ոչ հենց տվյալ բանվորին կամ տվյալ աշակերտին՝ իրենց անհատական խառնվածքով ու հետաքրքրություններով հանդերձ։ Նման կոնկրետ մոտեցումը մեր երկրում հնարավոր է դառնում շնորհիվ այն բանի, որ ողջ սովետական ժողովուրդն ապրում է միասնական սոցիալական-տնտեսական հարաբերությունների պայմաններում, միասնական քաղաքական-գաղափարական համոզմունքների և միասնական բարոյական սկզբունքների մթնոլորտում։

Սոցիալիզմով սկզբունքորեն արդեն վերջ է տրվում տարբեր բարոյական կոդեքսների գոյությանը, չարի և բարու, լավի ու վատի՝ դասակարգային հասարակարգերին հատուկ տարբեր ըմբռնումներին։ Ավելին, կոմունիստական հասարակության հետագա զարգացումը, իրավունքի մահացման հետևանքով, տանում է դեպի բարոյականի շրջանակների ընդլայնումը։ Պարտիայի XXII համագումարն արձանագրեց, որ կոմունիստական հասարակարգի կառուցմամբ հասարակական ինստիտուտները կկորցնեն իրենց քաղաքական տեսքը. այլ կերպ ասած՝ քաղաքականությունը կդադարի որպես հասարակական օրգանիզմը կարգավորող ուժ գոյություն ունենալուց։ Դրա հետ միաժամանակ, իբրև քաղաքական որոշակի պահանջների արձանագրումներ, կդադարի գործել նաև իրավունքը։ Վերջինս սերտ ազգակցություն ունի բարոյականի հետ. այդ իշխող դասակարգի բարոյական նորմաների, հատկապես տնտեսական հարաբերությունների հետ կապվող պահանջներն են, որ մասնավոր սեփականության պայմաններում հասարակական արտադրությունը հնարավոր դարձնելու համար, օրենքի աստիճանի են բարձրացվել և պարտադիր հայտարարվել ողջ հասարակության համար։ Այդ իմաստով դասակարգային հասարակարգերում աշխատավոր ժողովրդի բարոյական սկզբունքները ոչ միայն



հակադիր են իշխող դասակարգի բարոյական սկզբունքներին, այլև գոյություն ունեցող իրավական սիստեմին։

Կոմունիստական հասարակարգի ծագման շնորհիվ երկու բարոյական կոդեքսների վերացմամբ չքանում է նաև իրավականի ու բարոյականի հակադրությունը։ Իրավականը նույնչափով ժողովրդի կամքի արտահայտությունն է դառնում, որքան և բարոյականը։ Իրավականը ձեռք է բերում միաժամանակ նաև բարոյական բովանդակություն։ Հենց սովետական իրավունքի զորությունը պետք է դիտել նաև այն բանում, որ նա ոչ միայն իրավական հզորություն ունի, այլև բարոյական ուժ։ Եվ նրա մեջ վերջինս ավելի զորեղ է ու առավել խոր օրինաչափության արտահայտություն է հանդիսանում, քան առաջինը։ Պատահական չէ, որ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում ընկ. Իլյիչովը նշեց, թե սոցիալիզմի պայմաններում օրենքները որքան էլ խիստ դառնան (ինչպես մասնավոր սեփականատիրության պայմաններում կարող է լինել), արդյունքը երբեք այն չի ստացվի, ինչպիսին կարելի է սպասել հասարակական հսկողության ու հոգատարության պայմաններում։ Եվ իրոք, մեկ մարդուն պատկանող սեփականության պահպանումը, երբ լայն մասսաները սեփականազուրկ են, կարող է իր լուծումը գտնել միայն օրենքների դաժանության մեջ։ Մինչդեռ, երբ նյութական միջոցները պատկանում են բոլորին, և բոլորն են կոչված դրանք վերահսկելու, հափշտակողների թեր կտրելը և նման այլ վայրագ միջոցներ կորցնում են իրենց օբյեկտիվ հիմքերը։

Իրավունքի բարոյական ուժ ձեռք բերելը ավելի հարաբերական, իսկ հետագայում նաև, ավելորդ է դարձնում իրավականի և բարոյականի սահմանները։ Մեր պայմաններում այդ տենդենցի արտահայտությունն են հանդիսանում, մասնավորապես, ընկերական ու թաղային դատարանները։ Կոմունիստական հասարակարգի զարգացման տրամաբանությամբ իրավունքը, դատն ու դատաստանը, իբրև մարդկանց հարաբերությունները կարգավորող միջոցներ, դադարում են գոյություն ունենալուց։ Մարդկանց հարաբերությունները վերահսկող ու կարգավորող միակ ուժը դառնում է բարոյական մոտիվը։ Անհատի գործունեության բարոյական վերլուծությունը, նրա գնահատումը հասարակական նշանակության տեսանկյունից, բարոյական բավարարությունն ու բարոյական ինքնաքննադատությունը, մարդկանց հարաբերություններում ավելի մեծ չափերով գիտակցությանն ապավինելը ստանում են վճռական նշանակություն։ Անհատի համար ամենազորեղ պատիժն է դառնում շրջապատի կողմից մերժված լինելը։ Միայն այս պայմաններում է անհատը կանգնում սեփական խղճի դատաստանի առաջ։ Այդ նշանակում է, որ բարոյականը բարձր է իրավականից, որովհետև առաջինն իր հիմքում ունի գիտակցումը, համոզմունքը, իսկ երկրորդը՝ արտաքին հարկադրանքը, բռնությունը։ Գիտակցության դիմելը բոլորովին նույնը չէ, ինչ բռնությամբ անհատին վերափոխելու փորձը, չնայած երկուսն էլ միևնույն նպատակն են հետապնդում, բայց, ինչպես միշտ, այստեղ ևս միջոցն ազդում է նպատակի վրա։

★ ★ ★

Կոմունիզմի կառուցման ընթացքով բարոյական ֆակտորի գործունեության շրջանակների ընդլայնումն իրավունքի վերացումով չի սահմանափակվում.

բարոյականը մուտք է գործում նաև նյութական բարիքների արտադրության պրոցեսը, աշխատանքային գործունեության մեջ։

Աշխատանքը, որ դասակարգային հասարակարգերում երկճեղքված էր մտավոր ու ֆիզիկական հակադիր բնագավառների և տասնյակ դարեր շարունակ մնում է իբրև շահագործման օբյեկտ, հազիվ թե կարողանար ունենալ էմոցիոնալ գրավչություն, հետևաբար նաև իր իրականացման հիմքում՝ բարոյական շարժառիթ։ Մասնավոր սեփականատիրության ու նրա անմիջական արդյունքը հանդիսացող մարդու շահագործման ոչնչացմամբ սոցիալիզմը ռեալ հիմքեր է ստեղծում աշխատանքին վերադարձնելու այն վեհ, ստեղծագործական բովանդակությունը, որին մարդը պարտական է իր անատոմո-ֆիզիոլոգիական կազմությամբ, իր բարոյական ու իմացական կարողություններով։ Օբյեկտիվ պայմաններ ստեղծվեցին մարդկանց, մասնավորապես կապիտալիստական հասարակարգին հատուկ, «պրոֆեսիոնալ ապշացումից» ազատելու և կյանքի կոչելու մարդու մեջ նիրհող բոլոր ուժերը. վերստին զուգակցվեցին աշխատանք կատարելու ունակություն ունեցող երկու կարգի օրգանները՝ մկաններն ու ուղեղը։

Աշխատանքին այդպիսի զգացմունքային գունավորում է տալիս ամենից առաջ իր և ամբողջ ժողովրդի համար աշխատելու գիտակցումը։ Անկասկած աշխատանքային գրավչությունը ենթադրում է նաև արտադրողական ուժերի բարձր զարգացում, աշխատավորի նյութական-կուլտուրական պայմանների բարվոք վիճակ և նման այլ արտաքին կարգի հանգամանքներ։ Այս հիմքերի վրա է ծնունդ առնում այն աշխատանքը, որը «կատարվում է ո՛չ թե որոշակի պարհակ կրելու համար, ո՛չ թե որոշ մթերքներ ստանալու իրավունքի համար, ո՛չ թե նախապես սահմանված և օրինականացված նորմաներով, այլ կամավոր աշխատանք, նորմաներից դուրս աշխատանք, մի աշխատանք, որը տրվում է վարձատրությունը նկատի չունենալով, առանց վարձատրության պայմանների, մի աշխատանք, որը կատարվում է ընդհանուրի օգտին աշխատելու սովորությամբ և ընդհանուրի օգտին աշխատանքի անհրաժեշտության նկատմամբ գիտակից (արդեն սովորություն դարձած) վերաբերմունքով, մի աշխատանք, որը պահանջմունք է առողջ օրգանիզմի համար» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 30, էջ 661)։ Այլ կերպ ասած՝ հասարակական կյանքի կազմակերպման կոմունիստական էտապում ծնունդ է առնում աշխատանքի նոր խթան՝ բարոյական-գիտակցական գործոնը. մարդիկ աշխատում են ոչ միայն գրպանի, այլև հոգու համար. աշխատանքը ծառայում է ոչ միայն որոշ նյութական պահանջների բավարարման նպատակին, այլև դառնում է նյութական շահից ազատ կենսական պահանջ։ Աշխատանքը դառնում է խորապես բարոյական երևույթ։ Դրա մասին են վկայում կոմունիստական աշխատանքի մասնակիցների բազմամիլիոնանոց բանակում խոր օրինաչափության տենդենց արտահայտող այն ոչ եզակի փաստերը, երբ աշխատավորը բարձր վարձատրվող աշխատանքից կամավոր կերպով անցնում է ցածր վարձատրվող ու ետ մնացող օղակները, երբ ինժեներներն ու տեխնիկները հրաժարվում են ռացիոնալիզատորական նորամուծությունների, երիտասարդ բանվորների ուսուցման դիմաց լրացուցիչ վարձատրությունից, երբ հասարակական հիմունքներով կազմակերպվում են դպրոցներ, համալսարաններ և նման այլ կարգի հանրօգուտ միջոցառումներ։ Մեր ռեսպուբլիկայում, օրինակ, Կիրովականում է կազմակերպված երկրում առաջինը հիմնադրված հասարակական հիմունքներով գործող ռացիոնա-



լիզատորների ու գյուտարարների ինստիտուտը, որտեղ դասախոսում են մի քանի տասնյակ բարձրորակ ինժեներներ ու տեխնիկներ։

Աշխատանքն այդպիսի գրավչություն է ձեռք բերում նաև այն պատճառով, որ նա թոթափելով միալար, հոգեմաշ ու անհրապույր վիճակը, որոշ սահմաններում ձեռք է բերում ստեղծագործական բնույթ։ Բանվորի բազմակողմանի զարգացման ու սուբյեկտիվ ակտիվության համար այդպիսի օբյեկտիվ հիմքեր է ստեղծում, մասնավորապես, ժամանակակից ավտոմատիկան։ Այս տեսակետից էլ իմաստավորվում է ՍՄԿՊ Ծրագրի այն թեզը, որ «Ավտոմատացումը և կոմպլեքսային մեքենայացումը սոցիալիստական աշխատանքը աստիճանաբար կոմունիստական աշխատանքի վերաճելու նյութական հիմքն են» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 488)։

Եվ, վերջապես, աշխատանքը հոգեկան բավականություն և հաճույք կարող է պատճառել իր էսթետիկական կողմով, աշխատանքային պայմանների կամ բուն աշխատանքային պրոցեսի գեղարվեստական հատկանիշներով։

Այս ամենը, իհարկե, դեռևս չի նշանակում, թե աշխատանքի բարոյական-էթիկական բովանդակությունն այն աստիճան է զարգացել, որ արդեն ավելորդ է դառնում նյութական շահագրգռվածության մոմենտը, թե իբր մեր պայմաններում արդեն կարելի է անտեսել նյութական ազդակը և ապավինել միայն բարոյական կարգի գործոններին։ Կոմունիստական աշխատանքի շարժման սկզբնավորման ժամանակ եղան նման ելակետ ենթադրող հավասարարական փորձեր. նկատվեցին նյութական շահագրգռվածության անտեսման ու հավասար վարձատրման դեպքեր, բայց շուտով պրակտիկան ցույց տվեց այդպիսի մոտեցման վաղահասությունը։ Ինչպես նշվեց պարտիայի Կենտկոմի հունիսյան պլենումում, մեր պայմաններում բաշխման բնագավառում հավասարությունը ոչ թե մոտեցնում, այլ հեռացնում է կոմունիզմը։ Կյանքի դիալեկտիկան պահանջում է, որ երևույթը, տվյալ դեպքում նյութական շահագրգռվածությունը, կարող է ավելորդ դառնալ իր մաքսիմում զարգացման հետևանքով, իր ողջ էության բացահայտման ճանապարհով միայն։

Մեր պարտիան, ելնելով կոմունիստական հասարակարգի կառուցման ժամանակակից ռեալ պայմաններից, սովետական քաղաքացիների գործունեության հիմքում դնում է նյութական շահագրգռվածության սկզբունքը։ Աշխատանքը դեռևս կապված է նյութականի հետ. սակայն առաջինի բովանդակությունը երկրորդով չի սպառվում։ Սովետական մարդն անտարբեր չէ իր աշխատանքի սոցիալական բովանդակության ու հետևանքների նկատմամբ. նրա հետաքրքրությունները հեռու են սոսկ աշխատավարձի շրջանակներով սահմանափակվելուց։ Այլ կերպ ասած, այժմ մեր երկիրն ապրում է իր վերընթացի այն էտապը, երբ նյութական շահագրգռվածությունը պետք է զուգակցել բարոյական-գիտակցական խթանների հետ, առաջինը դարձնել միջոց երկրորդի արմատավորման համար։ Բարոյականն, անկասկած, ավելի զորեղ ազդակ է և այդ պատճառով աշխատանքի առավել բարձր արտադրողականություն է ենթադրում, քան կարող է ապահովել անմիջական նյութական վարձահատույցի հետ կապվող, ըստ էության, արտաքին, հարկադրյալ մղումը։ Աշխատանքի նման բնույթ ձեռք բերելը ոչ միայն հասարակական կյանքի բարձր զարգացման ցուցանիշ է, այլև մարդու անհատականության, նրա գաղափարական ու բարոյական զարգացման բարձրագույն դրսևորում։

* * *

Նոր հասարակարգի կառուցումը, վերջապես, հրամայաբար պահանջում է նաև նոր բարոյական նորմաների արմատավորում մարդկանց կենցաղային, ընտանեկան հարաբերություններում։

Տրադիցիայով անգամ գուցե մարդկային գործունեության ոչ մի բնագավառում բարոյականն այնպիսի լայն իշխանություն չի վայելում, ինչպես կենցաղում։ Եվ միաժամանակ գուցե ոչ մի տեղ սովորույթի, ավանդության ուժն այնքան զորեղ չէ, որքան կենցաղում։ Ընդհանրապես կենցաղը բավականաչափ պահպանողական բնագավառ է։ Առանց մեր կյանքի այս անհրաժեշտ անկյան բանական կարգավորման կոմունիզմի մասին խոսք լինել չի կարող։ Պատահական չէ, որ կոմունիստական աշխատանքի բրիգադներում կոմունիստաբար ապրելը կարևորագույն պայման է ճանաչվում նոր հասարակարգի, նոր մարդու համար։ Չէ որ նոր սերունդը ֆիզիկապես ու հոգեպես ձևավորվում է նաև կենցաղում, ընտանիքում։ Կենցաղում իր տեղը գրավելը, հասարակական կյանքում իր տեղն ու դերն ունենալու պատասխանատու գործի մի մասն է։ Մարդու էությունը մեկ է. վատ քաղաքացին որպես կանոն, վերջիվերջո վատ հայր է, վատ ամուսին, վատ բարեկամ ու վատ ընկեր. մարդը չի կարող մի բնագավառում ազնիվ լինել, մյուսում՝ անազնիվ։ Եսասերը եսասեր է ոչ միայն արտադրության մեջ, այլև ընտանիքում, ընկերական շրջանում և այլուր։

Նոր հարաբերությունների ոգով կենցաղի վերակառուցումը սկսվել է դեռևս մասնավոր սեփականության վերացումով։ Մասնավոր սեփականությունն է տնտեսական հիմք ծառայել ինդիվիդուալիզմի համար, այն է, որ մարդկանց բաժանում է մեկը մյուսից, յուրաքանչյուրի համար ստեղծում միայն իրեն պատկանող և մյուսներին հակադրվող կյանք։ Մասնավոր սեփականությունն է ծնունդ տվել «մարդը մարդուն գայլ է» տխրահռչակ ֆորմուլային։ Հանրային սեփականությունը, ընդհակառակը, հիմք հանդիսացավ մարդկանց միավորման համար և հարություն տվեց մարդը մարդուն եղբայր է, ընկեր, բարեկամ նշանաբանին։ Սոցիալիստական արտադրական հարաբերությունների ստեղծմամբ սովետական մարդն անհրաժեշտ օբյեկտիվ նախադրյալներ ստացավ ամենաառաջավոր, ամենակուլտուրական, ամենագիտակից ու ամենահասարակական անձնավորություն դառնալու համար։ Նման մարդն է մեր իրականության ոգին արտահայտողը և ոչ թե եսասերի՝ հանրությունից պատվարված, տխուր քաղքենիական հասարակության մեջ ապրող, բայց մենության մեջ տառապող էությունը։ Մեր պայմաններում հիմնականում առկա են բոլոր ռեալ հնարավորությունները «իմի» և «քոնի» նեղ, հեղձուցիչ սահմանների ճեղքման և նրանց հիմքերի վրա հզոր մերի և մենքի ստեղծման համար։ Այդ նույն նպատակին են ծառայում հասարակական դաստիարակության ընդլայնման, ժողովրդի կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման և, վերջապես, ընտանիքը նյութական և նրա էության նկատմամբ արտաքին այլ երանգներից ազատելու, ընտանիքն ամբողջապես բարոյական երևույթ դարձնելու մեր պարտիայի ծրագրային պահանջները։ Գաղտնիք չէ և հազիվ թե օրինակներ պահանջվեն լուսաբանելու համար այն փաստը, որ կենցաղային շատ էքսցեսներ իրենց հիմքում ունեն նյութական-կուլտուրական ցածր մակարդակը, որ այդ նյութապես անբավարար վիճակի ֆոնի վրա մարդկանց թերություններն ավելի ակնառու են դրսևորվում, հարազատներն ու ծանոթ-



ները մեկը մյուսի համար դառնում են սոսկ քննադատության օբյեկտներ։ Բայց ճշմարտությունը մնում է այն, որ մեր պայմաններում բարոյական աշխարհում նկատվող խոտորումները ոչ այնքան նյութական անբավարար պայմանների առկայության արդասիք են, որքան տրադիցիայի, այն էլ բացասական բովանդակություն ունեցող տրադիցիայի և ոչ ճիշտ դաստիարակության արդյունք։ Ի՞նչ նյութական պայմաններ կարող են, օրինակ, լուրջ հիմքեր ծառայել խուլիգանին դանակահարության մղելու, կամ որևէ պաշտոնյայի բյուրոկրատ դարձնելու համար։

Բարոյական գործոնի դերի աճը կոմունիզմի կառուցման էպոխայում անհրաժեշտաբար ենթադրում է նաև հասարակական կարծիքի զորացում. չէ որ վերջինս է «վայելում» բարոյական աշխարհի գերագույն իշխանության պատիվը։ Նա է էթիկայի նորմերի, այդ չգրված օրենքների պահպանման ամենահիմնական լծակը հանդիսանում։ Հասարակական կարծիքով է փոխարինվում և իրավունքի հետ դուրս մղվում հարկադրանքի օրգանների ֆունկցիան։ Խոսքը, իհարկե, բանական բովանդակություն ունեցող հասարակական կարծիքի մասին է և ոչ թե ֆետիշացված հին սովորույթների ու տրադիցիաների մասին՝ որոնք նույնպես երբեմն կարող են հասարակության որոշ շրջանների պաշտպանությանն արժանանալ։ Այդ նշանակում է, որ ինքը հասարակական կարծիքը ևս մեկընդմիշտ տրված երևույթ չէ և ենթակա է փոխակերպման՝ համապատասխան դարաշրջանի ոգուն, համաձայն տվյալ հասարակարգի բարոյական զարգացման մակարդակին։

Սոցիալիզմին օտար դասակարգերը վաղուց են անհետացել մեր երկրում, բայց բուրժուական ու մանր բուրժուական տարրերի վերացմամբ անմիջապես չեն անէանում նաև նրանց բարքերն ու սովորույթները, որոնք դարեր շարունակ մասնավոր սեփականության գոյությամբ ներարկվել են մարդկանց գիտակցության մեջ և իբրև վերապրուկներ, կերպարանափոխված ու քողարկված, երբեմն նույնիսկ բացահայտ կերպով, շարունակում են տեղ գտնել առանձին անհատների գործելակերպում։ Քիչ չեն պատահում, որ մարդկանց մեջ մերի, սոցիալիստականի հետ միասին ու նրա կողքին տեղ է գրավում նաև օտարը, հակասոցիալիստականը։ Սովորաբար կյանքում հազվադեպ են հանդիպում «հրեշտակներ» ու «հրեշներ»։ Այդ իմաստով հնի ու նորի պայքարի գիծը մեր պայմաններում անցնում է ոչ միայն յուրաքանչյուր կոլեկտիվի, այլև նույնիսկ յուրաքանչյուր անհատի միջով։ Արտաքուստ ոչ այնքան դժվար թվացող այս ճակատը, ըստ էության պահանջում է նուրբ մոտեցում, երկարատև ու քրտնաջան աշխատանք. պահանջվում է ելնել անհատների դրական, առաջադիմական հատկանիշներից ու որակներից և պայքար հայտարարել նրանց մեջ պահպանվող հետադիմականի, մեր իրականությանը խորթ սովորույթների ու գծերի դեմ, պայքարել հանուն մարդու մեջ մարդկայինի հաղթանակի։ Այդպիսի գործ կարող է կատարել ամենից առաջ մեր առօրյայով ապրող աշխատանքային կոլեկտիվը։ Վերջինս է կոչված լինելու այն հիմնական դարբնոցը, որտեղ կազմավորվում է նոր անհատը, նոր սոցիալական հարաբերությունների բարոյականության կրողը։ Նման դեր են կոչված կատարելու, հատկապես, կոմունիստական աշխատանքի բրիգադներն ու տեղամասերը, ձեռնարկություններն ու քաղաքները։

Այդ և նման կոլեկտիվներում մարդկանց ազնվացնող փոխադարձ օգնությունը կարող է լինել բազմազան ու բազմակերպ՝ նյութականից մինչև

բարոյականը, ուսման պրոցեսից մինչև սովորական կենցաղային հարաբերությունները։ Մի՞թե դրա արդյունքը չէ, օրինակ, էլեկտրաճշգրիտ չափիչ սարքերի գործարանի՝ Կ. Իսրայելյանի գլխավորած 24 հոգիանոց բրիգադան, որտեղ փոխադարձ օգնությունը բոլորին դարձրել է արտադրության առաջավոր, մի քանի մասնագիտությունների տեր, ոմանց նույնիսկ բարձրագույն ուսումնական հաստատությունների ուսանող։ Այսպիսի կոլեկտիվում անհատի խնդիրը դառնում է կոլեկտիվի խնդիրը, անհատի պատիվը՝ կոլեկտիվի պատիվը, անհատի կյանքի յուրաքանչյուր կողմը գտնվում է կոլեկտիվի հոգատարության ու հսկողության ներքո։ Նման կոլեկտիվը ոչ թե ոչնչացնում է անհատականությունը, ինչպես բարբաջում են բուրժուական անհատապաշտության տեսաբանները, այլ սկզբունքային սոցիալական խոր բովանդակություն տալիս անհատի գիտակցությանն ու զգացմունքներին։ Մեր պայմաններում իր ակնհայտ դրսևորումն ու առարկայացումն է գտնում Մարքսի այն միտքը, որ միայն կոլեկտիվում կարող է անհատը ձեռք բերել իսկական ազատության ու կարողությունների բազմակողմանի զարգացման ներքին ներդաշնակություն։

Մեր պայմաններում կոմունիստական գաղափարայնության ու նրա հիմքերի վրա բարձրացող նոր հասարակարգի բարոյական սկզբունքներին զուգընթաց դեռևս շարունակում է մաքառել իր դարն ապրած, տրադիցիայով սրբագործված, բայց պատմական անհրաժեշտությունը կորցրած հինը, որը դրսևորվում է անձնական բարեկեցության ու հարստության տենչով, երբեմն անհատապաշտություն ու եսասիրություն, որպես կամազրկություն, անզուսպ ու չվայել կյանք, որպես գողություն ու խուլիգանություն, որպես մարդատյաց, բյուրոկրատ, որպես ուրիշի հաշվին ապրող, հասարակության վզին նստած պորտաբույծ անհատ — ահա այդ հինն է, որ մեր երկրի առաջընթացի հաղթական հարմոնիայում կեղծ հնչյուն է հանդիսանում։ Այդ հինը, անշուշտ, խիստ անզոր կլիներ մեր իրականության առաջ, եթե գոյություն չունենար բուրժուական աշխարհը, եթե չերկարաձգեր իր գոյությունը վերջինիս ջանքերով։ Ահա թե ինչու մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հունիսյան պլենումում նշվեց, որ հին հայացքների նախապաշարմունքների դեմ ուղղված հարվածը՝ դա հարված է միաժամանակ միջազգային բուրժուազիային։ Այդ հին սովորույթների ու տրամադրությունների հաղթահարումը ստացել է անհետաձգելի գործնական նշանակություն, առանց որի դժվար կլինի հետագա առաջընթացը։ Մեր երկրի զարգացման պրակտիկան հրամայաբար պահանջում է, որ յուրաքանչյուր քաղաքացի այդ տեսանկյունից նայի իրեն ու իր շրջապատին։



# ԿԱԹՆԱՅԻՆ ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ՊՐՈԲԼԵՄԸ

Ս. Կ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Սովետական Միության կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը ամենօրյա հոգատարություն են ցուցաբերում երկրում անասնաբուծության զարգացման և մթերատվության բարձրացման նկատմամբ, ամեն ինչ անում անասնաբուծական մթերքների նկատմամբ բնակչության աճող պահանջմունքները լիովին բավարարելու և սննդի ու թեթև արդյունաբերության մի շարք կարևորագույն ճյուղերը հումքով ապահովելու համար։ ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի 1962 թ. նոյեմբերյան պլենումում տված զեկուցման մեջ ընկեր Խրուշչովը կրկին ընդգծեց անասնաբուծության զարգացման հսկայական նշանակությունը։ Անասնաբուծության զարգացման հարցերը,— ասաց նա,— պետք է պահել ամբողջ պարտիայի ուշադրության կենտրոնում։

Այս կարևոր խնդրի լուծման գործում մեծ դեր կարող են խաղալ դեռ չօգտագործված ռեզերվների հայտաբերումը, դրանց ռացիոնալ օգտագործումը։ Այդպիսի ռեզերվներ դեռևս շատ կան։ Այս հոդվածում մենք կանդրադառնանք դրանցից միայն մեկին՝ կաթի յուղայնության բարձրացմանը։

Սովորաբար, երբ խոսվում է կաթնային անասնաբուծության մթերատվության բարձրացման մասին, շատ-շատերը նկատի են ունենում միայն կովերի կաթնատվության մակարդակը, կամ, ինչպես ընդունված է ասել՝ «ֆուրաժային կովի» տարեկան միջին կաթնատվությունը։ Այդպիսի պատկերացումը ոչ միայն ճիշտ չէ, այլև ունենում է լուրջ բացասական հետևանքներ։

Բանն այն է, որ կաթնային անասնաբուծության մթերատվությունը որոշվում է ոչ միայն յուրաքանչյուր կովից ստացվող կաթի քանակով, այլև նրա որակով և, ամենից առաջ՝ կաթնայուղի պարունակությամբ, քանի որ կաթնայուղը կաթի բաղադրության մեջ մտնող սննդանյութերից ամենակարևորն ու արժեքավորն է։ Պարզված է, որ յուղալի կաթն ունի ավելի բարձր կալորիականություն և պարունակում է ավելի շատ սպիտակուցներ ու վիտամիններ, քան ջրալի կաթը։ Կաթնային անասնաբուծության գլխավոր խնդիրը կարագ յուղի արտադրությունն է։ Որքան բարձր է յուղի տոկոսը կաթի մեջ, այնքան ավելի բարձր է կարագի ելը, այլ կերպ ասած՝ միևնույն քանակի կաթից ավելի շատ յուղ է ստացվում։ Ապացուցված է, որ եթե կաթը պարունակում է 5 տոկոս յուղ, ապա 1 կգ կարագ արտադրելու համար ծախսվում է 16,6 լիտր կաթ, իսկ եթե կաթի յուղայնությունը 3,5 տոկոս է, ապա նույն 1 կգ կարագի արտադրության համար կպահանջվի 25 լիտր կաթ, կամ 50 տոկոսով ավելի։ Միայն այս փաստը բավական է ցույց տալու համար, թե անասնաբուծական մթերքների ավելացման գործում ինչպիսի կարևոր ռեզերվ է կաթի յուղայնության բարձրացումը։ Բայց պետք է նկատի ունենալ, որ կաթի յուղայնությունը խիստ արտահայտված ժառանգական—ցեղային հատկանիշ է, ընդ որում շատ կոնսերվատիվ։ Այդ պատճառով էլ կովերի կաթի յուղայնության նույնիսկ 0,2—0,3 տոկոսով բարձրացումը տեսական խոր գիտելիքներ և մեծ ջանք է պահանջում։

Միության մեջ 30—35 տարի է բազմաթիվ տոհմաբուծարաններ և այլ տոհմային տնտեսություններ սելեկցիոն աշխատանք են կատարում երկրում բուծվող տավարի կաթնատվության և կաթի յուղայնության բարձրացման ուղղությամբ։ Եթե կաթնատվության բարձրացման բնագավառում ձեռք են բերվել նկատելի նվաճումներ (օրինակ ամբողջ երկրի մասշտաբով, միայն վերջին 7—8 տարվա ընթացքում կովերի միջին կաթնատվությունը 1157 կիլոգրամից հասավ 1861 կգ, կամ ավելացավ 60 տոկոսով), ապա կաթի յուղայնությունը ոչ միայն չի ավելացել, այլ որոշ ցեղերի մոտ նույնիսկ մի փոքր պակասել է։ Նույն երևույթը տեղի է ունեցել նաև մեր ռեսպուբլիկայում։ Վերջին տասը, տասնհինգ տարիների ընթացքում Հայաստանում բուծվող տավարի կաթնատվությունը գրեթե կրկնապատկվել է (չնայած մթերատվության ընդհանուր մակարդակն այժմ էլ շարունակում է մնալ ցածր՝ մոտ 1400 լիտր մեկ ֆուրաժային կովից), իսկ կաթի յուղայնությունը պակասել է մոտ 0,2—0,3 տոկոսով և միջինը կազմում է 3,7—3,8 տոկոս։ Կաթի յուղայնությունը պակասելու պատճառներն են. նախ՝ որ տեղական-աբորիգեն ցեղերը, որոնց կաթնատվությունը ցածր էր, բայց կաթը յուղալի (միջինը կազմում էր 4—4,2 տոկոս), վերջին երկու-երեք տասնամյակների ընթացքում տրամախաչվեցին բուծարանային ցեղերի հետ (Հայաստանում հիմնականում շվից ցեղի հետ), որոնց կաթնատվությունը համեմատաբար բարձր է, ունեն մեծ կենդանի քաշ, վաղահաս են, բայց կաթի յուղայնությունը ցածր է (3,6—3,7 տոկոս)։ Այդպիսի տրամախաչման հետևանքով զգալիորեն բարձրացավ խառնացեղերի և, հատկապես, նոր ստեղծված կովկասյան գորշ ցեղի տավարի կաթնատվությունը, մեծացավ նրանց կենդանի քաշը, բարելավվեցին մյուս ժառանգական հատկանիշները՝ վաղահասությունը, միատիպությունը և այլն։ Խառնացեղերի նպատակադիր ընտրության և «իրենց մեջ» բուծելու շնորհիվ ստեղծվեցին նոր, բարձր կաթնատու բուծարանային ցեղեր, ինչպես, օրինակ՝ Հայաստանում, Ադրբեջանում, Վրաստանում և Դաղստանի ավտոնոմ ռեսպուբլիկայում ստեղծված կովկասյան գորշ ցեղը։ Բայց այս բոլորի հետ միասին պակասեց անասնաբուծության մթերատվության ամենակարևոր ցուցանիշներից մեկը՝ յուղայնությունը։ Ինչպես նշեցինք վերևում, տարիներ շարունակ սովորական եղանակներով տարվող տոհմային-սելեկցիոն աշխատանքը կաթի յուղայնության ավելացման տեսակետից նկատելի դրական արդյունք չտվեց։ Այդպիսի վիճակը չէր կարող չանհանգստացնել գիտական միտքը և առաջ չքաշել տոհմային գործում տեսականորեն հիմնավորված և առավել արդյունավետ այնպիսի եղանակներ մշակելու և կիրառելու հարցը, որպիսիք հնարավորություն տային համեմատաբար կարճ ժամանակամիջոցում նկատելիորեն բարձրացնելու երկրում բուծվող տավարի կաթի յուղայնությունը։ Պետք է նկատի ունենալ, որ այդ պրոբլեմի հաջող լուծումը ժողովրդա-տնտեսական խոշոր նշանակություն ունի։ Ուստի, պատահական չէ, որ Սովետական Միության կոմունիստական պարտիայի Կենտկոմը և կառավարությունը այդքան մեծ ուշադրություն են նվիրում այդ ուղղությամբ տարվող գիտահետազոտական աշխատանքներին։ Այդ պրոբլեմի կարևոր տնտեսական նշանակությունը բազմիցս ընդգծել է ընկեր Խրուշչովը։ ՍՄԿՊ Կենտկոմի հունվարյան (1961 թ.) պլենումում ունեցած իր ելույթում նա նշեց, որ եթե յուղի պարունակությունը կաթի մեջ ավելացվի միայն 0,1 տոկոսով, ապա երկրի մասշտաբով, լրացուցիչ կստացվի 36 հազար տոննա յուղ, այսինքն՝ այնքան, որքան կարող են տալ 300 հազար կովեր, տարեկան 2600 լիտր կաթնատվության դեպքում։

Փորձերը ցույց են տալիս, որ տոհմային գործի ճիշտ կազմակերպման դեպքում, միանգամայն հնարավոր է կաթի մեջ յուղի պարունակությունն ավելացնել ոչ միայն 0,1—0,2, այլ 1,0—1,5 տոկոսով։ Եթե ՍՍՌՄ-ում բուծվող տավարի կաթի յուղայնությունն ավելանա միայն մեկ տոկոսով, ապա նույն քանակի կերի միավորներ ծախսելու դեպքում երկրում տարեկան լրացուցիչ կարտադրվի 360 հազար տոննա կաթնայուղ, որը կկազմի ՍՍՌՄ-ում ներկայումս արտադրվող յուղի մոտ 40 տոկոսը։

Գիտությանը հայտնի է, որ տավարի կաթի յուղայնությունը կարելի է զգալի



չափով բարձրացնել ինչպես զտացեղ բուծման, ընտրության և զույգ-ընտրության ճանապարհով՝ Չ. Դարվինի կողմից հայտաբերված տեսական փոփոխության օրենքի հիման վրա, այնպես էլ միջցեղային տրամախաչման եղանակով՝ կիրառելով խառնացեղ կենդանիների ժառանգականության խախտման և արժեքավոր հատկանիշների նպատակային փոփոխման մեթոդը։ Զտացեղ բուծման եղանակով կովերի կաթի յուղայնության բարձրացման օրինակ կարող է ծառայել Լատվիական ՍՍՌ-ի Ցեսիսկիի շրջանի «Սարկանայս օկտոբրիս» կոլտնտեսության փորձը։ Այդ կոլտնտեսության ֆերմայում բուծվում էին մեծ մասամբ լատվիական գորշ ցեղի կովեր, որոնց տարեկան կաթնատվությունը հասնում էր մոտ 4 հազար լիտրի, 4,19 տոկոս յուղայնությամբ։ Բայց նախիրում հայտաբերվեցին նաև այնպիսի կովեր, որոնց կաթի յուղայնությունը կազմում էր 4,5 տոկոս։ Այդ կենդանիները և նրանց սերունդը ինտենսիվ կերպով օգտագործվեցին նախիրի որակական ցուցանիշները բարելավելու նպատակով. ստեղծվեց 260 կովից բաղկացած սելեկցիոն խումբ, որոնց կաթի յուղայնությունը 4,5 տոկոս էր։ Սելեկցիոն խմբի ներսում առանձնացվեց երեք առավել բարձր մթերատվություն և կաթի բարձր յուղայնություն ունեցող գծերից բաղկացած կորիզ, որի մեջ մտնող կովերի կաթի յուղայնությունը կազմում էր 5,2—5,5 տոկոս։ Նախիրի վերարտադրությունը տնտեսությունում ապահովվում է հիմնականում այդ սելեկցիոն կորիզի անասունների սերնդի հաշվին, այսինքն՝ խիստ ընտրության և զույգընտրության միջոցով։ Քանի որ կաթի բարձր յուղայնությունը բավականաչափ կայուն կերպով է հաղորդվում ժառանգաբար, ուստի կենդանիների ընտրությունն այդ ցուցանիշով կաթի յուղայնության բարձրացման հուսալի եղանակներից մեկն է, իհարկե, եթե ընտրությունը և զույգընտրությունը միաժամանակ զուգակցվեն ռացիոնալ կերակրման և խնամքի հետ, որոնք նպաստում են կաթնատվության և կաթի բարձր յուղայնության ժառանգական հատկանիշների զարգացմանը։ Այս տնտեսությունում տոհմային աշխատանքի արդյունավետության գլխավոր պայմաններից մեկն այն է, որ արտադրողներն ստուգվում են սերնդի մթերատվությամբ, ինչպես և կաթի յուղայնության ցուցանիշով։

Բերած օրինակը ցույց է տալիս, որ կաթի բարձր յուղայնություն ունեցող կովեր պետք է փնտրել յուրաքանչյուր կոլտնտեսությունում ու սովխոզում և նրանց ճիշտ օգտագործելու միջոցով կատարելագործել նախիրը ու բարձրացնել կաթնատվությունն ու կաթի յուղայնությունը։

Անհրաժեշտ է, սակայն, նշել, որ զտացեղ բուծման ճանապարհով կովերի կաթի յուղայնության բարձրացումն անհամեմատ ավելի երկար ժամանակ և շատ մանրակրկիտ, խորացված տոհմային աշխատանք է պահանջում։

Կաթի յուղայնության համեմատաբար ավելի արագ բարձրացման ուղին միջցեղային տրամախաչման և խառնացեղերի նպատակադիր ընտրության ուղին է։ Այս եղանակով առաջին լուրջ հետազոտությունները ձեռնարկվեցին 1952 թվականին, ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի գենետիկայի ինստիտուտի «Գորկի Լենինսկիե» փորձնական տնտեսությունում, ակադեմիկոս Տ. Դ. Լիսենկոյի անմիջական գիտական ղեկավարությամբ։ Հենվելով կենսաբանության մեջ միչուրինյան ուսմունքի ընդհանուր սկզբունքների և, մասնավորապես, բիոլոգիական տեսակի կյանքի օրենքի վրա, ակադեմիկոս Տ. Դ. Լիսենկոն առաջ քաշեց միջցեղային տրամախաչման մեթոդով կովերի կաթի յուղայնության բարձրացման հետևյալ տեսական դրույթները։

ա) Եթե խոշոր և բարձրակիթ, բայց ջրալի կաթ (3,2—3,5 տոկոս յուղայնությամբ) տվող կովերը առատ կերակրման պայմաններում տրամախաչվեն ջերսեյական ցեղի փոքր քաշ ունեցող, բայց շատ յուղալի (5,6 տոկոս) կաթ տվող ցեղի հետ, ապա սաղմնային շրջանում (առատ կերակրման պայմաններում) պտուղը կզարգանա փոքր քաշ ունեցող ցեղի ժառանգականության ուղղությամբ։

բ) Այդպիսի տրամախաչումից կծնվեն փոքր քաշ ունեցող հորթեր, բայց հետսաղմնային շրջանում, աճի ավելի բարձր տեմպի շնորհիվ, 1 տարեկան հասակում կհասնեն իրենց հասակակից խոշոր ցեղերի մատղաշների կենդանի

քաշին, օժտված բարձր կաթնայուղայնության ժառանգական հատկանիշով։

գ) Խառնացեղ հորթերը կովեր դառնալով կունենան կաթի յուղի բարձր տոկոս, մոտավորապես այնպիսին, ինչպիսին ունեն ջերսեյան ցեղի կովերը։

դ) Խառնացեղ կովերը օժտված կլինեն բարձր յուղայնությամբ կաթ տալու հատկանիշով նաև այն դեպքում, երբ ջրալի կաթ տվող ցեղերի կովերը տրամախաչվեն ոչ միայն զտարյուն, այլև խառնացեղ (3/4, 3/8, 5/8, 1/4 արյան բաժնով) ջերսեյան արտադրողների հետ։

ե) Եթե բարձր կաթնայուղայնություն ունեցող խառնացեղ կովերը նորից տրամախաչվեն ջրալի կաթ տվող խոշոր ցեղերի արտադրողների հետ, ապա նույնպես կստացվեն համեմատաբար ոչ մեծ հորթեր, այսինքն՝ պտղի ձևավորումը կընթանա մայրական ժառանգականության բարձր կաթնայուղայնության ուղղությամբ։

զ) Ջրալի կաթ տվող կենդանիների տրամախաչումը պետք է կատարվի ոչ թե զտարյուն ջերսեյան ցեղի արտադրողներով, այլ «Գորկի Լենինսկիե» տնտեսությունում ստացված, կամ նրանց ժառանգները հանդիսացող ջերսեյան խառնացեղ արտադրողներով։ Այդ դեպքում գրեթե լրիվն կպահպանվի տրամախաչվող ջրալի կաթ տվող ցեղերի կոնստիտուցիոն տիպը՝ էքստերիերը, կենդանի քաշը և մնացած բնորոշ ցեղային հատկանիշները, բացառությամբ կաթի ցածր յուղայնության. այն վերացվում է տրամախաչման միջոցով։

1953 թվականին Մոսկվայից ոչ հեռու գտնվող «Գորկի Լենինսկիե» փորձնական տնտեսության ֆերմայում այդպիսի տրամախաչումից ստացվեցին 155 խառնացեղ հորթեր։ Այստեղ ջերսեյան ցեղի արտադրողների հետ տրամախաչվել էին հիմնականում օստֆրիզյան ցեղի մեծ կենդանի քաշ (650—700 կգ), բարձր կաթնատվություն (5500—6000 լիտր), բայց ջրալի կաթ (3,3—3,5 տոկոս յուղայնությամբ) ունեցող կովեր։ Ստացված խառնացեղ հորթերի միջին քաշը ծնվելու մոմենտին կազմում էր 31 կգ, այն ժամանակ երբ զտացեղ օստֆրիզյան հորթերի քաշը հասնում էր 42—43 կգ։ Երեք տարի անց՝ 1955 թ. սկսեցին կթվել առաջին 12 խառնացեղ կովերը, որոնց միջին կաթնատվությունը կազմեց 5570 կգ, 5,02 տոկոս յուղայնությամբ, իսկ իրենց մայրերի կաթի յուղայնությունը միջին հաշվով 3,6 տոկոս էր։ Ներկայումս այդ ֆերմայում ստեղծված է բարձր կաթնայուղայնությամբ օժտված տավարի մի ամբողջ նախիր, այդ թվում ավելի քան 200 կով, որոնց կաթի յուղայնությունը միջին հաշվով 5 տոկոսից պակաս չէ, չնայած կաթնատվության բարձր մակարդակին՝ 4500—5000 կգ։ Գիտական և գործնական մեծ նշանակություն ունի այն փաստը, որ երբ յուղալի կաթ տվող այդ խառնացեղ խոշոր կովերը հետադարձ տրամախաչվում են ջրալի կաթ տվող խոշոր ցեղերի (օստֆրիզյան, կոստրոմյան) արտադրողների հետ և հղի կովերին առատ կերակրում են, նորածին հորթերի քաշն ավելի փոքր է լինում, քան երբ հորթերը ծնվում են ջրալի կաթ տվող կովերի և նույն ցեղերին պատկանող արտադրողների զուգավորումից։ Այս փաստը ցույց է տալիս, որ խառնացեղ կովերը ձեռք են բերել մի նոր ժառանգական հատկանիշ՝ մանրապտղություն, որը չունի նրանց ոչ մայրական, տվյալ դեպքում՝ օստֆրիզները և կոստրոմյանները, ոչ էլ հայրական՝ ջերսեյան ցեղը։ Ինչպես ցույց են տալիս ուսումնասիրությունները, մանրապտղությունը օգտակար է բիոլոգիական տեսակի կյանքի համար և այդ պատճառով էլ այն պետք է կայուն կերպով փոխանցվի ժառանգաբար, իսկ քանի որ տրամախաչումից ստացված կովերի մանրապտղությունը սերտորեն կապված է կաթի բարձր յուղայնության հետ, ապա բնականորեն կաթի բարձր յուղայնությունը ևս դառնում է ժառանգական հատկանիշ։

Տ. Դ. Լիսենկոն նշում է, որ եթե տրամախաչման ժամանակ վերցվեին ոչ թե յուղալի, այլ ջրալի կաթ տվող մանր ցեղի արտադրողներ, ապա խառնացեղ էգ հորթերը բիոլոգիական տեսակի կյանքի օրենքի համաձայն նույնպես ձեռք կբերեին մանրապտղության հատկանիշ, բայց առանց կաթի բարձր յուղայնության, խառնացեղ կովերի կաթը կլիներ ջրալի։ Գիտական այս դրույթի համաձայն վերը նշված եղանակով ստացված ջերսեյան խառնացեղ կովերը հետագայում՝ արտադրող ցուլերի ցեղից անկախ, այսինքն՝ անկախ նրանցից այդ



ցուլերը ջրալի կաթ տվող ցեղից են, թե յուղալի, պետք է կայուն կերպով փոխանցեն իրենց սերունդներին մանրապտղության և կաթի բարձր յուղայնության հատկանիշը։ «Գորկի Լենինսկիե» փորձնական տնտեսությունում տեսական այդ ենթադրությունը փորձով հաստատվեց։ Այս օրինաչափության հայտնաբերումն ունի շատ կարևոր նշանակություն, քանի որ ջրալի կաթ տվող ցեղերի կովերի կաթի մեջ յուղի տոկոսը հնարավոր է դառնում բարձրացնել կաթի բարձր յուղայնության ժառանգական հատկությամբ օժտված արտադրողների արյան ներարկմամբ, որի շնորհիվ պահպանվում են բարելավվող ցեղերի բոլոր հիմնական հատկանիշները, բացի կաթի ջրալիությունից։ Այդ բացատրվում է նրանով, որ բարելավող ցեղի արտադրողները ջերսեյան ցեղի արյան շատ փոքր բաժին ունեն և, հետևաբար, չեն կարող նկատելիորեն փոփոխել բարելավվող ցեղերի ցեղային առանձնահատկությունները (բացի կաթի ջրալիությունից)։ Օրինակ, փորձերով ապացուցված է, որ երբ ջերսեյան խառնացեղ կովերն ունենում են ջերսեյան ցեղի արյան ընդամենը (3/16—5/16) բաժին, 13/16—11/16 բաժին, կաթի յուղայնությունը նույնպես 5 տոկոսից պակաս չի լինում։ Օրինակ՝ «Գորկի Լենինսկիե» տնտեսությանը պատկանող «Ռուբին» անունով ջերսեյան խառնացեղ ցուլի (ջերսեյան ցեղի 3/8 արյան բաժնով) 3/16—5/16 ջերսեյան արյան բաժին ունեցող բոլոր 6 ժառանգների կաթի յուղայնությունը կազմել է 5 տոկոս և ավելի։ Տեսական և գործնական խոշոր նշանակություն ունեցող այս արդյունքները նոր ուղիներ նշեցին կաթի յուղայնության բարձրացման պրոբլեմի արագ լուծման համար։

Կովերի կաթի յուղայնության բարձրացման խնդիրը ծառացած է նաև մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների և սովխոզների առաջ։ Ինչպես նշվեց, մեզ մոտ բուծվող տավարի՝ կովկասյան գորշ ցեղի և նրանց տարբեր գեներացիայի խառնացեղերի կաթի յուղայնությունը նույնպես ցածր է՝ միջինը 3,7—3,8 տոկոս։ Կովկասյան գորշ ցեղի և նրանց խառնացեղերի կենդանի քաշը մեծ չէ՝ միջին հաշվով 400—450 կգ, կաթնատվությունը նույնպես շատ բարձր չէ, անգամ տոհմային տնտեսություններում միջին հաշվով 2500—3000 կիլոգրամից չի անցնում։

Բնականորեն մեծ հետաքրքրություն էր ներկայացնում այն հարցը, թե նույնպիսի դրական արդյունքներ կստացվե՞ն արդյոք, եթե ջերսեյան արյուն ունեցող արտադրողներով տրամախաչվեն մեզ մոտ բուծվող կովկասյան գորշ ցեղի, կամ նրանց խառնացեղ կովերը։ Այդ հարցի պատասխանը տալու նպատակով Հայկական ՍՍՌ ԳԱ ֆիզիոլոգիայի ինստիտուտի գյուղատնտեսական կենդանիների սեկտորը Հայկական ՍՍՌ գյուղատնտեսության մինիստրության անմիջական օգնությամբ 1958 թվականի վերջերից ձեռնամուխ եղավ գիտական ուսումնասիրությունների։ Այդ նպատակով «Գորկի Լենինսկիե» էքսպերիմենտալ տնտեսությունից ներմուծվեցին ջերսեյան մեկ զտացեղ 2 խառնացեղ արտադրողներ և 3 կիսարյուն խառնացեղ կովեր։ Փորձերը կազմակերպվեցին Հայկական ՍՍՌ երկրագործության ինստիտուտի Լենինականի սելեկցիոն կայանի ֆերմայում, որտեղ հիմնականում բուծվում են կովկասյան գորշ ցեղը և նրանց խառնացեղերը։ Պատահական չէ, որ այդ ֆերման դարձավ փորձնական աշխատանքների բազա։ Բանն այն է, որ այստեղ կան թե՛ բարձր, թե՛ միջին և թե՛ ցածր կենդանի քաշ, կաթնատվություն և յուղայնություն ունեցող կովեր. այդ հնարավորություն է ընձեռում փորձեր կազմակերպել տարբեր վարիանտներով և ստանալ հավաստի տվյալներ։ Միջցեղային տրամախաչման հետ մեկտեղ գիտական հետազոտություններ են կատարվում նաև ելակետային ցեղերի և նրանց խառնածինների կաթնագեղձերի ֆիզիոլոգիական առանձնահատկությունների ու կաթի բաղադրության ուսումնասիրության ուղղությամբ։ Տրամախաչման համար օգտագործվել են ինչպես զտարյուն, այնպես էլ խառնացեղ (3/4 և 5/8 ջերսեյան արյան բաժնով) ջերսեյան արտադրողներ։ Տրամախաչվել են 400-ից մինչև 600 կգ քաշ ունեցող, 1900-ից մինչև 4000 կգ կաթնատվությամբ կովեր, որոնց կաթի յուղայնությունը տատանվել է 3,07-ից 4,5 տոկոսի սահմաններում։ Ներկայումս ջերսեյան խառնացեղ ցուլերով զուգավորված կովերի թիվը ռեսպուբլիկայի տարբեր շրջանների կոլտնտեսություններում

ու սովխոզներում հասնում է մոտ 3000-ի, ստացված է 500-ից ավելի հորթ, այդ թվում միայն Լենինականի սելեկցիոն կայանի ֆերմայում՝ մոտ 200: Անցյալ տարվա վերջերից և այս տարվա առաջին կիսամյակում այդ ֆերմայում արդեն ծնել և կթվում են 30 ջերսեյան խառնացեղ կովեր: Ինչի՞ մասին են խոսում ստացված տվյալները, որքանո՞վ են դրանք հաստատում այն ենթադրությունը, որ ջերսեյան արյուն ունեցող արտադրողների օգտագործումը տրամախաչման մեջ պետք է բարձրացնի նաև Հայաստանում բուծվող տավարի ցեղերի կովերի կաթի յուղայնությունը:

Ստացված փաստական տվյալներն ամենից առաջ հաստատում են, որ ջերսեյան խառնացեղերը ձեռք են բերել մանրապտղության հատկանիշ, որի հետ սերտորեն կապված է կաթի բարձր յուղայնությունը: Մայրական հոտի (կովկասյան գորշ ցեղի) և խառնացեղ կովերի նորածին հորթերի քաշի համեմատությունը ցույց է տալիս, որ ջերսեյան խառնացեղ հորթերը ծնվում են մոտ 20 տոկոսով ավելի փոքր քաշով, սակայն հետսաղմնային շրջանում նրանք ավելի արագ են աճում, որի շնորհիվ մեկ տարեկան հասակում, նրանց կենդանի քաշը հասնում է ջերսեյան արյուն չունեցող իրենց հասակակից մատղաշների քաշին: Այսպես՝ ծնվելու պահին խառնացեղ հորթերի միջին քաշը 28,8 կգ էր, կովկասյան գորշ ցեղինը՝ 36,3 կգ, իսկ 12 ամսական հասակում համապատասխանորեն՝ 208 կգ և 209 կգ. ինչպես տեսնում ենք, մեկ տարեկան հասակում նրանց կենդանի քաշերը հավասարվում են:

Միաժամանակ հաստատվեց, որ ջերսեյան խառնացեղ կովերը տալիս են ավելի բարձր յուղայնությամբ կաթ, քան նրանց մայրերը և կիսաքույրերը: Ջերսեյան խառնացեղ կովերի կաթի յուղայնությունը դեռ առաջին լակտացիայում կազմում է մոտ 5 տոկոս այն ժամանակ, երբ նրանց մայրերինը կազմում է 3,7 տոկոս: Ահա մի քանի օրինակ: «Լարորանոկա» խառնացեղ կովի կաթի տարեկան միջին յուղայնությունը լակտացիայի հենց առաջին տարում կազմեց, 5,1, իսկ կովկասյան գորշ ցեղին պատկանող նրա մորը՝ «Լյուբովնիցայինը» լակտացիայի 5-րդ տարում կազմել է 3,91 տոկոս: «Ռյումկա» խառնացեղ կովի կաթի տարեկան միջին յուղայնությունը լակտացիայի առաջին տարում կազմեց 5, իսկ նրա մորը՝ «Ռեչկայինը», լակտացիայի 7-րդ տարում՝ 4,09 տոկոս: Ամենաջրալի կաթ տվող ջերսեյան խառնացեղ «Բուկաշկա» կովի կաթի յուղայնությունը լակտացիայի երկրորդ տարում կազմեց 4,3, իսկ նրա մորը՝ «Բայադերկայինը», լակտացիայի 5-րդ տարում՝ 3,63 տոկոս, կամ մոտ 0,7 տոկոսով պակաս: «Բուկաշկան» աչքի է ընկնում նաև բարձր կաթնատվությամբ. երկրորդ լակտացիայում նրա տարեկան կաթնատվությունը հասավ 3804 լիտրի, կամ 500 լիտրով ավելի, քան նրա մոր կաթնատվությունը 5-րդ լակտացիայում:

Տեղական և ջերսեյան խառնացեղ կովերի կաթի մեջ յուղից բացի մենք հետազոտեցինք նաև սպիտակուցների և ընդհանուր չոր մնացորդի պարունակությունը, պարզելու համար, թե ջերսեյան խառնացեղ կովերի մոտ կաթնայուղի նկատելի բարձրացման հետևանքով չի՞ պակասում արդյոք մյուս բաղադրիչ մասերի, հատկապես սպիտակուցների քանակը, որոնք նույնպես արժեքավոր սննդանյութ են: Ուսումնասիրությունները ցույց տվին, որ խառնացեղերի կաթի մեջ սպիտակուցների և ընդհանուր չոր նյութերի տոկոսը ոչ միայն չի պակասում, այլ նույնիսկ որոշ չափով բարձրանում է: Ընդհանուր չոր մնացորդն ավելանում է 1,97, այդ թվում սպիտակուցները՝ 0,52 տոկոսով: Համառոտակի սրանք են մեր հետազոտությունների առաջին արդյունքները:

Դրանք ցույց են տալիս, որ ջերսեյան զտացեղ և խառնացեղ (3/4, 5/8 ջերսեյան արյան բաժնով) արտադրողների հետ կովկասյան գորշ ցեղի կովերին և նրանց զանազան սերնդի խառնացեղերին տրամախաչելիս կաթի մեջ յուղի տոկոսը մոտավորապես նույնքան է ավելանում, որքան «Գորկի Լենինսկիե» փորձնական տնտեսությունում: Կարևոր է նշել, որ ջերսեյան ցեղի արյան այդպիսի ոչ մեծ բաժին ունեցող արտադրողներին տրամախաչելիս գրեթե լրիվ պահպանվում են կովկասյան գորշ ցեղի կոնստիտուցիոն տիպը, մարմնակազմը, կենդանի քաշը, կաթնատվության մակարդակը (հաշվի առնելով լակտացիայի տարին) և տեղական պայմաններին լավ հարմարվածությունը: Միա-



ժամանակ կովկասյան գորշ ցեղը ձեռք է բերում մի նոր, շատ արժեքավոր ժառանգական հատկանիշ՝ կաթի բարձր յուղայնություն: Զտարյուն ջերսեյան արտադրողներով տրամախաչելու դեպքում կովկասյան գորշ ցեղի մարմնակազմության առանձնահատկությունները նկատելիորեն փոխվում են, ուստի զտարյուն ջերսեյան արտադրողներով մասսայաբար տրամախաչելը մեր պայմաններում նպատակահարմար չէ: Մեզ մոտ բուծվող կովկասյան գորշ ցեղի տավարի կաթի յուղայնությունը բարձրացնելու և նրա մյուս արժեքավոր ցեղային առանձնահատկությունները պահպանելու նպատակով մասսայական տրամախաչման մեջ պետք է օգտագործել ջերսեյան արյան ոչ մեծ բաժին (5/8, 3/8, 5/16) ունեցող արտադրողներ, որոնք ստացվել են «Գորկի Լենինսկիե» փորձնական տնտեսությունում կամ նրանց ժառանգներն են:

Հասկանալի է, որ ջերսեյան խառնացեղ արտադրողները բոլորն էլ օժտված չեն լինում կաթի բարձր յուղայնության հատկանիշը ժառանգներին հաղորդելու միանման ունակությամբ, ուստի պետք է որքան հնարավոր է արագ ստուգել այդպիսի արտադրողների սերնդի որակը և տոհմային օգտագործման համար ընտրել լավագույնները:

Ինչպես նշվեց, այժմ մեր հիմնական փորձնական տնտեսությունում՝ Լենինականի սելեկցիոն կայանում, կթվում են ընդամենը 30 ջերսեյան խառնացեղ կովեր: Մեզ կարող են ասել, քիչ չէ՞ արդյոք այդպիսի գլխաքանակը որոշակի եզրակացությունների հանգելու համար: Նեղ թվաբանական իմաստով գուցե և քիչ է, բայց մենք հենվում ենք այն ակնառու փաստի վրա, որ այդ 30 կովերը բոլորն էլ, առանց բացառության, իրենց մայրերից և կիսաքույրերից տարբերվում են կաթի բարձր յուղայնությամբ: Հետևաբար բոլոր հիմքերը կան պնդելու, որ ստացված տվյալները պատահականության արդյունք չեն, այլ դրսևորում են որոշակի օրինաչափություն: Նույնպիսի համոզմունք հայտնեցինք, երբ կթվում էին ընդամենը 9 խառնածիններ: Այժմ եռապատկվել է կթվող խառնացեղ կովերի թիվը, հետևաբար առավել շատ հիմքեր կան պնդելու, որ ստացված տվյալները միանգամայն հավաստի են և օրինաչափ: Մենք հեռու ենք, իհարկե, ստացված առաջին արդյունքները գերագնահատելու մտքից: Լենինականի սելեկցիոն կայանի ֆերմայում ստացվող ջերսեյան խառնացեղերի կերակրման խնամքի պայմանները դեռ բավարար համարել չի կարելի: Ոչ լիարժեք կերակրումը բացասաբար է անդրադառնում ինչպես մատղաշների աճի և զարգացման, այնպես էլ կովերի մթերատվության մակարդակի վրա: Սելեկցիոն կայանի դիրեկցիան և Հայկական ՍՍՌ գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների մինիստրությունը պետք է գործնական միջոցներ ձեռք առնեն այդ տոհմային ֆերման կերի կայուն բազայով ապահովելու համար, որը հնարավորություն կտա նկատելիորեն բարձրացնելու խառնացեղերի մթերատվության ցուցանիշները:

Հայաստանում բուծվող տավարի կաթի յուղայնությունը բարձրացնելու ուղղությամբ տարվող աշխատանքներին լուրջ ուշադրություն են նվիրում ինչպես Հայկական ՍՍՌ գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների մինիստրությունը, այնպես էլ ռեսպուբլիկայի ղեկավար օրգանները: Այս տարվա հունիսի սկզբներին Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի նախագահությունը Հայաստանում բուծվող տավարի կաթի յուղայնության բարձրացման հարցը հատուկ քննության առարկա դարձրեց և ընդարձակ որոշում ընդունեց այդ ուղղությամբ տարվող աշխատանքներն ամենուրեք ընդլայնելու մասին:

Կենտրոնական կոմիտեի որոշմամբ նախատեսվում է բացի Լենինականի սելեկցիոն կայանի տոհմաբուծարանից ռեսպուբլիկայում կազմակերպել երկրորդ տոհմաբուծարանը՝ ջերսեյան արյամբ տոհմային ցուլեր բուծելու նպատակով: Ջերսեյան խառնացեղ արտադրողների քանակը այս տարվա վերջին պետք է հասցվի ոչ պակաս 18-ի, իսկ 1965 թվականին՝ 30-ի: Ունեցած մատղաշների գլխաքանակը հնարավորություն է տալիս, նրանց ճիշտ աճեցնելու դեպքում, գերակատարել այդ առաջադրանքը: Լենինականի տոհմաբուծական ֆերմայում արդեն աճեցվել և այս տարի արհեստական սերմնավորման կայան-

ներին, սովխոզներին և կոլտնտեսություններին են վաճառվել 18 ջերսեյան խառնացեղ արտադրողներ, որոնք այժմ օգտագործվում են Ստեփանավանի, Ախուրյանի, Սիսիանի, Մարտունու և Արտաշատի (Մխչյանի) արհեստական սերմնավորման կայաններում և առանձին կոլտնտեսություններում: Նույն տոհմաբուծարանում առանձնացվել և հատուկ խնամքի տակ են դրվել 12 մեկ տարեկան տոհմային ցուլիկներ: Բացի այդ, վերջերս, «Գորկի Լենինսկիե» փորձնական տնտեսությունից ներմուծվեցին ջերսեյան խառնացեղ, շատ բարձր տոհմային արժեք ունեցող 3 ցուլիկներ:

Միաժամանակ աշխատանք է տարվում տոհմային ցուլիկներ ընտրելու ուղղությամբ՝ ավելի փոքրահասակ մատղաշներից: Հաշվարկումները ցույց են տալիս, որ եթե տոհմային ցուլերն օգտագործվեն ռացիոնալ կերպով և նորմալ ծանրաբեռնվածությամբ, ապա 1963—1965 թթ. ընթացքում հնարավոր կլինի սերմնավորել և բեղմնավորել 25—30 հազարից ոչ պակաս կովեր, իսկ հետագա տարիներին տրամախաչման տեմպերն էլ ավելի բարձրացնել: Կենտրոնական կոմիտեն հանձնարարեց գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների մինիստրությանը, կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչություններին և պարտիական կոմիտեներին լայնորեն պրոպագանդել անասնաբուծության մթերատվության բարձրացման այս առաջավոր մեթոդը և գործնական միջոցներ ձեռնարկել տոհմային արտադրողները ռացիոնալ և լրիվ ծանրաբեռնվածությամբ օգտագործելու համար:

Կովերի կաթի յուղայնության բարձրացումը առանձնապես մեծ նշանակություն ունի մեր ռեսպուբլիկայի պայմաններում՝ սակավահողության և կերային ռեսուրսների սահմանափակության պատճառով: Եթե մեզ մոտ բուծվող տավարի կաթի յուղայնությունը տոհմային աշխատանքի այս առաջավոր եղանակի կիրառման շնորհիվ հաջողվի ավելացնել թեկուզ 1 տոկոսով, այսինքն՝ 3,7—3,8 տոկոսի փոխարեն հասցնել 4,7—4,8 տոկոսի, ապա առանց լրացուցիչ կեր ծախսելու հնարավոր կլինի յուղի արտադրությունը ռեսպուբլիկայում ավելացնել 25—30 տոկոսով:

Այս շատ կարևոր և շնորհակալ աշխատանքին պետք է ակտիվ ներգրավվեն մեր ռեսպուբլիկայի համապատասխան գիտահետազոտական հիմնարկները, արհեստական սերմնավորման կայանները, անասնաբույժ մասնագետները և կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարները: Պարտիական կազմակերպությունները պետք է ամեն կերպ օժանդակեն գիտության այս կարևոր նվաճման լայն պրոպագանդմանն ու ներդրմանը, սահմանելով ամենօրյա հսկողություն Հայաստանի կոմպարտիայի Կենտրոնական կոմիտեի նախագահության որոշման կատարումն ապահովելու համար:



# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՍՊԱՌՄԱՆ ՖՈՆԴԵՐԻ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Գ. ՂԱՐԻԲՅԱՆ

Կենսամիջոցների բաշխման այս կամ այն եղանակը պայմանավորված է տիրապետող արտադրական հարաբերությունների բնույթով, աշխատուժի և արտադրության միջոցների բաշխման ու միակցման բնույթով: Սոցիալիստական հասարակարգում անձնական սպառման ընդհանուր ֆոնդը տրոհվում է ըստ աշխատանքի վարձատրության և հասարակական սպառման ֆոնդերի: Հասարակական սպառման ֆոնդերի գոյությունը՝ սպառման ընդհանուր ֆոնդի մի մասի, որպես բնակչության մի շարք պահանջմունքների բավարարման ինքնուրույն աղբյուր, բխում է արտադրության միջոցների համաժողովրդական սեփականությունից, սոցիալիստական արտադրական հարաբերություններից:

Հասարակական սպառման ֆոնդերի գոյացման աղբյուրը ազգային եկամուտն է: Ի տարբերություն ըստ աշխատանքի վարձատրության ֆոնդի, հասարակական սպառման ֆոնդերը դրսևորվում են ազգային եկամտի վերաբաշխման միջոցով, տարբեր ձևերով, որոնցից են՝ սոցիալ-կուլտուրական միջոցառումների վրա կատարվող ծախսերը, ձեռնարկության ֆոնդի մի մասը, աշխատավորության արձակուրդային վճարումները, բնակարանային ֆոնդի վրա կատարվող հատկացումները և այլն:

Հասարակական սպառման ֆոնդերն ունեն մի շարք առանձնահատկություններ, որոնցով տարբերվում են ըստ աշխատանքի վարձատրության սպառման ֆոնդից:

Ամենից առաջ, ինչպես նշեցինք՝ հասարակական սպառման ֆոնդերը ձևավորվում են ազգային եկամտի վերաբաշխման հետևանքով և հիմնականում օգտագործվում են կենտրոնացված կարգով՝ լուծելու համաժողովրդական նշանակություն ունեցող մի շարք խնդիրներ: Օրինակ, հայտնի է, որ նոր, կոմունիստական հասարակարգ կառուցելու առաջնահերթ խնդիրներից մեկը Վ. Ի. Լենինը համարում էր երկրի կուլտուրական ռևոլյուցիայի իրականացումը (երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոոպերացման հետ միաժամանակ), որի նյութական հիմքը հանդիսանալու էին հասարակական սպառման ֆոնդերը: Այդ կարևոր նշանակություն ունեցող խնդրի հաջող իրականացումը և ուսուցման, կուլտուրայի, գիտության ու տեխնիկայի բնագավառում մեր երկրի անառարկելի նվաճումները հասարակական սպառման ֆոնդերի օգտագործման մեծ արդյունավետության փայլուն վկայությունն են:

Երկրորդ. եթե ըստ աշխատանքի վարձատրության ֆոնդը բաշխվում է միայն աշխատողների միջև, ապա հասարակական սպառման ֆոնդերը բաշխ-

վում են հասարակության բոլոր անդամների միջև։ Ընդ որում, հասարակական սպառման ֆոնդերի այն մասը, որը բաշխվում է նյութական արտադրության աշխատողների միջև, գործում է որպես անհրաժեշտ արդյունք, քանի որ դրանց հաշվին իրականացվում է աշխատուժի վերարտադրության և անհատների բազմակողմանի ու ազատ զարգացման համար պահանջվող ծախսերի մի մասը։ Եթե գոյություն չունենային հասարակական սպառման ֆոնդերը, ապա այդպիսի ծախսերը, վերջին հաշվով, պետք է կատարվեին աշխատողների աշխատավարձի կամ այլ եկամուտների, հետևաբար նրանց անհրաժեշտ արդյունքի հաշվին, ինչպես այդ տեղի ունի բուրժուական հասարակարգում։ Հետևաբար, տրամաբանական և համոզիչ չէ այն հեղինակների տեսակետը, ովքեր հասարակական սպառման ֆոնդերի առաջացման միակ աղբյուրը համարում են հավելյալ արդյունքը[1]։

Այն հանգամանքը, որ հասարակական սպառման ֆոնդերը գոյանում են հասարակության զուտ եկամտից և նյութական արտադրության մեջ աշխատողների միջև բաշխվում կենտրոնացված կարգով, երբեք չի ժխտում այն փաստը, որ դրանց մի մասը ֆունկցիոնալ տեսակետից գործում է որպես անհրաժեշտ արդյունք։ Սոցիալիզմը մտցրեց հենց այն առանձնահատկությունը, որ անհրաժեշտ արդյունքի մի մասը բաշխվում է կենտրոնացված կարգով՝ հասարակական սպառման ֆոնդերի ձևով։

Հասարակական սպառման ֆոնդերի երրորդ առանձնահատկությունը կայանում է նրանց բաշխման ձևերի ու բնույթի մեջ։ Եթե ըստ աշխատանքի վարձատրվող ֆոնդը կազմում է աշխատավորների անձնական նյութական շահագրգռվածության հիմքը և առաջ է բերում նրանց ռեալ եկամուտների, կենսամակարդակների դիֆերենցում, ապա հասարակական սպառման ֆոնդերը հանդիսանում են աշխատավորների հասարակական նյութական շահագրգռվածության հիմքը՝ մեղմացնելով աշխատավարձի դիֆերենցումից գոյացած տարբերությունները։



Լիկվիդացնելով արտադրության միջոցների նկատմամբ դասակարգերի ունեցած գույքային անհավասարությունն ու անտագոնիզմը, սոցիալիզմը թողնում է մարդկանց անհավասարությունը՝ անձնական սպառման առարկաների բաշխման ու սպառման բնագավառում։ Այդ առաջ է բերում սոցիալիստական հասարակության առանձին անդամների ու խավերի կենսամակարդակների տարբերություն, որը բխում է նախ՝ նյութական ու հոգևոր բարիքների բաշխման սոցիալիստական հարաբերություններից և ապա՝ մասնավորապես, ըստ աշխատանքի քանակի ու որակի բաշխման սոցիալիստական սկզբունքից։ ՍՄԿՊ XX համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում տեղի է ունենում աշխատանքի վարձատրության միջև առաջացած մեծ տարբերությունների համահարթում՝ ցածր վարձատրվողների աշխատավարձը բարձրացնելու ու կատարելագործելու միջոցով։

ՍՄԿՊ ծրագիրը նշում է մի կողմից՝ աշխատավարձի դիֆերենցացման և այդ հիմքի վրա անձնական, նյութական շահագրգռվածության պահպանման

[1] Տե՛ս *Политическая экономия*, IV переработанное и дополненное издание, М., 1962, էջ 418։



ու զարգացման անհրաժեշտությունը, մյուս կողմից՝ ընդգծվում է, որ աստիճանաբար «...պետք է կրճատվեն բարձր և առավել ցածր եկամուտների տարբերությունները։ Չորակավորված բանվորների ու ծառայողների ավելի ու ավելի մեծ մասսաներ կորակավորվեն, իսկ որակավորման ու աշխատանքի արտադրողականության մակարդակի միջև եղած տարբերության նվազեցումը կուղեկցվի վարձատրության մակարդակի տարբերությունների հետևողական կրճատմամբ» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 513)։

Աշխատավորների կենսամակարդակների տարբերությունների վրա, բացի աշխատանքի վարձատրման տարբերություններից, ներգործում են նաև նրանց ընտանիքների կազմը, և, հատկապես, ժողովրդական տնտեսության մեջ աշխատունակ անդամների զբաղվածության աստիճանը։ Սոցիալիստական արտադրության պլանային զարգացումն ու սիստեմատիկ ընդլայնումը հնարավորություն են տալիս բարձրացնելու ընտանիքի աշխատունակ անդամների զբաղվածության աստիճանը, որը և հանդիսանում է աշխատավորների կենսամակարդակների տարբերությունների համահարթման լրացուցիչ ուղիներից մեկը։

Աշխատանքի վարձատրման տարբերություններից ու աշխատավորների ընտանիքների կազմից բացի ընտանիքի շնչային եկամտի դիֆերենցման վրա ներգործում է նաև հասարակական սպառման ֆոնդերի բաշխումը։ Չնայած դրանք աշխատավորների միջև բաշխվում են շատ թե քիչ հավասարաչափ կերպով, սակայն այստեղ ևս տեղ է գտնում դիֆերենցումը։ Ընդ որում այն որոշակի գծերով տարբերվում է ըստ աշխատանքի վարձատրության ֆոնդի բաշխման դիֆերենցումից։

Հասարակական սպառման ֆոնդերի դիֆերենցված բաշխման առանձնահատկությունները բխում են, նախ՝ սոցիալ-տնտեսական բովանդակությունից և երկրորդ՝ դրանց բաշխման ձևերից։ Այսպես, դրամական միջոցները բաշխվում են ինչպես ըստ աշխատանքի, այնպես էլ ըստ տվյալ ընտանիքի կազմի։ Օրինակ, ծերության համար աշխատանքային կենսաթոշակը որոշվում է ելնելով արտադրողի աշխատավարձից և արտադրական ստաժից։ Գրեթե նման սկզբունքով են առաջնորդվում հղիության ու ծննդաբերության համար տրվող և դրամական այլ վճարումներ կատարելիս։ Հետևաբար այդ ֆոնդերի այն մասը, որը հանդես է գալիս դրամական վճարումների ձևով, սոցիալիստական հասարակության անդամների միջև չի կարող բաշխվել հավասարապես, քանի որ այն հիմնականում պայմանավորված է աշխատավարձի՝ գոյություն ունեցող դիֆերենցումով։ Դրա հետևանքով բարձր աշխատավարձ ստացող աշխատավորները շարունակում են հասարակական սպառման ֆոնդերից ստանալ համեմատաբար բարձր կենսաթոշակներ, նպաստներ և այլն։

Սակայն հասարակական սպառման ֆոնդերից դրամական միջոցների դիֆերենցումը չպետք է նույնացնել աշխատավարձի դիֆերենցման հետ։ Ամենից առաջ աշխատավարձի դիֆերենցումն անմիջապես կախված է աշխատողի կատարած աշխատանքի քանակից ու որակից, որի պատճառով այն հաճախ փոփոխվում է։ Մինչդեռ հասարակական սպառման ֆոնդերից կատարվող դրամական վճարումների դիֆերենցումը կախված է անցյալում ծախսված աշխատանքի քանակից ու որակից, որի հետևանքով այն անհամեմատ կայուն բնույթ ունի։ Երկրորդ. աշխատավարձի մինիմում և մաքսի-

մում չափերի տարբերությունները ավելի մեծ են, քան հասարակական սպառման ֆոնդերից տվյալ դրամական վճարումների մինիմում և մաքսիմում չափերի տարբերությունները. օրինակ, ծերության կենսաթոշակը չի կարող 30 ռուբլուց ցածր լինել անգամ այն դեպքում, եթե աշխատողի փաստացի ամսական աշխատավարձը դրանից էլ ցածր էր և ընդհակառակն, կենսաթոշակի մաքսիմում չափը չի կարող 120 ռուբլուց բարձր լինել, չնայած արտադրողի աշխատավարձը շատ ավելի բարձր է եղել։ Երրորդ, եթե աշխատավարձի դիֆերենցումը կախված է միայն ծախսվող աշխատանքի քանակից ու որակից, իսկ ընտանիքի կազմը ոչ մի դեր չի խաղում, ապա հասարակական սպառման ֆոնդերից դրամական վճարումների դիֆերենցման վրա նկատելի չափով ներգործում է նաև բնտանիքի կազմը։ Ծերության աշխատանքային կենսաթոշակին ավելացվում է, այսպես կոչված՝ բնտանեկան վերադիր այն դեպքում, երբ թոշակառուն իր խնամակալության տակ ունի ընտանիքի անաշխատունակ անդամներ (մեկ անաշխատունակի առկայության դեպքում կենսաթոշակի 10 տոկոսը, իսկ երկու և ավելի անաշխատունակների առկայության դեպքում՝ 15 տոկոսը)։

Ընտանիքի կազմի ներգործությունը հասարակական սպառման ֆոնդերից դրամական վճարումների դիֆերենցման վրա հատկապես զգալի է արտահայտվում կերակրողին կորցնելու համար կենսաթոշակներ սահմանելիս։ Այդ տեսակի կենսաթոշակի չափը կախված է ինչպես աշխատողի միջին ամսական աշխատավարձից, այնպես էլ ընտանիքի խնամառուների թվից։ Ընտանիքի կազմի ներգործությունն ավելի ակնբախ է դրսևորվում նաև բազմազավակ ընտանիքներին նպաստներ սահմանելիս։ Որքան շատ է երեխաների թիվը, այնքան մեծ է տվյալ ընտանիքի ստացած նպաստի չափը։ Հետևաբար, չնայած այն բանին, որ հասարակական սպառման ֆոնդերից դրամական վճարումների դիֆերենցման վրա հիմնականում ներգործում է աշխատավարձի դիֆերենցումը, բայց այն չի սահմանափակվում դրանով։ Այստեղ որոշ չափով ներգործում է նաև աշխատավորական ընտանիքների կազմը։

Ահա ՍՍՌՄ Աշխատանքի գիտահետազոտական ինստիտուտի 1956—1957 թթ. կատարած բանվորների ու ծառայողների լրացուցիչ եկամուտների հատուկ ուսումնասիրության արդյունքների հիման վրա պրոֆ. Մասլովի կազմած աղյուսակը[1], որը ցույց է տալիս պետության դրամական օգնության ձևերը բանվորական ընտանիքներին։

| Ընտանիքի մեկ շնչին ընկնող միջին ամսական դրամական եկամուտը | Ընտանիքի աշխատող անդամների տարեկան աշխատավարձը (ռուբ.) | Ընտանիքի մեկ տարվա դրամական բոլոր եկամուտները (բացի աշխատավարձից, ռուբ.) |
|---|---|---|
| Մինչև 20 . . . | 773 | 86 |
| 20 30 . . | 1028 | 135 |
| 30 - 40 . . | 1280 | 132 |
| 40 - 50 . . | 1579 | 121 |
| 50 70 . . | 1871 | 148 |
| 70 և ավելին | 2267 | 175 |
| Միջինը | 1406 | 132 |

1 Տե՛ս Методологические вопросы изучения уровня жизни трудящихся, М., 1959, էջ 133։



Բերած աղյուսակից հետևում է, որ ընտանիքի մեկ շնչին ընկնող եկամտի բարձրացման հետ միաժամանակ աճում են ինչպես աշխատավարձը, այնպես էլ հասարակական սպառման ֆոնդերից ստացվող դրամական եկամուտները։ Սակայն այդ բոլորովին չի բացառում ընտանիքի կազմի ներգործությունը հասարակական սպառման ֆոնդերից վճարվող դրամական բաշխման վրա։ Աղյուսակից հետևում է նաև այն, որ եթե մինչև 20 ռ. շնչային եկամուտ ունեցող ընտանիքի տարեկան աշխատավարձը կազմում է 773 ռ. իսկ 70 ռ. և ավելի շնչային եկամուտ ունեցող ընտանիքինը՝ 2267 ռ., այսինքն՝ մոտ 3 անգամ (1:2,95) ավելի, ապա հասարակական սպառման ֆոնդերից ստացված դրամական եկամուտները համապատասխանաբար կազմում են 86 և 175ռ., որոնց տարբերությունը 2 անգամից մի փոքր է ավելի (1:2,18)։ Աշխատավարձի համեմատությամբ դրամական վճարումների դիֆերենցման գործակիցը իջնում է, որովհետև բազմազավակ ընտանիքները, որոնք ունեն համեմատաբար ցածր շնչային եկամուտ, իրենց աշխատավարձի չափի համեմատ ավելի շատ դրամական միջոցներ են ստանում հասարակությունից, քան բարձր շնչային եկամուտ ունեցող ընտանիքները։

Բոլորովին այլ կերպ է դիֆերենցվում հասարակական սպառման ֆոնդերի այն մասը, որն աշխատավորների միջև բաշխվում է ծառայությունների ձևով։ Եթե դրամական միջոցների բաշխման դեպքում որոշիչ դերը խաղում էր ըստ աշխատանքի քանակի ու որակի բաշխման օրենքը, իսկ ընտանիքի կազմը երկրորդ պլանի վրա էր մղված, ապա ծառայությունների բաշխման մեջ հիմնական դերը խաղում է ընտանիքի կազմը, իսկ ըստ աշխատանքի քանակի ու որակի բաշխման օրենքը միայն երկրորդական դեր է կատարում։ Որքան մեծ ու բազմանդամ է ընտանիքը, այնքան շատ ծառայություններ է նա ստանում հասարակական սպառման ֆոնդերից (մանկական հիմնարկներից, դպրոցներից, բարձրագույն ուսումնական հաստատություններից, հիվանդանոցներից, պոլիկլինիկաներից, սանատորիաներից, հանգստյան տներից և այլն), որը կարելի է տեսնել ստորև բերվող աղյուսակից։

| Ընտանիքի մեկ շնչին ընկնող միջին ամսական եկամուտը | Պիոներական ճամբար | Մանկապարտեզ և մանկամսուր | Ուսուցում դպրոցներում | Ուսուցում տեխնիկումներում | Ուսուցում ԲՈՒՀ-երում |
|---|---|---|---|---|---|
| Մինչև 20 . . . | 7,2 | 55,8 | 118,9 | 29,0 | 61,6 |
| 20 30 . . . | 4.3 | 39,3 | 89,9 | 29,1 | 47,0 |
| 30 - 40 . . . | 3.9 | 28,2 | 68,2 | 18,1 | 35,4 |
| 40 50 . . . | 2,7 | 17,5 | 45,2 | 11,4 | 24,3 |
| 50 - 70 . . | 1,5 | 29,2 | 32,4 | 7,8 | 16,6 |
| 70 և ավելին . | 0,3 | — | 14,3 | 4,8 | 10,2 |
| Միջինը . . . | 3,4 | 29,3 | 63,2 | 16,0 | 33,2 |

Քանի որ ընտանիքի կազմի և մեկ շնչին ընկնող եկամտի միջև կա որոշակի կախվածություն, ուստի նույնպիսի փոխադարձ կապ է առաջանում ընտանիքի շնչային եկամտի չափի ու հասարակական սպառման ֆոնդերից ստացվող ծառայությունների չափի միջև։ Քանի որ ՀՍՍՌ-ում հասարակական

սպառման ֆոնդերից աշխատավորների ստացած լրացուցիչ եկամուտների հատուկ ուսումնասիրություն դեռևս չի կատարվել, նորից հարկադրված ենք դիմելու ՍՍՌՄ Աշխատանքի գիտահետազոտական ինստիտուտի ուսումնասիրությունների արդյունքներին։ Աղյուսակից պարզվում է, թե երեխաների դաստիարակման և ուսուցման գծով պետությունից ծառայությունների կամ դոտացիայի ձևով մեկ ընտանիքը որքան եկամուտ է ստացել (ռուբլիներով)։

Հետևությունն ակնհայտ է։ Հասարակական սպառման ֆոնդերից ծառայությունների բաշխման գործում վճռող դեր է խաղում ընտանիքի կազմը։ Բազմազավակ ընտանիքները, որոնք ունեն ցածր շնչային եկամուտ, հասարակությունից ավելի շատ ծառայություններ են ստանում, քան բարձր շնչային եկամուտ ունեցող ընտանիքները։ Պետք է խոստովանել, որ մեր ռեսպուբլիկայում, հատկապես գյուղական վայրերում, խիստ ետ է մնում մանկական հիմնարկների՝ մանկամսուրների, մանկապարտեզների միջոցով աշխատավորությանը հասարակական սպառման ֆոնդերից ծառայություններ ապահովելու գործը։ Այդ թերության վերացումը ոչ միայն կավելացնի աշխատավորների ռեալ եկամուտները, այլև զգալի չափով լրացուցիչ աշխատուժ կպատի (հատկապես կանանց) ժողովրդական տնտեսության զարգացման համար։

Հասարակական սպառման ֆոնդերից այդ նույն սկզբունքով է բաշխվում նաև բնակարանային ֆոնդը։ Սոցիալիստական հասարակարգում բնակարանային ֆոնդի բաշխումը հիմնականում կախված է ընտանիքի կազմից։ Այդ սկզբունքը, հատկապես վերջին տարիներին, եղել է մեր պարտիայի ու կառավարության ուշադրության կենտրոնում։ Անշուշտ, բնակարանային ֆոնդը բաշխելիս չենք կարող հաշվի չառնել նաև հասարակությանը աշխատավորի տված աշխատանքի որակը և նման այլ հանգամանքներ։ Բայց մեր զարգացման ներկա էտապում որոշիչը միշտ էլ ընտանիքի կազմն է։ Հետևաբար, սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում աստիճանաբար պետք է համահարթվեն աշխատավորների բնակարանով ապահովվածության միջև գոյություն ունեցող տարբերությունները։

Հասարակության անդամների միջև բնակարանային ֆոնդի անվճար բաշխումը սոցիալիզմի անառարկելի նվաճումներից ու առավելություններից մեկն է։ Սակայն պետք է խոստովանել, որ բնակարանային ֆոնդի բաշխման անվճար լինելը երբեմն չարաշահվում է բաշխող առանձին կազմակերպությունների ու անձանց կողմից։ Ամենից առաջ խախտվում է այն սկզբունքը, որ բնակարանը բաշխելիս հիմնականում պետք է ելնել ընտանիքի կազմից։ Դրա հետևանքով, հաճախ երեք սենյականոց բնակարանը տրվում է երեք կամ նույնիսկ երկու հոգիանոց ընտանիքին։ Երկրորդ կարևոր թերությունը բնակարանային ֆոնդի ոչ ռացիոնալ օգտագործումն է։ Բանն այն է, որ մեզ մոտ բնակարանային ֆոնդի բաշխմամբ ամեն ինչ ավարտվում է, այսինքն՝ տվյալ բնակարանի օգտագործումը դուրս է մնում ուշադրությունից ու հսկողությունից, որը հնարավորություն է տալիս նորից դիմելու չարաշահումների։ Օրինակ՝ 6 հոգուց բաղկացած ընտանիքը երեք սենյականոց բնակարան ստանալուց հետո, տրոհվում է երկու մասի։ Այդ բնակարանը մնում է 2 կամ 3 հոգուն, իսկ ընտանիքի մյուս անդամները լրացուցիչ նոր բնակարան են ստանում։ Մեր զարգացման ներկա շրջանում, երբ դեռևս գոյություն ունի բնակարանային ֆոնդի պակաս, բնակարանների այդպիսի ոչ ռացիոնալ



բաշխումը զգալի վնաս է հասցնում աշխատավորության բարեկեցության բարձրացմանը։

Նման թերությունները վերացնելու համար պահանջվում է շարունակ կատարելագործել բնակարանային ֆոնդի բաշխման մեթոդները։ Նպատակահարմար է ստեղծել մշտական գործող ներկայացուցչական հանձնաժողով, որը պատասխանատու լինի ոչ միայն բնակարանային ֆոնդի բաշխման, այլ նաև օգտագործման համար։ Այդ նպատակով հանձնաժողովը պետք է ունենա բնակարանային ֆոնդը շարունակ հաշվառելու (ըստ ընտանիքների) ու վերաբաշխելու իրավունք։ Չէ, որ բնակարանային ֆոնդը միշտ էլ մնում է համաժողովրդական սեփականություն և չի վերածվում տվյալ ընտանիքի անձնական սեփականության։ Այդ պատճառով, հասարակությունը միշտ էլ իրավասու է վերաբաշխելու և անհրաժեշտության դեպքում ետ վերցնելու այն։ Այսպիսի պայմաններում նախ զգալի չափով բնակարաններ կազատվեն և կտրամադրվեն աշխատավորությանը, և երկրորդ՝ կկասեցվեն նման հետագա չարաշահումները։ Նպատակահարմար է դիֆերենցել նաև բնակարանային վարձը՝ ելնելով բնակելի շենքի տեղադրությունից ու զբաղեցրած բնակարանի հարկից։

Այսպիսով աշխատավարձը կարգավորելու ու կատարելագործելու և ընտանիքի աշխատունակ անդամների զբաղվածությունը բարձրացնելու հետ մեկտեղ, սոցիալիստական պետությունը բնակչության կենսամակարդակի գոյություն ունեցող տարբերությունները համահարթելու վրա ներգործում է նաև հասարակական սպառման ֆոնդերի բաշխման միջոցով։ Ընդ որում դեպի կոմունիզմ անցնելուն զուգահեռ աճում է ոչ միայն հասարակական սպառման ֆոնդերի ծավալը, այլև նրանց դերը՝ կոմունիստական հասարակությանն անցնելու գործում։ Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ ծրագրի մասին պարտիայի XXII համագումարին տված իր զեկուցման մեջ նշում է. «Կոմունիստական հասարակության սկզբունքների իրականացման ուղին աշխատանքի նյութական խթանների ճիշտ զուգորդումն է հասարակական ֆոնդերի միջոցով աճող բաշխման հետ» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 181)։

Անցումը կոմունիստական հավասարությանը ոչ մի ընդհանրություն չունի մանր բուրժուական հավասարության հետ։ Ցածր վարձատրվող բանվոր-ծառայողների աշխատավարձի բարձրացումը և աշխատանքի վարձատրության միջև տարբերությունների կրճատումը ոչ թե մեխանիկական միջոցառում է, այլ տեխնիկական պրոգրեսի, իրենց արտադրողների որակավորման բարձրացման անխուսափելի հետևանք։ Ինչ վերաբերում է բնակչության կենսամակարդակի տարբերությունները վերացնելու գործում հասարակական սպառման ֆոնդերին, ապա դրանք ոչ միայն չեն տանում մեխանիկական հավասարեցման, հակառակը, նպաստում են ավելի հետևողականորեն կիրառելու աշխատավորների անձնական նյութական շահագրգռվածության լենինյան սկզբունքը։

Բանն այն է, որ ըստ աշխատանքի վարձատրման ֆոնդից աշխատավորի ստացած եկամուտը վերջնականապես իրացվում է սպառման մեջ, որը տեղի է ունենում նրա ընտանիքում։ Այդպիսի պայմաններում արտադրողի ռեալ սպառումը կախման մեջ է դրվում ոչ միայն նրա կատարած աշխատանքի քանակից ու որակից, ոչ միայն նրա աշխատավարձից, այլ նաև նրա ընտանիքի կազմից։ Այդ պատճառով արտադրողի սպառումը տնտեսական շրջա-

նակների մեջ հասցնում է ստացած եկամուտներից, այսինքն՝ հնարավոր սպառումից, նրա ռեալ սպառման մակարդակի շեղմանը։ Որքան մեծ է ընտանիքը ու, հատկապես, երեխաների թիվը, այնքան անմիջական արտադրողի ռեալ սպառումն իջնում է նրա հնարավոր սպառումից, մի երևույթ, որը, անշուշտ, բացասաբար է անդրադառնում աշխատողի անձնական նյութական շահագրգռվածության բարձրացման և աշխատանքային խանդավառության ու ինտենսիվության վրա։ Բայց քանի որ հասարակական սպառման ֆոնդերից ավելի շատ եկամուտներ ստանում են հենց բազմազավակ ու բազմանդամ ընտանիքները, այդ պատճառով էլ հասարակական սպառման ֆոնդերն իրենց զարգացման չափով հակազդում են անմիջական արտադրողի ռեալ սպառումը նրա հնարավոր սպառումից շեղվելու տենդենցին և դրանով նպաստում ինչպես նրա բարեկեցության, այնպես էլ նյութական շահագրգռվածության բարձրացմանը։

Հասարակական սպառման ֆոնդերի դերը չի սահմանափակվում միայն դրանով։ Բնակչության առանձին անդամների կենսամակարդակների տարբերությունների համահարթումը հասարակական սպառման ֆոնդերի աճման միջոցով իսկական կոմունիստական հավասարության անցնելու գլխավոր ուղիներից մեկն է՝ աշխատավարձի կատարելագործման ու բարձրացման հետ մեկտեղ։ Վ. Ի. Լենինը գրել է. «Եվ հենց որ իրականանա հասարակության բոլոր անդամների հավասարությունն արտադրության միջոցներին տիրելու վերաբերմամբ ...մարդկության առաջ անխուսափելիորեն կանգնելու է ավելի առաջ գնալու հարցը, ձևական հավասարությունից փաստացի հավասարության անցնելու, այսինքն՝ իրականացնելու «յուրաքանչյուրն ըստ իր ընդունակությունների, յուրաքանչյուրին ըստ իր պահանջմունքների» կանոնը» (Երկեր, հ. 25, էջ 614—615)։ Լենինի ձևակերպումից հետևում է, որ կոմունիստական հավասարությունը ոչ այլ ինչ է, քան կենսամիջոցները հասարակության անդամների միջև «յուրաքանչյուրն ըստ իր ընդունակությունների, յուրաքանչյուրին ըստ իր պահանջմունքների» սկզբունքով բաշխում։ Սոցիալիստական հասարակարգում այդ սկզբունքին ավելի մոտ են բաշխվում հենց հասարակական սպառման ֆոնդերը։

Նոր, կոմունիստական մարդու ձևավորման գործում ուրիշ միջոցառումների շարքում քիչ դեր չի խաղալու հասարակության անդամների կենսամակարդակների տարբերությունների աստիճանական վերացումը՝ նյութապես պակաս ապահովված ընտանիքների եկամուտներն արագ ավելացնելու միջոցով՝ ինչպես ըստ աշխատանքի բաշխման ֆոնդի, այնպես էլ հասարակական սպառման ֆոնդերի զարգացման հաշվին։ Այդ է պահանջում պարտիայի նոր ծրագրի այն դրույթը, ուր նշված է՝ ով չի աշխատում, նա չի ուտում լոզունգը զուգակցել բոլորը մեկի համար, մեկը բոլորի համար լոզունգով։



# ԲԱՐԵԼԱՎԵԼ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱՊԱՀՈՎՈՒԹՅԱՆ ՎԻՃԱԿԸ

Լ. ՄԵԼՔՈՆՅԱՆ

Հայկական ՍՍՌ սոցիալական ապահովության մինիստր

Մեր երկրում սոցիալական ապահովության բարելավումն ու կատարելագործումը ժողովրդի նյութական կենսամակարդակի բարձրացման բաղկացուցիչ և անբաժան մասն են։

Պետական օրգանները,— ասված է Սովետական Միության կոմունիստական պարտիայի Ծրագրում,— արհմիությունները, կոլտնտեսությունները, ազգային եկամտի աճի համեմատ, քսանամյակի ընթացքում աստիճանաբար իրենց վրա կվերցնեն այն բոլոր քաղաքացիների նյութական ապահովությունը, որոնք կորցրել են աշխատունակությունը տարիքի կամ հաշմանդամության հետևանքով։

ՍՍՌՄ Գերագույն սովետի՝ 1956 թվականի հուլիսի 14-ին ընդունած «Պետական կենսաթոշակի մասին» օրենքը այն բազմաթիվ միջոցառումներից է, որն ուղղված է աշխատավորության նյութական բարեկեցության բարձրացման նպատակին։ Այդ օրենքով զգալի չափով բարձրացավ կենսաթոշակը, և միաժամանակ ավելացան պետական կենսաթոշակի իրավունք ունեցողները։ Անդրադառնալով պարտիայի և կառավարության՝ այդ բնագավառում կենսագործած միջոցառումներին, Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ XXII համագումարում ասաց. «Վերջին ժամանակներս խոշոր միջոցառումներ են կենսագործված կենսաթոշակային ապահովումը բարելավելու գծով։ Ծերության կենսաթոշակի միջին չափերն աճել են ավելի քան երկու անգամ, ավելացված են հաշմանդամության և կերակրողին կորցնելու դեպքում տրվող կենսաթոշակները։ Կենսաթոշակների վճարման գծով պետության ծախսերն ավելացան և 1955 թվականի երեք միլիարդ ռուբլուց, 1961 թվականին հասան մինչև 7,6 միլիարդ ռուբլու։ 1963 թվականին նորից կբարձրացվեն կենսաթոշակների նվազագույն չափերը»։

Ռեսպուբլիկայի սոցիալական ապահովության մարմիններն իրենց աշխատանքը վերակառուցելով մեր պարտիայի վերջին որոշումներին համաձայն, զգալի գործ կատարեցին աշխատավորության սոցիալական ապահովության բարելավման ուղղությամբ։ Բավական է նշել, որ ռեսպուբլիկայում սոցիալական ապահովության մարմինների ծախսերը 1962 թվականին կազմել են 55 միլիոն 760 հազար ռուբլի, կամ 1956 թվականի համեմատությամբ ավելացել են 3 անգամ, իսկ 1961 թվականի համեմատությամբ՝ 7,6 տոկոսով։

Անցյալ տարվա վերջերին ռեսպուբլիկայում կային 146005 կենսաթոշակառուներ, 83507 նպաստ ստացող բազմազավակ և միայնակ մայրեր։ Մեկ

տարվա ընթացքում՝ 1962 թվականին, 1961 թվականի համեմատությամբ, կենսաթոշակառուների թիվն ավելացել է 7584-ով։ 1963 թվականին սոցիալական ապահովության և պետական նպաստների ծախսերի համար նախատեսված է 60 միլիոն 300 հազար ռուբլի, կամ 1962 թվականի համեմատությամբ՝ ավելանալու է 6,2 տոկոսով։

Բնորոշ է այն, որ աշխատանքի կենսաթոշակառուների կազմում տեղի են ունենում էական փոփոխություններ, այսինքն՝ ծերության կենսաթոշակառուների թիվն ավելանում է, իսկ հաշմանդամներինը՝ պակասում։ 1962 թվականին ծերության հաշմանդամների թիվը նախորդ տարվա համեմատությամբ ավելացել է 4709-ով, նույն տարիներին աշխատանքի հաշմանդամներինը պակասել է 903 մարդով։ Այս փոփոխությունը շատ բնական և օրինաչափ երևույթ է։ Առողջապահության և սոցիալական ապահովության մարմինները ջանում են բարելավել հաշմանդամների առողջական վիճակը, վերականգնել նրանց աշխատունակությունը և վերադարձնել աշխատանքի։ Այս հարցը կարևոր է նաև այն պարզ պատճառով, որ 1963 թվականի հունվարի 1-ի դրությամբ կենսաթոշակառուների 19 տոկոսն աշխատում է ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում։

Սոցիալական ապահովության բաժինները ձգտում են ավելի լավ կազմակերպել աշխատավորության սպասարկումը, կատարելագործել աշխատանքի մեթոդներն ու ձևերը, կանխել օրենքի խախտումներն ու չարաշահումները։ Հիշարժան է, հատկապես, Երևան քաղաքի Լենինյան շրջանի (բաժնի վարիչ ընկ. Ա. Օհանյան) և Լենինական քաղաքի (բաժնի վարիչ ընկ. Ա. Գրիգորյան) սոցապբաժինների դրական աշխատանքը։

Լենինյան շրջանի սոցապ բաժինը նոր պարտավորություններ ստանձնեց և կոչ արեց ռեսպուբլիկայի սոցապի բոլոր աշխատողներին՝ այսուհետև գործել այնպես, որ օրենքը կիրառելիս թույլ չտրվեն սխալներ, բարձրացվի աշխատավորության սպասարկման կուլտուրան։ Այժմ զգալի չափով բարելավվել է այդ աշխատանքը։ Կենսաթոշակի գործերի զգալի մասը ստացվում է ձեռնարկությունների արհմիություններին առընթեր հանձնաժողովների նախնական ստուգումներից և ուսումնասիրություններից հետո։

Լենինականի քաղաքային սոցիալական ապահովության բաժնի ձեռնարկած միջոցառումների շնորհիվ վերջին ժամանակներս որոշակի բարեփոխումներ են կատարվել քաղաքացիների թոշակավորման գործում։ Կոլեկտիվների և կենսաթոշակներ նշանակող հանձնաժողովի ջանասեր, համերաշխ աշխատանքով պետք է բացատրել այն, որ թերությունները աննշան են։

Իրենց աշխատանքները նշանակալից չափով բարելավել են նաև Կամոյի, Բասարգեչարի, Ապարանի, Ղափանի, Էջմիածնի, Սևանի և մի շարք այլ սոցապբաժիններ։

Ռեսպուբլիկայի սոցիալական ապահովության մինիստրությունն անցյալ տարի ռեսպուբլիկայի 19 շրջանային և քաղաքային սոցապբաժիններում վերստուգել է ավելի քան 41295 կենսաթոշակի և 29550 բազմազավակ ու միայնակ մայրերին տրվող պետական նպաստների գործերը, կանխվել են մեծ թվով սխալներ, չարաշահումներ ու թերություններ։

Պետությունը սոցիալական ապահովության մարմինների միջոցով բավականին գումարներ է հատկացրել նաև հաշմանդամների ուսուցման և պրոտեզավորման գործին։ Միայն 1962 թվականին արտադրական (արհեստների) ուսուցման ոլորտն են ընդգրկվել մոտ 480 հաշմանդամ, որից 257 հոգի ավարտել և հիմնականում մնացել են արտադրական օբյեկտներում մշտական աշխատանքի, իսկ 185-ը շարունակելու են ուսումը։ Բայց պետք է նշել, որ հաշմանդամների ուսուցման և նրանց հանրօգուտ աշխատանքի ներգրավելու գործում մեզ վատ են օգնում ժողտնտխորհի ձեռնարկությունները։

Սոցիալական ապահովության լուրջ խնդիրներից մեկը հաշմանդամներին պրոտեզա-օրթոպեդիկ պարագաներով ապահովելն է։ Միայն 1962 թվականին 1885 հաշմանդամ պետության հաշվին ստացել են այդպիսի պարագաներ, կատարվել է 1066 պրոտեզների վերանորոգում, թողարկվել 1525 զույգ օրթոպեդիկ և 1468 զույգ պրոտեզի կոշիկներ։

1962 թվականի երկրորդ կիսամյակից ստեղծվեց պրոտեզավորման շրջիկ բրիգադա, որը մասնագետ բժշկի գլխավորությամբ կազմակերպեց հաշմանդամներին տեղերում սպասարկելու գործը։

Սովետական պետությունը մեծ հոգատարություն է ցուցաբերում այն ղառամյալների ու հաշմանդամների նկատմամբ, որոնք խնամող չունեն։ Մեր ռեսպուբլիկայում, սոցիալական ապահովության մինիստրության սիստեմում ներկայումս կան հաշմանդամների և ծերերի չորս տուն։ Այդ տները կառուցված են հարմարավետ վայրերում, ունեն բարեկարգ բակեր, գեղեցիկ պարտեզներ ու այգիներ։ Այդ տներում ապրում են 568 հոգի, որոնց համար ստեղծված են սնվելու և հանգստի նորմալ պայմաններ։ Առաջիկայում էլ մեծ ուշադրություն կհատկացվի այդ գործին։ Քաղաքներում և գյուղերում,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— լայնորեն կծավալվի ղառամյալների և հաշմանդամների բարեկարգ գիշերօթիկ տների ցանցը, որտեղ ձրի կապրեն բոլոր ցանկացողները։

Մեր ժողովրդի մեջ դեռևս շատ աղոտ պատկերացում կա հաշմանդամների տների մասին, բոլորը չգիտեն, որ այդ տներում ստեղծված են բոլոր պայմանները նորմալ ապրելու համար։ Եթե դեռևս մենք այս կամ այն անկյունում հանդիպում ենք հատ ու կենտ մուրացողների, ապա այդ պետք է բացատրել ոչ թե նրանով, որ պետությունն իր վրա չի վերցնում նրանց խնամակալությունը, այլ նրանով, որ դեռևս կան մարդիկ, որոնք մուրալը նախընտրում են մարդավայել, օրինավոր ապրուստից, իսկ միլիցիայի և մյուս օրգանների պայքարը՝ մեր կյանքի այդ բացասական երևույթի վերացման համար դեռևս թույլ է։

Սովետական պետությունը խոշոր միջոցներ է հատկացնում ծերերի ու հաշմանդամների կյանքի ապահովությանը։ Սոցիալական ապահովության մարմինների առաջնահերթ խնդիրն է՝ այնպես կազմակերպել գործը, որ իրոք այդ բարիքից օգտվեն միայն նրանք, ովքեր օրենքով սահմանված կանոններով դրա իրավունքն ունեն։ Սակայն, ցավոք սրտի, սոցիալական ապահովության բնագավառում դեռևս կան առանձին աշխատողներ, որոնք խախտելով կենսաթոշակի մասին եղած օրենքն ու կանոնները, որոշ մարդկանց հնարավորություն են տալիս անօրինական ճանապարհով թոշակ ստանալու։ Առանձին աշխատողներ էլ, օգտագործելով իրենց պաշտոնը, շահադիտական նպատակներով թոշակ են նշանակում այնպիսի մարդկանց, որոնք դրա իրավունքը չունեն։ Միայն 1962 թվականին կատարված ստուգումներով հայտաբերված գերվճարումները կազմել են 176.000 ռուբլի։

Օրենքի խախտումների, գերվճարումների գերակշռող մասը (52 տոկոս) տեղի է ունեցել Երևան քաղաքի սոցիալական ապահովության բաժիններում։

Այդ փաստից անհրաժեշտ հետևություն չեն անում Երևան քաղաքի սոցիալական ապահովության բաժնի վարիչ ընկ. Ի. Թարվերդյանը և շրջանների սոցապ բաժինների վարիչները։

Կիրովականի քաղաքային սոցապ բաժնում անցյալ տարվա վերջերին ստուգված 780 աշխատանքային կենսաթոշակառուների գործերից 24-ում թույլ են տրվել օրենքի կոպիտ խախտումներ։ Քաղաքացի Մ. Հայրապետյանի կենսաթոշակի կապակցությամբ, դեռ 1960 թվականին մինիստրությունից ցուցում էր տրվել ստուգելու աշխատավարձի չափի վերաբերյալ տեղեկանքի օրինականությունը։ Բաժինն ստուգում և պարզում է, որ այդ տեղեկանքը անհիմն է, քաղաքացին տեղեկանքում նշված աշխատավարձը բնավ չի ստացել։ Բայց բաժնի նախկին վարիչ Ս. Ղազախեցյանը մակագրում է. «Հիմք ընդունել տեղեկանքը» և Ղազախեցյանի հանցանքով Հայրապետյանին անօրինական վճարվել է 2160 ռուբլի։

Ուսուցիչներ Արտաշես Ղալաչյանին և Սանասար Քեշիշյանին երկարամյա ծառայության կենսաթոշակ է նշանակված, մինչդեռ նրանք կենսաթոշակի իրավունք տվող մասնագիտական ստաժ չեն ունեցել։ Նույն Ղազախեցյանի և նախկին ավագ տեսուչ Հակոբյանի մեղքով այդ ուսուցիչներին ապօրինաբար վճարվել է 1360 ռուբլի։ Այսպիսով Ղազախեցյանը և Հակոբյանը 11.200 ռուբլի նյութական վնաս են հասցրել պետությանը։

Օրենքի խախտման աղաղակող փաստեր են հայտաբերվել Արթիկի շրջանում։ Օրինակ, կերակրողին կորցրած Բարխոյանին կենսաթոշակ նշանակելիս, մահացածի աշխատանքային ստաժը սխալ է հաշվարկվել և հետևապես վերջինիս ավելի գումար վճարվել։

Դեռ 1959 թվականի ապրիլին փաստաթղթերի անօրինականության պատճառով մինիստրությունն առաջարկեց Արթիկի սոցապ բաժնին դադարեցնել քաղ. Պիրոյանին կենսաթոշակ վճարելը։ Բայց բաժնի վարիչ ընկ. Ցրանդյանը հիմք է ընդունում հետին թվով տրված չհիմնավորված փաստաթղթերը և վերականգնում կենսաթոշակը։ Այդպիսով քաղ. Պիրոյանը անօրինական տեղեկանքով պետությունից ստանում է 882 ռուբլի։

Երևան քաղաքի 26 կոմիսարների անվան շրջանի սոցապ բաժնում, օգտվելով բաժնի նախկին վարիչ Ալեքսանյանի թողտվությունից, նախկին ավագ հաշվապահ Ս. Ավետիսյանը հանցավոր գործարքի մեջ է մտնում առանձին կենսաթոշակառուների հետ և ինքնագլուխ բարձրացնում նրանց կենսաթոշակների չափը։ Երբ բացահայտվեց կեղծիքը, այդ կենսաթոշակառուներից չորսը միանվագ վերադարձրին կեղծ ճանապարհով ստացված ամբողջ գումարը։ Հանցանքի հետքերը կորցնելու նպատակով Ս. Ավետիսյանը դարակներում թաքցրել էր նրանց կենսաթոշակի գործերը և հաշվապահական վճարման քարտերը։ Բաժնի որոշ աշխատողներ, տեղյակ լինելով այդ ամենին, հարկ չեն համարել ահազանգել։

Ընթացիկ տարվա մայիսին բացահայտվեց, որ Սպանդարյանի սոցբաժնի հաշվետար Գալյա Գրիգորյանը, օգտվելով բաժնի ղեկավարության բարեհոգությունից, առանց կենսաթոշակի գործերի առկայության, չորս քաղաքացիների ազգանուններով, կապի բաժանմունքին կենսաթոշակի կեղծ ծանուցագիր է տվել և պետությունից հափշտակել 914 ռ. 44 կ.։ Նույն կարգով փոստին 14 հոգու կենսաթոշակի վճարման ծանուցագիր է տվել հաշվետար Համբիկ Սաստրյանը և կարողացել է պետությունից յուրացնել 8915 ռուբլի։



Թոշակ նշանակելու գործում լուրջ սխալներ ու թերություններ են թույլ տվել Երևան քաղաքի Շահումյանի շրջանի, ինչպես և Դիլիջանի, Իջևանի, Թալինի, Ազիզբեկովի և Նոյեմբերյանի սոցապբաժինները։ Այդ ամենը հետևանք է այն բանի, որ շրջանային, քաղաքային սոցապբաժինների աշխատողները ուշադրություն չեն հատկացնում ստուգումների ընթացքում հայտաբերված սխալների հիմնական պատճառների վերացմանը, անհոգություն ու անպատասխանատվություն են ցուցաբերում հանձնարարված գործի նկատմամբ, իսկ մինիստրության կենսաթոշակների բաժինը (բաժնի վարիչ ընկ. Ս. Գրիգորյան) երբեմն ստուգումները կատարում է մակերեսորեն, չի հետևում տրված հանձնարարությունների և մինիստրության կոլեգիայի որոշումների ժամանակին կատարելուն։

Որոշ հիմնարկ-ձեռնարկությունների պետեր, դիրեկտորներ կորցնելով պատասխանատվության զգացումը պետության առջև, իրենց բարեկամներին, ծանոթներին տալիս են կեղծ փաստաթղթեր, դրանով իսկ օգնում նրան խարդախ ճանապարհով պետությունից դրամ շորթելու։

Երևան քաղաքի Նոր-Արեշի 24-րդ փողոցի № 45 տան բնակչուհի Հ. Սարգըսյանը պահեստապետ Օգանեսովի ստորագրությամբ տեղեկանք է ներկայացրել, որ 1928—1938 թվականներին, ապա 1941—1953 թվականներին աշխատել է պահեստում։ Այդ կեղծ տեղեկանքի հիման վրա Հ. Սարգսյանին թոշակ են նշանակում։ Մինչև կեղծիքը հայտաբերելը նա պետությունից անօրինական կերպով ստանում է 2021 ռուբլի կենսաթոշակ։

Ն. Մանուկյանը Արթիկի շրջանի սոցապ բաժնին ներկայացրել է շրջկոոպի նախկին նախագահ Խաչատրյանի տված տեղեկանքը այն մասին, որ նա 1941—1948 թվականներին աշխատել է շրջկոոպի ցանցում, դրա հիման վրա ստացել է 395 ռ. կենսաթոշակ, հետագայում պարզվել է, որ այդ տեղեկանքը կեղծ է։

Արզնիի ապակու տարայի գործարանի դիրեկտոր Գրիգորյանը կեղծ հրաման է տալիս, որ ֆինպլան բաժնի պետ Աբգարյանն ազատված է աշխատանքից՝ կենսաթոշակի անցնելու կապակցությամբ։ Աբգարյանը 1961 թ. դեկտեմբերի 27-ից սկսած ստանում է ամիսը 109 ռ. կենսաթոշակ և շարունակում աշխատել. այդպիսով նա պետությունից կորզել է 1400 ռուբլի։ Դժբախտաբար նման օրինակները եզակի չեն։

Իհարկե, թոշակավորման օրենքը խեղաթյուրելու, կեղծ փաստաթղթերի հիման վրա թոշակ նշանակելու և թոշակ ստանալու համար հանցավորները պատժվել են և այսուհետև էլ կպատժվեն։ Բայց ինչո՞ւ գործը հասցնել այդտեղ։ Չէ՞ որ այդ բոլորը կարելի է կանխել, եթե սոցիալական ապահովության բնագավառի աշխատողները, հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարները պատասխանատվություն հանդես բերեն։

Ցավոք սրտի երբեմն էլ սոցիալական ապահովության բաժինների առանձին աշխատողների բյուրոկրատական, անհոգի վերաբերմունքի հետևանքով ձգձգվում է առանձին քաղաքացիների թոշակավորման գործը, մինչդեռ եղած օրինական փաստաթղթերը բավարար հիմք են նրանց թոշակավորելու համար։

ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումը պարտավորեցրեց սովետական օրգաններին՝ բարելավել ներգերատեսչական վերահսկողությունը, այդ աշ-

*տատանքներում լայնորեն ընդգրկելով հասարակությանը, ակտիվիստներին։*

*Կազմակերպելով ժողովրդական վերահսկողությունը մեր աշխատանքներում, մենք կկարողանանք ոչ միայն բացահայտել սխալներն ու թերությունները, չարաշահումներն ու շռայլումները այլև նախազգուշացնել, կանխել դրանք։*

*Ռեսպուբլիկայում ստեղծված են կենսաթոշակառուների 20 խորհուրդ, որտեղ ընդգրկված են 165 ընկեր. 34 սոցապ բաժիններում 307 ընկերներ հասարակական հիմունքներով աշխատում են որպես տեսուչներ ու վերահսկիչներ։ Խորհուրդներն ու տեսուչները մասնակցում են աշխատավորների սպասարկմանը, փաստաթղթերի ստուգմանը և այլ աշխատանքների։*

*Լենինյան շրջանում հասարակական տեսուչների միջոցով հայտաբերվել է մի շարք քաղաքացիների փաստաթղթերի կեղծությունը, կանխվել դրանց ընդունումը։ Այսպես, օրինակ, հասարակական տեսուչների ստուգումից պարզվել է, որ քաղաքացիներ Ն. Ունչյանի, Ս. Մնացականյանի, Վ. Խաչատրյանի և այլոց փաստաթղթերը կեղծ են և չեն թոշակավորել նրանց։*

*Բոլոր սոցապբաժինները պետք է լայնորեն օգտագործեն հասարակական ուժերը. այդ կլինի սխալները հայտաբերելու և կանխելու լավագույն միջոցը։*



*Մեր պարտիան մեծ հոգատարություն է ցուցաբերում ժողովրդի առողջության և կյանքի տևողության երկարացման նկատմամբ։ ՍՄԿՊ ծրագրում նշվում է. «Աշխատանքի պայմանների ըստ ամենայնի առողջացումն ու հեշտացումը ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևոր խնդիրներից մեկն է։ Բոլոր ձեռնարկություններում կարմատավորվեն անվտանգության տեխնիկայի ժամանակակից միջոցներ, և կապահովվեն սանիտարական առողջապահական պայմաններ, որոնք վերացնում են արտադրական տրավմատիզմը և պրոֆեսիոնալ հիվանդությունները։ Աստիճանաբար կվերացվեն գիշերային հերթափոխությունները ձեռնարկություններում...»։*

*Բժշկական աշխատանքային էքսպերտիզան սոցիալական ապահովության մարմինների աշխատանքների կարևորագույն բնագավառներից մեկն է. այն չի կարող սահմանափակվել միայն հաշմանդամության խմբերը որոշելով։ Հաշմանդամության խմբերի ճիշտ որոշման հետ մեկտեղ պետք է միջոցառումներ նշվի հետագայում նրանց առողջության վերականգնման, աշխատանքային պայմանների բարելավման ուղղությամբ։*

*Լավ էքսպերտիզան՝ մեր պարտիայի քաղաքականության ճիշտ կենսագործումն է ժողովրդի սոցիալական ապահովության ասպարեզում։*

*Ռեսպուբլիկայում հաշմանդամների 7,3 տոկոսը առաջին խմբի հաշմանդամներ են, 42,9-ը՝ 2-րդ, իսկ 49,8-ը՝ 3-րդ։ Այժմ գործում են 39 շրջանային-քաղաքային և 3 ռեսպուբլիկական բժշկա-աշխատանքային էքսպերտ հանձնաժողովներ (ԲԱԷՀ-ներ)։ Դժբախտաբար այդ հանձնաժողովները դեռևս լրիվ կոմպլեկտավորված չեն անհրաժեշտ մասնագետներով, մի հանգամանք, որ խիստ բացասաբար է անդրադառնում էքսպերտիզայի որակի վրա։ ԲԱԷՀ-ների աշխատանքի վրա բացասաբար է անդրադառնում նաև մասնագետների հոսունությունը (Արտաշատ, Ղափան, Բասարգեչար և այլն)։*

*Մեզ մոտ դեռևս անհրաժեշտ ուշադրություն չի հատկացվում հաշմանդամության հարցին։ Ճիշտ է, անցած տարիների համեմատությամբ առաջին կարգի հաշմանդամների թիվը որոշ չափով պակասել է (1960 թվականին եղել է 5406, 1961 թվականին՝ 5381, 1962 թվականին՝ 5224), բայց այդ ցուցանիշը բոլորովին նորմալ համարել չի կարելի, դեռևս բարձր է առաջնակի հաշմանդամների թիվը։*

*Ուսումնասիրությունը ցույց է տվել, որ Երևանի որոշ արտադրական ձեռնարկություններում պատշաճ պայքար չի տարվում դժբախտ դեպքերից առաջացած խեղումները նվազագույնի հասցնելու համար։*

*Թույլ է ԲԱԷՀ-ների ու բուժհիմնարկների կապը։ Դրանով է բացատրվում այն, որ բժշկա-կոնսուլտացիոն հանձնաժողովների կողմից ԲԱԷՀ-ներն ուղարկված առաջնակի հիվանդ քաղաքացիների 25 տոկոսը հաշմանդամ չի ճանաչվել։*

*Բուժհիմնարկների մասնագետները դեռևս բավարար չափով ծանոթ չեն էքսպերտիզայի սկզբունքներին և քաղաքացիներին անհիմն կերպով ԲԱԷՀ-ներ ուղարկելը տեղիք է տալիս բազմաթիվ դժգոհությունների ու բողոքների։*

*Միաժամանակ պետք է նշել, որ շատ ԲԱԷՀ-ներ չեն լինում ձեռնարկություններում, չեն ուսումնասիրում հաշմանդամների աշխատանքի բնույթը, պայմանները և չհիմնավորված որոշումներ են կայացնում, խախտում էքսպերտիզայի վերաբերյալ գործող հրահանգը, մի կողմից՝ շռայլելով պետական գումարները, մյուս կողմից՝ ոտնահարելով քաղաքացիների իրավունքները։ Դրանով պետք է բացատրել այն հանգամանքը, որ 1962 թվականին 2037 վերաքննված քաղաքացիների 25 տոկոսի խմբերը ռեսպուբլիկական ԲԱԷՀ-ը փոխել է, ըստ որում 13 տոկոսի կարգը բարձրացնելով, 12-ինը իջեցնելով։*

*Ռեսպուբլիկական ԲԱԷՀ-ը, մինիստրության տեսչությունը քիչ են լինում տեղերում, շրջանային ԲԱԷՀ-ներին գործնական և գիտապրակտիկ օգնություն ցույց չեն տալիս, չեն կազմակերպում համապատասխան միջոցառումներ նրանց գիտելիքները բարձրացնելու, թույլ տված սխալներն ու խախտումները ժամանակին շտկելու ուղղությամբ։*

*Մի շարք շրջանային և քաղաքային պարտիական-սովետական կազմակերպություններ անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրում սոցիալական ապահովության բաժինների աշխատանքին, հոգ չեն տանում՝ նրանց համար ստեղծելու աշխատանքային նորմալ պայմաններ, բաժինները կոմպլեկտավորում են թույլ, պատահական կադրերով։ Այդ ամենի հետևանքը խիստ բացասական է լինում։*

*Պարտիայի և կառավարության հոգատարության շնորհիվ, ժողովրդի բարեկեցության անման զուգընթաց, տարեցտարի ավելանում են ժողովրդի սոցիալական ապահովության կարիքներին հատկացվող միջոցները։ Պարտիական և սովետական օրգանները պետք է ուժեղացնեն իրենց ամենօրյա օգնությունն ու հսկողությունը սոցիալական ապահովության գործունեության վրա, որպեսզի հատկացվող յուրաքանչյուր ռուբլին ծառայի իր նպատակին։*



# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՆ ԵՎ ՍԿԶԲՆԱԿԱՆ ՊԱՐՏԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Սկզբնական պարտիական կազմակերպությունները մեր պարտիայի հիմքն են, նրա հիմնական օղակը։ Նրանք գործում են ժողովրդական լայն մասսաների շրջանում, այնտեղ, ուր անմիջականորեն ստեղծվում է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան, ձևավորվում են նոր հասարակական հարաբերությունները և դաստիարակվում է կոմունիստական հասարակարգ կառուցող մարդը։*

*Յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվի ոգին սկզբնական պարտկազմակերպությունն է։ Պարտիական ներգործության տակ, կոլեկտիվում է ձևավորվում նոր աշխարհայացք, նոր բարոյականություն ունեցող մարդը, զարգացվում աշխատավորների ստեղծագործական ակտիվությունն ու նախաձեռնությունը։ Սկզբնական պարտկազմակերպությունն է գլխավորում սոցիալիստական մրցությունը, մոբիլիզացնում է մասսաներին՝ հայտաբերելու և արդյունավետ օգտագործելու ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների ներքին ռեզերվները, արտադրության մեջ արմատավորելու գիտության ու տեխնիկայի նվաճումները և առաջավորների փորձը։ Նրանք կոչված են ամրապնդելու աշխատանքային կարգապահությունը, ամեն կերպ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, բարելավելու արտադրանքի որակը, պայքար կազմակերպելու հանրային հարստության պահպանման ու բազմապատկման համար։ Սկզբնական պարտիական կազմակերպությունն այն դպրոցն է, որտեղ կոմունիստը ձևավորվում ու կոփվում է որպես գաղափարի մարդ, կոմունիստական հասարակարգ կառուցող գիտակից և ակտիվ մարտիկ։*

*Վերջին տարիների ընթացքում զգալիորեն ավելացել է մեր ռեսպուբլիկայի սկզբնական պարտիական կազմակերպությունների և նրանցում եղած կոմունիստների թիվը։ Ներկայումս Հայաստանի կոմունիստական պարտիան ունի 3691 սկզբնական պարտիական կազմակերպություններ, որոնցում արտադրական սկզբունքով միավորված են պարտիայի 97339 անդամ-թեկնածուներ։*

*Օրերս ռեսպուբլիկայի սկզբնական պարտիական կազմակերպություններում ավարտվեցին հաշվետու-ընտրական ժողովները և սկսվել են քաղաքային, շրջանային, կոլտնտեսային-սովխոզային արտադրական և արդյունաբերական գոտիների պարտիական կազմակերպությունների կոնֆերանսները։*

*Հաշվետու ընտրական ժողովները, որոնք մեծ իրադարձություն հանդիսացան ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների կյանքում, մեծ չափով նպաստեցին բարելավելու և ակտիվացնելու նրանց ամբողջ գործունեությունը, ավելի զարգացնելու ներպարտիական դեմոկրատիան, էլ՛ ավելի ամրապնդելու պարտիական կարգապահությունը։ Սկզբնական պարտիական կազմակերպություններում հաշվետու-ընտրական ժողովները հիմնականում անցան կազմակերպված ձևով և գաղափարական պատշաճ մակարդակով, կոմունիստների բարձր ակտիվության պայմաններում։ Պարտիական կազմակերպությունների ամբողջ գործունեությունը, նրանց կազմակերպական ու գաղափարական աշխատանքը քննարկվում էին ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան (1962 թ.) և հունիսյան (1963 թ.) պլենումների որոշումների լույսի տակ։*

*Պարտիական ժողովներում կոմունիստները հանգամանորեն քննարկում էին այն հարցերը, որոնք վերաբերում էին ՍՄԿՊ Ծրագրի պրակտիկ կենսագործմանը, արդյունաբերության և գյուղատնտեսության արագաթափ զարգացմանը, տնտեսական ու կուլտուրական շինարարության պլանների կատարման գործում աշխատավորների ուժերի մոբիլիզացմանը։*

*Այս տարվա հաշվետու-ընտրական ժողովների բնորոշ կողմերից մեկն այն է, որ պարտիական կազմակերպություններում առանձնակի ուշադրություն էր հատկացվում գաղափարական աշխատանքի հարցերին։ Հաշվետու զեկուցումներում և ելույթներում խոր կերպով վերլուծվում էր մարդկանց հետ տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքի վիճակը, չափանիշ ընդունելով ոչ թե անցկացրած զանազան միջոցառումների՝ դասախոսությունների, զեկուցումների, զրույցների թիվը, այլ դրանց ներգործությունը մարդկանց աշխատանքի ու կենցաղի վրա, այն, թե ինչպես են մարդիկ դրսևորում իրենց արտադրության մեջ, ինչպիսին է նրանց վերաբերմունքը հանրային սեփականության նկատմամբ և այլն։*

*Հաշվետու-ընտրական ժողովները ցույց տվին, որ նոր պայմաններում զգալիորեն բարելավվել է սկզբնական պարտիական կազմակերպությունների գործունեությունը, որ նրանք ավելի լավ են կատարում իրենց առջև ծառացած բարդ ու պատասխանատու խնդիրները։ Ինչ խոսք, դրան մեծապես նպաստել է պարտիական կյանքի լենինյան նորմերի անշեղ կենսագործումը, կազմակերպական և գաղափարական աշխատանքի միահյուսումն ու կատարելագործումը։ Պարտիական ղեկավարման արտադրական սկզբունքին անցնելը հնարավորություն տվեց պարտիական կազմակերպություններին՝ ավելի խոր և բազմակողմանի զբաղվելու տնտեսության արմատական հարցերով, կազմակերպական ու գաղափարական աշխատանքը ամբողջապես նպատակամղելու նյութական բարիքների արտադրության ավելացման գործին։*

*Ուժեղացել ու կատարելագործվել է պարտիական վերահսկողությունը։ Արդյունաբերական և առևտրի ձեռնարկությունների, գիտահետազոտական ինստիտուտների պարտիական կազմակերպություններում ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող հանձնաժողովների կողքին, մեր բոլոր պարտկազմակերպություններում ստեղծվեցին պարտիական-պետական վերահսկողության կոմիտեներին աջակցող խմբեր, որոնք գործում են պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ։ Միաժամանակ այդ ժողովները ցույց տվեցին, որ արտադրական սկզբունքով պարտիական օրգանների վերակազման շնորհիվ պարտիական կոմիտեներն սկսել են ավելի մոտիկից ու արդյունավետ ղեկավարել սկզբնական պարտիական կազմակերպությունները, ջանալով ամեն կերպ զարգացնել պարտկազմակերպությունների ու բոլոր կոմունիստների ակտիվությունը, նախաձեռնությունը։*

Այդ ամենի շնորհիվ զգալիորեն բարձրացել են մեր շատ սկզբնական պարտիական կազմակերպությունների մարտունակությունն ու նախաձեռնությունը, նրանք սկսել են ավելի մեծ չափով ներգործել մարդկանց դաստիարակության, ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների և այլ կազմակերպությունների գործերի վրա, ամեն ինչ արվում է, որպեսզի յուրաքանչյուր կոմունիստ դառնա նորի, առաջավորի պրոպագանդիստն ու նրա կենսագործողը կյանքում։ Այդ կարելի է ակնառու տեսնել մի շարք սկզբնական պարտիական կազմակերպությունների, այդ թվում նաև Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի պարտիական կազմակերպության գործունեությամբ։

Դեռևս անցյալ տարի տեքստիլ կոմբինատը համարվում էր ռեսպուբլիկայի ետ մնացող խոշոր ձեռնարկություններից մեկը. այստեղ սիստեմատիկորեն չէին կատարվում արտադրական պլանները։ Եվ, քանի որ կոմբինատը թողարկում էր Լենինականի արդյունաբերական ձեռնարկությունների համախառն արտադրանքի ավելի քան 40 տոկոսը, ապա քաղաքի արդյունաբերությունն ամբողջությամբ վերցրած նույնպես չէր կատարում պլանները։ ՀԿՊ Կենտկոմի հինգերորդ պլենումում (1962 թ. հոկտեմբեր) արդարացի և խիստ քննադատության ենթարկվեցին Լենինականի քաղաքային կոմիտեն և տեքստիլ կոմբինատի պարտիական կազմակերպությունը։

Կոմբինատի կոմունիստներն այդ ամենից արեցին լուրջ հետևություններ։ Տեքստիլագործների պարտիական կոմիտեն, ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպությունները՝ քաղաքային կոմիտեի ղեկավարությամբ և օգնությամբ մշակեցին ու իրականացրին մի շարք միջոցառումներ։ Առաջին հերթին վերանայվեցին և վերադասավորվեցին պարտիական ու տնտեսական կադրերը։ Մշակվեց և արտադրության մեջ կիրառվեց աշխատավորության կողմից հավանության արժանացած աշխատանքի նոր գրաֆիկը, որով համարյա վերացվեց գիշերային հերթափոխը. այդ հնարավորություն տվեց լուծելու կոմբինատի բանվորական ուժի պակասը, պատշաճ ձևով կազմակերպելու բանվորուհիների կենցաղն ու հանգիստը։

Ֆաբրիկայի ցեխերի համաչափ և համագործակցված աշխատանքն ապահովելու նպատակով եղած հաստոցների վերադասավորման միջոցով ստեղծվեց դիսպետչերական ծառայություն։ Խոշորացվեցին կոմբինատի մանարան և գործվածքային ֆաբրիկաների ցեխերն ու տեղամասերը։ Այսպես. գործվածքային ֆաբրիկայի 4 ցեխի և 24 տեղամասի փոխարեն կազմակերպվեցին 2 ցեխ և 14 տեղամաս, որը հնարավորություն տվեց ցեխերն ու տեղամասերն ապահովելու որակյալ ու փորձված մասնագետներով, զգալի թվով որակյալ բանվորներ սկսեցին զբաղվել իրենց անմիջական մասնագիտությամբ։

Պարտիական կազմակերպությունը մեծ ուշադրություն է հատկացնում առաջավոր փորձի տարածմանն ու արմատավորմանը։ Այդ նպատակով այստեղ ո՛չ միայն կազմակերպվել է կոմբինատի առաջավորների փորձի ուսումնասիրում, այլև բրիգադաներ են ուղարկել Մոսկվայի, Իվանովոյի և Կինեշմայի համանման ձեռնարկությունները՝ նրանց առաջավոր փորձին ծանոթանալու և իրենց մոտ այն ներդնելու նպատակով։ Գործվածքային ֆաբրիկայում կազմակերպվել է առաջավոր փորձի ուսումնասիրման դպրոց, որտեղ ենթա-



վարպետները և ջուլհակուհիները ծանոթանում են Միության անվանի ջուլհակուհիների աշխատանքի ձևերին ու մեթոդներին։

Պարտիական կազմակերպությունը նշանակալի գործ է կատարում կոմբինատի աշխատողների դաստիարակության ուղղությամբ։ Կոմունիստները և անպարտիականների ճնշող մեծամասնությունն ընդգրկված են քաղաքական լուսավորության ցանցի տարբեր օղակներում, կազմակերպված է բանվորների տեխնիկական, ինչպես և ղեկավար աշխատողների տնտեսագիտական ուսուցումը. շատ երիտասարդներ սովորում են բանվորի դպրոցներում, տեխնիկումներում, բուհերում։ Վերանայվել և ավելի ազդեցիկ են դարձել գաղափարական ներգործման ձևերն ու մեթոդները։

Այս ամենի արդյունքը եղավ այն, որ եթե 1962 թվականին արտադրական նորմաները կատարող բանվորների թիվը կազմում էր ընդամենը 45 տոկոս, ապա այժմ հասնում է 96-ի։ Կոմբինատը սիստեմատիկաբար կատարում և գերակատարում է արտադրական պլանները. այս տարվա առաջին եռամսյակում սոցիալիստական մրցության մեջ արժանացավ երկրորդ կարգի մրցանակի, իսկ երկրորդ եռամսյակում՝ առաջին կարգի, շահելով ՀԱՄԽ-ի և Հայկ. ՍՍՌ ժողտնտխորհի փոխանցիկ դրոշը։

Գործարար մթնոլորտում անցավ Ստեփանավանի արտադրական վարչության Սվերդլովի կոլտնտեսության պարտիական կազմակերպության հաշվետու-ընտրական ժողովը։ Այստեղ պարտիական կազմակերպության բոլոր անդամներն էլ անմիջականորեն աշխատում են արտադրության մեջ, նրա վճռական տեղամասերում, ապահովում են իրենց ավանգարդային դերը, հանդիսանում մասսաների կազմակերպիչը։ Ինչպես պետք էր սպասել, կոլտնտեսության գործերն էլ լավ են ընթանում։

Պարտիական ժողովում պարզվեց, որ ընթացիկ տարվա ութ ամիսների ընթացքում, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, կոլտնտեսությունն արտադրել է 1353 ցենտներ ավելի կաթ, մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունն ավելացել է 400 կիլոգրամով. գերակատարվել է պետությանը կաթի վաճառքի տարեկան պլանը։ Արտադրական վարչությունում սվերդլովցիներն առաջինը կատարեցին պետությանը հացահատիկ վաճառելու պլանը, հանրային անասնապահությունն ապահովված է անհրաժեշտ քանակությամբ կերով։

Սակայն ամեն տեղ չէ, որ դրությունը լավ է։ Պարտիական ժողովներում կոմունիստները խոսում էին արտադրության չօգտագործված ռեզերվների ու հնարավորությունների մասին, բացահայտում մեր աշխատանքի ստվերոտ կողմերը։ Դեռևս ունենք արդյունաբերական ձեռնարկություններ, որոնք չեն կատարում պետական առաջադրանքները, իսկ շատերը կատարելով համախառն արտադրանքի պլանները, չեն կատարում տեխնիկա-տնտեսական մյուս ցուցանիշները, թողարկում են անորակ արտադրանք. շինարարական կազմակերպությունները միշտ չէ, որ ժամանակին ու որակով են շահագործման հանձնում արտադրական, կուլտուր-կենցաղային օբյեկտները և բնակելի տները։ Մի շարք կոլտնտեսություններ ու սովխոզներ տևականորեն ետ են մնում, անբավարար են օգտագործում իրենց հնարավորությունները, ցածր բերք են ստանում, դանդաղ է զարգանում հանրային անասնաբուծությունը։

Սիսիանի արտադրական վարչության Որոտանի սովխոզի պարտիական կազմակերպության ժողովում կոմունիստները խոսեցին այն մասին, որ իրենց

մոտ վատ են օգտագործվում եղած հնարավորությունները։ Վերջին տարիներս այստեղ զգալիորեն պակասել է խոշոր և մանր եղջերավոր անասունների գլխաքանակը, չեն ավելացել կովերի գլխաքանակն ու անասունների մթերատվությունը։ Մեծ չափերի են հասնում կովերի ստերջությունը և անասունների անկումները, եղել են չարաշահումների դեպքեր։ Նման վիճակն արդյունք է սովխոզում պարտիական կազմակերպական և դաստիարակչական աշխատանքի ցածր մակարդակի. պարտբյուրոն ինչպես հարկն է չի զբաղվել սովխոզի գործունեության արմատական հարցերով, ընդունած որոշումների կատարման ստուգմամբ։ Կոմունիստներից շատերը արտադրության մեջ չեն ապահովում իրենց ավանգարդային դերը, ճիշտ չեն տեղաբաշխված կադրերը։ Այսպես. ոչխարաբուծական ֆերմայում շարքային աշխատանքում չկա ոչ մի կոմունիստ, խոշոր եղջերավոր անասունների ֆերմաներն ապահովված չեն բարեխիղճ, մշտական աշխատողներով։ Սովխոզում ցածր է աշխատանքային կարգապահությունը, գյուղատնտեսական շատ աշխատանքներ անորակ են կատարվում, դիրեկցիան հոգ չի տանում բանվոր-ծառայողների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման մասին։ Ճիշտ վարվեցին կոմունիստները՝ խիստ քննադատելով սովխոզի պարտբյուրոյի և դիրեկտորի գործունեությունը, թարմացնելով նորընտիր պարտբյուրոյի կազմը։

Շատ պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները մեծ պահանջներ ներկայացնելով պարտբյուրոներին ու նրանց քարտուղարներին՝ քննադատում էին այն կոմունիստներին, որոնք վատ են կատարում իրենց պարտականությունները։ Արտաշատի Մեծ Վեդու կոլտնտեսային պարտիական կազմակերպության ժողովում դառն ու ճշմարտացի խոսքեր ասվեցին պարտկազմակերպության այն առանձին անդամների հասցեին, որոնք հանրային աշխատանքը լքել են և գյուղատնտեսական աշխատանքների եռուն շրջանում գյուղից ինքնակամ հեռացել։

Այնտեղ, որտեղ պարտիական կազմակերպությունը և կոմունիստները լավ են զբաղվում տնտեսության գործերով, լավ է կազմակերպված պարտիական վերահսկողությունը, որտեղ բարձր է գաղափարական աշխատանքի մակարդակը, այնտեղ լավ են ընթանում նաև աշխատանքները և հակառակը։

Հաշվետու-ընտրական ժողովների արդյունքները ցույց են տալիս, որ պարտիական կազմակերպություններն ու կոմիտեները առաջին հերթին պետք է բարձրացնեն յուրաքանչյուր կոմունիստի ակտիվությունն ու պատասխանատվությունը։ Բարձր պահանջկոտության հետ միասին պետք է ճիշտ դասավորել կոմունիստների ուժերը արտադրության վճռական տեղամասերում, այսինքն՝ յուրաքանչյուր կոմունիստի այնպիսի աշխատանք տալ, որ նա կարողանա ավելի լավ դրսևորել իրեն, լավ օգտագործել իր գիտելիքները, կարողությունն ու փորձը։

Պարտիայի կողմից առաջադրված խնդիրների հաջող կատարման համար անհրաժեշտ է բարձրացնել սկզբնական պարտիական կազմակերպությունների մարտունակությունը, նրանց ակտիվությունն ու ձեռներեցությունը։ Այդ մեծ չափով կախված է պարտիական կազմակերպությունների քարտուղարներից, նրանց կազմակերպական ընդունակություններից, փորձից, գիտելիքներից, մարդկանց ղեկավարելու հմտությունից, այն բանից, թե որքանով են նրանք տիրապետում պարտիական շինարարության հարցերին։

Սկզբնական պարտիական կազմակերպությունների բյուրոների և քարտուղարների կազմի նորացմամբ մեծ թվով նոր մարդիկ են ընդգրկվել պարտիական աշխատանքում։ Բավական է ասել, որ այս տարի ռեսպուբլիկայի սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների մոտ 50, իսկ բյուրոների կազմի մոտ 60 տոկոսը նոր մարդիկ են։ Դրանք մեծ մասամբ գրագետ, սկզբունքային ու գործունյա ընկերներ են, որոնք, անշուշտ, թարմ հոսանք կմտցնեն պարտիական կազմակերպությունների գործունեության մեջ։ Սակայն նրանց մի զգալի մասը չունի պարտիական աշխատանքի փորձ։ Անհրաժեշտ է, որ պարտիական կոմիտեները լրջորեն զբաղվեն պարտիական կազմակերպությունների քարտուղարների և, հատկապես առաջին անգամ ընտրված քարտուղարների ուսուցման ու դաստիարակության գործով։ Թերևս հարկավոր կլինի նրանց համար առաջին հերթին կազմակերպել 2—3 սեմինար պարապմունք, պարզաբանել ներպարտիական շինարարության մի շարք հարցեր, օրինակ՝ ինչպես նախապատրաստել ու անցկացնել պարտիական ժողովը, ինչպես վարել պարտիական տնտեսությունը և կազմակերպել պարտիայի շարքերի ընդունելությունը, իրականացնել վերահսկողությունը ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ, ծանոթացնելով նրանց ՍՄԿՊ Կենտկոմի հրահանգներին և վերադաս պարտիական օրգանների կարևորագույն որոշումներին։ Ապա դրան պետք է հաջորդի պարտիական կոմիտեների պլանավորված, սիստեմատիկ և շերտավորված աշխատանքը պարտիական կազմակերպությունների բոլոր քարտուղարների հետ։

Պարտիական կոմիտեի կողմից պարտկազմակերպության քարտուղարների հետ տարվող աշխատանքի և նրանց ցույց տրվող օգնության ձևերն ու մեթոդները բազմազան են։

Դրանցից մեկը պարտիական կոմիտեների բյուրոներում սկզբնական պարտիական կազմակերպությունների և նրանց քարտուղարների հաշվետվությունների քննարկումն է։ Դժբախտաբար վերջին տարիներս պարտիական շատ կոմիտեներ, օրինակ, ՀԿՊ Երևանի Լենինյան շրջկոմը, Լենինականի քաղկոմը և մի շարք այլ կոմիտեներ, ցավոք, վերջին երկու տարում իրենց նիստերում քիչ են քննարկել պարտկազմակերպությունների հաշվետվությունները։ Իսկ այդ շատ կարևոր է, քանի որ այս կամ այն սկզբնական պարտկազմակերպության հաշվետվությունների կապակցությամբ ընդունված որոշման մեջ ամփոփվում է պարտիական աշխատանքի լավագույն փորձը կամ քննադատվում պարտիական ղեկավարման ոչ ճիշտ ձևերն ու մեթոդները. այդ ուսանելի է բոլոր պարտիական կազմակերպությունների համար։ Մեծ օգուտ են տալիս պարտիական կազմակերպությունների քարտուղարների խորհրդակցություններն ու սեմինարները։

Պարտիական կազմակերպությունների քարտուղարների օգնության ամենաարդյունավետ, ես կասեի ամենակարևոր ձևերից է պարտիական ղեկավար աշխատողների ամենօրյա շփումը և կենդանի կապը քարտուղարների հետ։ Պարտիական օրգանների վերակառուցումից հետո պարտկոմների համար լայն հնարավորություններ են ստեղծվել ավելի գործնական, արդյունավետ և շերտավորված օգնություն և ղեկավարություն ցույց տալու սկզբնական կազմակերպություններին ու նրանց քարտուղարներին։ Այդ գործում պետք է ներգրավել պարտիական ողջ ապարատը՝ քարտուղարներին, նրանց տեղակալներին, տեսուչ-պարտկազմակերպիչներին, հրահանգիչներին, պարտիական կոմիտեների անդամներին և արտահաստիքային աշխատողներին։

Պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները, բացահայտելով մեր աշխատանքի թերությունները, բացթողումները, անում էին բազմաթիվ խելացի առաջարկություններ մեր պարտիական, սովետական, տնտեսական և այլ օրգանների աշխատանքը բարելավելու ու կատարելագործելու նպատակով։ Պարտիական բյուրոների և պարտիական կոմիտեների խնդիրն է՝ ուշի-ուշով հաշվի առնել կոմունիստների կողմից արված ամեն մի արժեքավոր քննադատական դիտողություն և առաջարկություն, գործնական միջոցառումներ մշակել դրանց իրականացման համար։ Լավ կլինի, եթե սկզբնական պարտիական կազմակերպության բյուրոները, պարտկոմները պարբերաբար իրենց ժողովներում ու նիստերում քննության առնեն կոմունիստների արած քննադատական դիտողությունների ու առաջարկությունների կենսագործման ընթացքը։

Պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում խոսվել է ո՛չ միայն աշխատանքում տեղ գտած թերությունների մասին, այլև ընդհանրացվել պարտիական աշխատանքի դրական փորձը։ Պարտիական կոմիտեների խնդիրն է՝ ամփոփել, ի մի բերել, ընդհանրացնել ու տարածել այդ ուսանելի փորձը։

Մեծ անելիքներ ունեն այժմ մեր պարտիական կազմակերպությունները. պետք է հաջողությամբ ավարտել 1963 թ. տնտեսական տարին և պատվով դիմավորել ՀԿՊ XXIII համագումարը։ Պարտկոմների պարտքն է՝ օգնել սկզբնական պարտկազմակերպություններին՝ կատարելագործելու պարտիական աշխատանքի ձևերն ու մեթոդները քաղաքական-գաղափարական և կազմակերպական աշխատանքում, բարձրացնել նրանց մարտունակությունն ու դերը՝ տնտեսական և կուլտուրական շինարարության հարցերի լուծման գործում։

Ա. ՄԿՐՏՉՅԱՆ
ՀԿՊ Կենտկոմի պարտիական օրգանների
բաժնի վարիչի տեղակալ

## ՆԱԽ ԵՎ ԱՌԱՋ ԷԿՈՆՈՄԻԿԱՆ

Գյուղատնտեսական արտադրությունը բարձրացնելու, կոլտնտեսություններն ու սովխոզները տնտեսապես և կազմակերպչորեն ամրապնդելու ուղղությամբ վերջին տասնամյակում մեր պարտիան իրականացրեց մի շարք արմատական միջոցառումներ. մտցվեց պլանավորման նոր սիստեմ, ամրապնդվեց տնտեսությունների նյութատեխնիկական բազան, վերականգնվեց գյուղատնտեսական մթերքների արտադրության գործում կոլտնտեսականների և սովխոզի բանվորների նյութական շահագրգռվածությունը, տնտեսություններն ամրապնդվեցին գործիմաց ղեկավար կադրերով և այլն։ Ակնառու են ձեռք բերված հաջողությունները։

Այդ մասին է վկայում էջմիածնի արտադրական վարչության գոտու շատ կոլտնտեսությունների ու սովխոզների գործունեությունը։ Վերջին տասը տարում մեզ մոտ բանջարեղենի արտադրությունն ավելացել է 3,2 անգամ, խաղողինը՝ 2,3, հացահատիկինը՝ 1,5, մսինը՝ 1,2, կաթինը՝ 1,5, ձվինը՝ 2,2 և եգիպտացորենի սիլոսինը՝ 24,5 անգամ։ Կրկնապատկվել են կոլտնտեսությունների եկամուտները։



Գյուղատնտեսական մթերքների արտադրության ծավալի մեծացման հետ մեկտեղ ու դրան համապատասխան տարեցտարի ավելացել է պետությանը վաճառվող մթերքների քանակը։ Անգամ գյուղատնտեսական աշխատանքների համար ընթացիկ տարվա կլիմայական անբարենպաստ ու դժվարին պայմաններում գյուղի աշխատավորները հերոսաբար հաղթահարեցին եղած դժվարությունները և գործադրում են բոլոր ջանքերը հաջողությամբ փակելու տարին։

Անցած տարիներին մեծ գործ է կատարվել տնտեսությունների էկոնոմիկան բարձրացնելու, տնտեսապես և կազմակերպորեն դրանք ամրապնդելու ուղղությամբ։ Երբեմնի ետ մնացող բազմաթիվ տնտեսություններ, ինչպիսիք են՝ պարտիայի XXII համագումարի, պարտիայի XVIII համագումարի անվան, Ն. Զարբախի, Հաղթանակի, Դավիթաշենի, Սպանդարյանի, Նոր Կյանքի, Սամաղարի, Վ. Քյոլանլուի և այլ կոլտնտեսություններ դարձել են արտադրական վարչության առաջավոր ու օրինակելի տնտեսություններ։ Սակայն դրանց կողքին դեռևս կան զգալի թվով կոլտնտեսություններ և սովխոզներ, որոնք աշխատում են վնասով, անշահութաբեր են, քիչ արտադրանք են տալիս հարյուր հեկտար հողատարածության հաշվով, վատ են օգտագործում իրենց ռեզերվներն ու հնարավորությունները։

Ներկայումս էջմիածնի արտադրական վարչության 68 կոլտնտեսություններից ու սովխոզներից 14-ն իրենց համընդհանուր տնտեսական մակարդակով ոչ միայն ետ են մնում մեր առաջավոր տնտեսություններից, այլև նրանց գործունեության արդյունքները ցածր են արտադրական վարչության միջին ցուցանիշներից։ Չնայած դրան, զարգացման տենդենցն ընթանում է հօգուտ առաջավոր տնտեսությունների թվի ավելացման։ Այսպես, օրինակ, եթե մինչև 1952 թվականը տնտեսությունների մոտ 65 տոկոսը տնտեսապես և կազմակերպչորեն թույլ էր, ապա այժմ այն կազմում է մոտ 20 տոկոս։

Տնտեսությունների ետ մնալու հիմնական պատճառները բացահայտելու նպատակով ցանկանում ենք ցուցադրել համարյա միևնույն պայմաններում գտնվող տնտեսությունների աշխատանքի արդյունքների համեմատական աղյուսակը (1962 թ.)։

| Տնտեսություններ | Մեկ հեկտարի միջին բերքը (ցենտներով) | | | | 100 հեկտար հողատարածության դիմաց անասնաբուծական մթերքներ (ցենտ.) | | Մեկ կովի կաթնատ. կգ | Մեկ աշխօրի արժեքը վճարված դրամի (ռուբ.) |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| | բամբակ | հացահատիկ | բանջարեղեն | խաղող | կաթ | միս | | |
| | Առաջավոր տնտեսություններ | | | | | | | |
| Շահումյանի անվ. կոլտնտեսություն | — | 25 | 450 | 138 | 1202 | 176 | 4118 | 6,19 |
| XXII պարտհամագումարի անվ | — | 24 | 300 | 121 | 810 | 118 | 4098 | 6,48 |
| Վ. Քյոլանլուի կոլտնտեսություն | 28 | 20 | 386 | 160,5 | 353,2 | 149,3 | 2213 | 3,40 |
| Սամաղարի » » | 32,7 | 28,4 | 433,6 | 132 | 385,2 | 70,4 | 2264 | 4,15 |
| | Ետ մնացող տնտեսություններ | | | | | | | |
| Այառլուի կոլտնտեսություն | — | 11 | 110 | 7 | 70,8 | 20 | 680 | 0,87 |
| Մեծամորի » » | 9,9 | 15 | 64 | 86 | 296,3 | 80 | 1638 | 1,93 |
| Շորբուլաղի » » | — | 7 | 120 | 40 | 121 | 37 | 1508 | 0,80 |
| Ալքզբեկովի սովխոզ | — | 30 | 179 | 29 | 271 | 21 | 2331 | — |

Վերոհիշյալ աղյուսակից պարզ երևում է, թե աշխատանքի հիմնական արդյունքներով որքան մեծ է տարբերությունն այդ երկու խմբի տնտեսություններում։ Մեր առաջավոր տնտեսությունների համեմատությամբ ետ մնացողները 1962 թվականին ստացել են՝ հացահատիկի, բամբակի, խաղողի ու բանջարեղենի 2—4 անգամ պակաս բերք, 2—3 անգամ՝ քիչ կաթ և այլն։ Ինչպես հայտնի է, գյուղատնտեսական արտադրության մակարդակի, հողի արդյունավետ օգտագործման հիմնական չափանիշը հարյուր հեկտար հողատարածության դիմաց արտադրվող մթերքների քանակն է։ Անցյալ տարի արտադրական վարչության կոլտնտեսություններում ու սովխոզներում, միջին հաշվով, այդ նույն տարածությունից ստացվել է միս՝ 67,7, կաթ՝ 338 և բուրդ՝ 2,6 ցենտներ, 316 հազար հատ ձու։ Ահա երկու կոլտնտեսություններ՝ Վ. Քյոլանլուն և Այառուն. դրանցից առաջինը յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության հաշվով ստացել է 353,2 ցենտներ կաթ և 149,3 ցենտներ միս. երկրորդը՝ համապատասխանաբար 70,8 և 20 ցենտներ։ Ոչ միայն տարբեր է այդ երկու կոլտնտեսությունների միջև եղած արտադրության մակարդակը, այլև Այառուի կոլտնտեսության ցուցանիշները մոտ 3,5—4,5 անգամ պակաս են արտադրական վարչության միջին ցուցանիշներից։ Սամաղարի և Աղջաղալայի կոլտնտեսությունները գտնվում են կողք-կողքի, ունեն համանման բնակլիմայական ու հողային պայմաններ, բանվորական ուժ, բայց նրանց գործունեության արդյունքներն իրարից խիստ տարբեր են։

Ետ մնացող տնտեսությունները կազմակերպչորեն ու տնտեսապես ամրապնդելը, նրանց էկոնոմիկան բարձրացնելը դժվար գործ է և, պահանջվում են հարատև ու եռանդուն ջանքեր։ Անհրաժեշտ է ամենից առաջ խոր ու բազմակողմանի վերլուծել յուրաքանչյուր տնտեսության ետ մնալու հիմնական պատճառները, բացահայտել կադրերի ընտրության ու դաստիարակության, արտադրության տեխնիկայի ու հողի օգտագործման, ցանքերի ստրուկտուրայի ու տնտեսության ճյուղերի մասնագիտացման, ինչպես և աշխատանքի կազմակերպման ու վարձատրման ասպարեզներում գոյություն ունեցող թերությունները ու վրիպումները և առաջավոր տնտեսությունների օրինակով ու փորձով բարձրացնել նրանց էկոնոմիկան։

Հիմնական հարցը համարելով կադրերի ընտրությունն ու դաստիարակությունը, ՀԿՊ Էջմիածնի պարտիական կոմիտեն սկզբնական պարտիական կազմակերպությունների հետ միասին տարվա սկզբին վերանայեց կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավար կադրերը՝ աշխատանքից ազատվեցին մի շարք կոլտնտեսությունների նախագահներ, սովխոզի դիրեկտորներ, բրիգադավարներ, ֆերմայի վարիչներ ու մասնագետներ, որոնք թույլ էին կամ անընդունակ՝ ղեկավարելու իրենց վստահված տնտեսությունը։ Այսպես, աշխատանքից ազատվեցին Արևաշատի, Ապագայի, Աղջաղալայի, Ենգիջայի կոլտնտեսությունների նախագահները, որոնք չունեին ոչ միայն գյուղատնտեսական մասնագիտական կրթություն, այլ կազմակերպական ջիղ. նրանց փոխարեն նախագահներ ընտրվեցին ագրոնոմներ Ն. Մխիթարյանը, Է. Նազարյանը, Ջ. Բաղդասարյանը, Պ. Հակոբյանը, որոնք չեն խնայում իրենց ուժերն ու գիտելիքները այս տարվա դժվարին պայմաններում հասնելու լավ արդյունքների։ Ճիշտ ընտրելով կադրերը, մեր արտադրական վարչությունը և պարտկոմը միաժամանակ ամեն կերպ օգնում են նրանց՝ ամրապնդելու տնտեսությունների էկոնոմիկան, հմտորեն կազմակերպելու արտադրությունը։



Պրակտիկան լիովին հաստատում է այն անվիճելի ճշմարտությունը, որ ամբողջ գործը մարդկանց, ղեկավար կադրերի մեջ է։

Շատերն են ճանաչում կոլտնտեսային արտադրության հմուտ կազմակերպիչ, պարտիայի XXII համագումարի անվան կոլտնտեսության նախագահ, Սոցիալիստական աշխատանքի հերոս Ա. Մեժլումյանին, որը լավ գիտե գյուղատնտեսության էկոնոմիկան և իր գործունեությամբ վայելում է աշխատավորների սերն ու համակրանքը։ Նրա ղեկավարած կոլտնտեսության բոլոր ճյուղերը բարձր եկամտաբեր են, յուրաքանչյուր կոլտնտեսական այստեղ դաստիարակվում է հանրային գործի նկատմամբ անձնական պատասխանատվության ու հասարակական պարտքի գիտակցության ոգով։

Այդ նույն բանը կարելի է ասել Վ. Քյոլանլուի, Շահումյանի, Ն. Կյանքի, Հաղթանակի, Սամաղարի, Ն. Խաթունարխի, Շենգավիթի, Ն. Ջեյվայի, Այգեշատի, Արշալույսի կոլտնտեսությունների նախագահների, Լենինի և Միկոյանի անվան սովխոզների դիրեկտորների և ուրիշների մասին, որոնց ջանքերով վերոհիշյալ տնտեսություններում հետևողականորեն ավելանում են գյուղատնտեսական մթերքների արտադրությունը և հանրային եկամուտները։

Եթե կարողանանք հասնել այն բանին, որ մեր բոլոր ետ մնացող տնտեսություններն ապահովվեն գործիմաց ու եռանդուն կազմակերպող կադրերով, ապա լուծած կլինենք շատ հարցեր։ Հենց այդ էլ կազմում է մեր պարտիական կոմիտեի գործունեության ելակետը։ Մենք ղեկավարվում ենք լենինյան այն սկզբունքով, որ կադրերը պետք է գնահատվեն միայն ու միայն ըստ նրանց գործնական աշխատանքի արդյունքի և ոչ թե ըստ ընկերական-ընտանեկան հարաբերությունների։ Արտադրության ղեկավար կադրերի նկատմամբ ցուցաբերած պարտիական հոգատարությունը մենք ներդաշնակում ենք հանձնարարված գործի նկատմամբ նրանց պատասխանատվության բարձրացման հետ։ Պարտիական կոմիտեն ժամանակին բացահայտում ու կանխում է նրանց աշխատանքում նկատված թերությունները, սխալները, դաստիարակում իրենց իսկ սեփական թերությունների վրա։ Այդպես վարվեցինք, օրինակ, Արաքսի և Վ. Խաթունարխի կոլտնտեսությունների նախագահների հետ, որոնք, չնայած գործի հանդեպ ունեցած իրենց նվիրվածությանն ու աշխատանքի հարուստ փորձին, անցյալ տարի լարված չաշխատեցին, որի հետևանքով նրանց ղեկավարած տնտեսություններում տեղ գտան որոշ թերություններ ու բացեր։ Մենք օգնեցինք նրանց հաղթահարելու այդ թերությունները և բարձրացնելու տնտեսության ղեկավարման մակարդակը։

Առանձնակի ուշադրություն ենք դարձնում ղեկավար կադրերի տնտեսագիտական ուսուցմանը։ Այդ նպատակով պարտիական կոմիտեին առընթեր գործում է գյուղատնտեսական գիտության նվաճումների և առաջավոր փորձի ուսումնասիրության համալսարան, ուր իրենց տնտեսական գիտելիքները հարստացնում են կոլտնտեսությունների նախագահները, սովխոզների դիրեկտորները, սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարները, պարտիական, սովետական օրգանների և արտադրական վարչության աշխատողները։ Ընթացիկ տարում զգալի չափով ավելացել է պարտիական քաղաքական լուսավորության ցանցում կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող խմբակների, սեմինարների և առաջավոր փորձի ուսումնասիրման դպրոցների թիվը։ Միաժամանակ պարտիական կոմիտեի բյուրոյի նիստերում հաճախակի քննարկվում և ընդհանրացվում է առաջավոր տնտեսությունների աշխատանքի

ուսանելի փորձը, գործնական աշխատանք է կազմակերպվում այն ամենուրեք արմատավորելու համար։

Կոլտնտեսային և սովխոզային արտադրության կոլեկտիվ կազմակերպիչը սկզբնական պարտիական կազմակերպությունն է։ Այդ իսկ պատճառով անհրաժեշտ է բարձրացնել յուրաքանչյուր պարտկազմակերպության մարտունակությունը, ճիշտ տեղաբաշխել կոմունիստների ուժերն արտադրության վճռական ճյուղերում և զարգացնել նրանց պատասխանատվությունն ու ձեռներեցությունը հանրային գործերում։

Այդ առումով խիստ կարևոր է արտադրության առաջավոր մարդկանց հաշվին հատկապես թույլ տնտեսությունների սկզբնական պարտիական կազմակերպությունների անդամների պարբերաբար համալրումը, քանի որ վերոհիշյալ տնտեսություններում դանդաղ են աճում ՍՄԿԿ շարքերը, պարտկազմակերպությունները սակավաթիվ են։ Օրինակ, եթե Ն. Ջրաբերի, Սամաղարի և XXII համագումարի անվան առաջավոր տնտեսություններում աշխատում են 146 կոմունիստ, ապա Այղըլուի, Շորբուլաղի և Մեծամորի ետ մնացող տնտեսություններում՝ 46 կոմունիստ։ Ընթացիկ տարում նկատելի աշխատանք կատարվեց արտադրության մեջ կոմունիստների ուժերի ճիշտ դասավորման ուղղությամբ. այժմ շատ տնտեսություններում յուրաքանչյուր կոմունիստ որոշակի գիտե, ինչի համար է ինքը պատասխանատու։

Սակայն այս ասպարեզում անելու շատ բան ունենք։ Դեռևս վատ են աշխատում Շորբուլաղի, Այղըլուի, Մեծամորի և Ն. Արևշի ետ մնացող կոլտնտեսությունների սկզբնական պարտիական կազմակերպությունները, չեն կարողանում համախմբել կոմունիստներին և մոբիլիզացնել գյուղի աշխատավորների ուժերն իրենց տնտեսությունների առջև դրված խնդիրները հաջողությամբ կենսագործելու համար։



Ետ մնացող տնտեսություններում առանձնապես վատ է աշխատանքի կազմակերպման ու վարձատրության, աշխատավորների նյութական շահագրգռվածության դրվածքը։ Առանձին տնտեսություններում դեռևս կայուն չէ արտադրական բրիգադաների անձնակազմը, գոյություն ունի աշխատուժի հոսունություն։ Վերոհիշյալ տնտեսություններում շատ քիչ մարդ են մշտապես աշխատում անասնաբուծության բնագավառում, շատերը խուսափում են ֆերմաներում աշխատելուց։ Անցյալ տարի Շորբուլաղի պարտկազմակերպությունը փոխանակ ոչխարաբուծական ֆերման ամրապնդելու լավագույն ու մնայուն կադրերով, բարվոք համարեց կոմունիստներին հերթով՝ մի քանի օրով ուղարկել ոչխարներ պահելու, ստեղծելով դիմազրկություն ֆերմայում։

Աղջաղալայի, Ղարղաբազարի, Այղըլուի, Մեծամորի, Սովետաշենի և մի շարք այլ տնտեսություններում կոլտնտեսականները սիստեմատիկաբար չեն ավանսավորվում և նյութապես խրախուսվում։ Այս ամենի հետևանքով ընկած է աշխատանքային կարգապահությունը, աշխատունակների 20—30 տոկոսը չի մասնակցում հանրային գործերին։ Աղջաղալայում և Շորբուլաղում տասնյակ կոլտնտեսականներ ինքնագլուխ թողել են կոլտնտեսությունը և աշխատանքի մտել զանազան հիմնարկներում։ Վերոհիշյալ կոլտնտեսություններում աշխատավորները բացակայում են աշխատանքից առանց թույլտվության, ներկայանում են աշխատանքի և վերադառնում՝ երբ ցանկանան։ Բոլորովին չի կիրառվում անհատական և մանր խմբային գործարքային աշխատանքը։

Կոլտնտեսություններն ու սովխոզները գիտակ ու լավագույն կազմակերպիչներով ապահովելու հետ մեկտեղ, անհրաժեշտ է լրջորեն զբաղվել տնտեսությունների նյութատեխնիկական ամուր բազայի ստեղծման ու ամրապնդման, արտադրության ռեզերվների խելացի օգտագործման հարցերով։ Որքան էլ այդ մասին լավ որոշումներ ընդունենք ու գեղեցիկ ճառեր ասենք, միևնույն է, գործը դրանով չի բարելավվի. պահանջվում են կազմակերպչական քրտնաջան աշխատանք, անդուլ ջանքեր։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ մեր արտադրական վարչության տնտեսություններն ունեն զարգացման լայն հնարավորություններ, հարուստ ռեզերվներ, որոնց բացահայտումն ու օգտագործումը պարտիական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է։ Այդ վերաբերում է հողի արդյունավետ օգտագործմանը, ցանքատարածությունների կառուցվածքի ու անասունների ցեղայնության բարելավմանը, աշխատատար պրոցեսների մեքենայացմանը, բանվորական ուժի նպատակահարմար ու ռացիոնալ օգտագործմանը և այլն։

Այս տարի մայիս ամսին, երբ մեր պարտիական կոմիտեն մշակում էր ետ մնացող կոլտնտեսություններն առաջավորներին հասցնելու միջոցառումները, մենք առանձին ուշադրություն հատկացրինք տնտեսությունների մասնագիտացման և եկամտաբեր ճյուղերի զարգացման, նյութատեխնիկական անհրաժեշտ բազա ստեղծելու հարցերին։ Այսպես, օրինակ, խորհուրդ տվինք Աղջաղալայի կոլտնտեսության կոմունիստներին՝ եղած ոռոգելի հողերի վրա հիմնել նոր տնկարքներ և աճեցնել հարյուր հեկտարից ավելի խաղողի ու պտղատու այգիներ, դրանով իսկ ավելացնել տնտեսության եկամտաբերությունը։ Պարտկոմը հանձնարարեց նրանց՝ իրենց մոտ կիրառել Մասիսի սովխոզի փորձը և հարթ տարածություններում քառակուսի եղանակով խաղողի այգիներ տնկել, որը մեծ չափով կհեշտացնի այգու մշակումը, կխնայվեն աշխատող ձեռքերը։ Միաժամանակ մեր հանձնարարությամբ գործնական միջոցառումներ են մշակվել ու իրականացվում են անասունների տոհմային կազմը բարելավելու նպատակով։

Հաշվի առնելով այն հանգամանքը, որ Սովետաշենի կոլտնտեսությունը չունի ջրովի հողատարածություններ, հետևապես՝ կերի բազա, այստեղ ձեռնտու չէ պահել խոշոր եղջերավոր անասուն ու խոզ։ Մինչդեռ համեմատաբար լավ պայմաններ կան ոչխարաբուծության զարգացման համար. մոտ վեց ամիս ոչխարները կարելի է արածացնել հեռավոր արոտավայրերում, իսկ մնացած ամիսներին՝ գյուղի շրջակայքում. բացի այդ, հնարավոր է խոտի որոշ պաշարներ հավաքել արոտատեղի խոտհարքներից։ Ոչխարաբուծությունը պետք է զարգացնել նաև Այղըլուի կոլտնտեսությունում։

Ղարղաբազարի և Մեծամորի կոլտնտեսություններում պետք է լուծվի աղուտ հողերի արագ յուրացման հարցը, որը հնարավորություն կտա այդ տարածությունների վրա զարգացնելու այգեգործությունը։ Թույլ կոլտնտեսություններում ու սովխոզներում պակաս է բանվորական ուժը. այդ հարցը կարելի է լուծել միայն գյուղատնտեսական կուլտուրաների մշակման և անասնաբուծության աշխատատար պրոցեսների մեքենայացման միջոցով։ Այդ ուղղությամբ իրականացվում են մի շարք գործնական միջոցառումներ։ Սա-

կայն կան հարցեր, որոնք կարելի է հեշտությամբ լուծել։ Օրինակ, սոխի բերքահավաքը աշխատատար ծանր պրոցես է և պահանջում է մեծ քանակությամբ բանվորական ձեռքեր։ Մեր առաջավոր տնտեսությունների մեխանիզատորների ջանքերով ստեղծվել են որոշ հարմարանքներ, որոնք թեթևացնում ու հեշտացնում են բերքահավաքը։ Այդ փորձը, որն արդեն կիրառվում է Սամաղարում ու Արաքսում, պետք է արմատավորել բոլոր տնտեսություններում։ Մեծ արդյունք է տալիս բանջարա-բոստանային կուլտուրաների ցանքի և մշակության մեքենայացումը, որը, ցավոք, չի կիրառվում շատ տնտեսություններում։

Առհասարակ գիտության նորագույն նվաճումների և գյուղատնտեսության առաջավորների փորձի արմատավորման գործը դեռևս չի դարձել մեր վարչության տնտեսությունների պարտկազմակերպությունների ու մասնագետների առաջնահերթ խնդիրը։

Հողն արդյունավետ օգտագործելու հարուստ փորձ ունի Ն. Կողբի կոլտնտեսությունը (նախագահ Ա. Սահակյան). օրինակ, անցյալ աշնանն այստեղ երեք հեկտար տարածության վրա ցանվել էր շաբդար, վաղ գարնանից այն հնձեցին ու կանաչ վիճակով տրվեց կովերին։ Մոտ երկու ամիս թվով 70 կով կերակրվում էին բացառապես այդ կերով։ Շաբդարի մեկ հեկտարից հավաքվեց ավելի քան 700 ցենտներ կանաչ զանգված։ Բացի այդ, հնձից հետո այդ հողատարածությունը դրվեց բանջարանոցային կուլտուրաների մշակության տակ։

Տնտեսապես թույլ կոլտնտեսություններում ու սովխոզներում աշխատանքի վատ կազմակերպմամբ և արտադրողականության ցածր մակարդակով է բացատրվում գյուղատնտեսական մթերքների արտադրության բարձր ինքնարժեքը։ Եթե արտադրական վարչությունում մեկ ցենտներ կաթի ինքնարժեքը միջին հաշվով կազմում է 12,5, իսկ մսինը՝ 95 ռուբլի, ապա Այառլուում մեկ ցենտներ կաթինը հասնում է 41, Սովետաշենում՝ 23,8 ռուբլի. տավարի մսի մեկ ցենտներինը՝ Մեծամորում՝ 158, Այառլուում՝ 157 ռուբլի։ Իհարկե, այսպիսի բարձր ինքնարժեքը ծանր կացության առաջ կկանգնեցնի տնտեսությանը։ Մեր պարտիական կազմակերպություններն սկսել են մեծ ուշադրություն հատկացնել այդ հարցին, պայքար են ծավալել աշխատանքի ու միջոցների նվազագույն ծախսումներով ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ արտադրելու համար։

Ետ մնացող կոլտնտեսություններն ու սովխոզները տնտեսապես և կազմակերպորեն ամրապնդելու խնդիրն այժմ հրատապ, տնտեսական և քաղաքական առաջնահերթ նշանակություն ունի։ Այդ նպատակով անհրաժեշտ է մշտապես բարելավել ու կատարելագործել պարտիական ղեկավարման ձևերն ու մեթոդները, ետ մնացող տնտեսություններին ցույց տալ բազմակողմանի օգնություն։

Ինչ խոսք, գյուղական պարտիական օրգանների վերակառուցումից հետո շատ է ընդլայնվել սպասարկվող տերիտորիան, ինչպես նաև կոլտնտեսությունների, սովխոզների, գյուղատնտեսական հումք վերամշակող ձեռնարկությունների ու կազմակերպությունների ցանցը։ Դրան համապատասխան ավելի քան երկու անգամ ավելացել է նաև սկզբնական պարտիական կազմակերպությունների թիվը։ Մեր արտադրական վարչության տերիտորիայում



ղած 170 սկզբնական պարտիական կազմակերպություններին օպերատիվ ղեկավարություն և օգնություն ցույց տալու նպատակով անհրաժեշտ է, որ պարտիական կոմիտեն գործի ճկուն, ստեղծագործաբար, վճռապես հրաժարվի աշխատանքի հին ձևերից, գաստրոլային, մակերեսային ղեկավարության վնասակար մեթոդներից։

Պարտիական, սովետական և տնտեսական օրգանները կոլտնտեսություններին ու սովխոզներին պետք է ցույց տան կոնկրետ ու նպատակային, չերտավորված գործարար օգնություն։ Այնտեղ, որտեղ տնտեսությունը ղեկավարում են ձեռնհաս, կազմակերպական ունակություններով օժտված մարդիկ, օգնության քիչ կարիք է զգացվում. այլ մոտեցում պետք է ունենալ թույլ տնտեսությունների նկատմամբ. այնտեղ պետք է լինել հաճախ և մնալ երկար ժամանակով, պարտկազմակերպությանը, վարչությանը տեղում ցույց տալ արդյունավետ օգնություն, որպես կանոն, չպետք է խնամակալել կադրերին, հանդես բերել ավելորդ մանրախնդրություն։

Պարտիական կոմիտեի խորհրդով մեր առաջավոր տնտեսությունները վերցրել են ետ մնացող տնտեսությունների շեֆությունը, որոնք չպետք է խնայեն իրենց ջանքերը պատվով կատարելու ստանձնած պարտավորությունները։ Գյուղատնտեսության գիտահետազոտական ինստիտուտները մեծ օգնություն կարող են ցույց տալ ետ մնացող տնտեսություններն ամրապնդելու, արտադրության մեջ գիտության նվաճումները և առաջավոր փորձը արմատավորելու գործում։

Դ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
ՀԿՊ էջմիածնի գյուղական արտադրական
կոմիտեի քարտուղար

# ՀԱՆՐԱԿԱՑԱՐԱՆԸ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՕՋԱԽ Է

Ստ. Մալխասյանցի հայերեն բացատրական բառարանում հանրակացարան բառի դիմաց կարդում ենք. «Շինություն բազմաթիվ սենյակներով կամ բնակարաններով, որտեղ որոշ հարմարություններով և իրենց ազատ կամքով ապրում են միևնույն պարապմունքի անձեր»։ Մեր կարծիքով վերոհիշյալ բացատրությունը լիակատար կլիներ, եթե դրան ավելացնենք՝ ապրում են ժամանակավորապես։ Եվ, իրոք, այլ բնակավայրերից ուսանելու եկած տղաներն ու աղջիկները ընդհանուր կացարանում են ապրում միայն ուսումնառման տարիներին, իսկ բանվորն ու մասնագետը՝ մինչև սեփական ընտանիք կազմելը կամ շինարարության ավարտը։

Մեր երկրում հանրային կացարանների երևան գալը և այդ ցանցի ընդլայնումն օրինաչափ երևույթ են։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի և սոցիալիզմի հաղթանակով արմատական վերափոխություններ տեղի ունեցան մեր հասարակական կյանքի ամբողջ կացութաձևում, մարդկային փոխհարաբերություններում. ստեղծվեց նոր կյանք, նոր կենցաղ, զարգացան կենցաղի հանրային ձևերը, ձևավորվեցին ու արմատավորվեցին սոցիալիստական հանրակեցության՝ ամենամարդկային ու ամենաբարոյական նորմերը։ Երկրի բոլոր շրջաններում, մասնավորապես երբեմնի ամայի վայրերում, կառուցողական աշխատանքների լայն թափի և կուլտուրական ռևոլյուցիայի իրագործման

պայմաններում անհրաժեշտություն զգացվեց տարեցտարի ընդլայնել հանրակացարանների ցանցը, որոնք դարձան նոր կենցաղավարության արմատավորման, կոլեկտիվիզմի ոգով աշխատավորներին դաստիարակելու լավագույն դպրոց։ Սովետական իշխանության տարիներին միլիոնավոր մարդիկ սերնդե-սերունդ ապրել են հանրակացարաններում և նրանցից շատերն այսօր էլ մեծ սիրով, երախտագիտությամբ ու մի առանձին խանդաղատանքով են վերհիշում անցրած համատեղ կյանքի, ջերմ ընկերասիրության երանավետ ժամանակները։

Մեր օրերում ուսանողական կամ բանվորական հանրակացարանը բարեկարգ ու լուսավոր շենք է կոմունալ-կենցաղային և կուլտուրական հանգստի անհրաժեշտ հարմարություններով։ Ռեսպուբլիկայի քաղաքներում և բանվորական ավաններում, հատկապես վերջին տասնամյակում, կառուցվել են հանրակացարանների, գիշերօթիկ դպրոցների բազմաթիվ նոր, հարմարավետ շենքեր, որտեղ բնակվում են մի քանի տասնյակ հազար մարդ։ Կառուցվում են նորերը։ Գեղեցիկ ու շքեղ է լինելու Երևանի Նոր Զեյթուն արվարձանում կառուցվող ուսանողական քաղաքը, ուր երեք հազար ուսանողի համար ստեղծվելու են ապրելու, հանգստանալու բոլոր պայմանները։ Արդեն շահագործման են հանձնվել ու բնակեցվել առանձին կացարաններ։

Ներկայումս ռեսպուբլիկայի հանրակրթական գիշերօթիկ ու երկարօրյա դպրոցներում, գյուղական դպրոցներին առընթեր ինտերնատներում, պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության ուսումնարանների ու դպրոցների, տեխնիկումների և միջնակարգ մասնագիտական այլ ուսումնական հաստատությունների հանրակացարաններում ապրում են ավելի քան 21 հազար երեխաներ ու պատանիներ. ընդհանուր կացարաններում են ապրում բարձրագույն ուսումնական հաստատությունների մոտ հինգ հազար ուսանող, ինչպես և արդյունաբերական, տրանսպորտի և շինարարական ձեռնարկություններում աշխատող ավելի քան տասը հազար բանվոր ու ծառայող։ Բացի այդ, մոտ հինգ-վեց հազար մարդ տեղավորված են ժամանակավոր, սեզոնային կացարաններում, պետական միջոցներով վարձված մասնավոր բնակարաններում։ Կոլտնտեսությունների ու սովխոզների շատ անասնապահներ տարվա որոշ մասն ապրում են հատկապես նրանց համար կառուցված շենքերում։ Այսպիսով, մարդկանց մի ստվար խումբ՝ արտադրության, ուսման և հասարակական գործունեության ոլորտից դուրս ապրում են համատեղ, կոլեկտիվ կերպով, իրենց կենցաղը վարում սոցիալիստական համակեցության կանոններով։

Առաջիկայում շինարարության աշխատանքների ծավալի մեծացման, գիշերօթիկ, պրոֆտեխնիկական կրթության, միջնակարգ մասնագիտական դպրոցների ցանցի և բուհերի ուսանողների կոնտինգենտի ընդլայնման շնորհիվ նշանակալի չափով ավելանալու է հանրային կացարանների թիվը։ Այդ ամենը թելադրում են լուրջ ուշադրություն հատկացնել ու մշտապես զբաղվել հանրակացարանների բնակիչների կենցաղի բարելավմամբ, նրանց գաղափարական դաստիարակությամբ, կուլտուրական հանգստի ու ժամանցի կազմակերպմամբ։



Հասարակական նոր հարաբերությունների ձևավորումը և հոգևոր հարստություն, բարոյական անաղարտություն ու ֆիզիկական կատարելություն



ներդաշնակորեն մարմնավորող նոր մարդու դաստիարակությունը տեղի է ունենում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար աշխատավորների գործադրած համատեղ ստեղծագործական աշխատանքի և հասարակական գործունեության պրոցեսում։ Մարդը գեղեցիկ ու փառավոր է աշխատանքով, իր գործերով, յուրաքանչյուր մարդու կոմունիստական գաղափարայնությունն առաջին հերթին բնորոշվում է հանրօգուտ աշխատանքի նկատմամբ նրա ունեցած վերաբերմունքով։

Այն միջավայրը, որտեղ ձևավորվում է կոմունիզմ կառուցողի գիտական աշխարհայացքը և կոմունիստական բարոյականությունը, կոլեկտիվն է և, ամենից առաջ՝ աշխատանքային կոլեկտիվը։ Սովետական մարդու և, մասնավորապես, երիտասարդ սերնդի գաղափարական դաստիարակության գործում բացառիկ է կոլեկտիվի դերը։ Նա է, ի մի համախմբում մարդկանց, մշակում ու նրանց մեջ պատվաստում նոր, իսկական հումանիստական փոխհարաբերություններ՝ կոլեկտիվիզմ և ընկերական փոխօգնություն, փոխադարձ հարգանք միմյանց նկատմամբ, դաստիարակում կարգապահության ու պահանջկոտության, ժողովրդի, պարտքի հանդեպ բարձր պատասխանատվության զգացմունք, հարգանք դեպի ռևոլյուցիոն և աշխատանքային տրադիցիաները։

Կոլեկտիվը մարդկային անհատի հիմնական դաստիարակն է ո՛չ միայն արտադրության պրոցեսում, այլև կենցաղում՝ արտադրական և հասարակական գործունեության ոլորտից դուրս նրա առօրյա կյանքում։ Եվ այդ հասկանալի է, քանի որ մեր հասարակության մեջ աշխատանքն ու կենցաղը օրգանապես շաղկապված են միմյանց և հնարավոր չէ խիստ տարբերակում դնել դրանց միջև։

Հանրակացարանը կենցաղի այն հանրային ձևերից է, որը մարդու համար ստեղծում է որոշ հնարավորություններ հանրային կյանքով ապրելու։ Եվ, իսկապես, կենցաղային առօրյա ծանր հոգսերից ազատ մարդը կարող է միայն աշխատանքից և ուսումից դուրս ունեցած իր ազատ ժամանակը ծախսել առավել արդյունավետ, հարստացնել իր գիտելիքները, խելացի կազմակերպել իր հանգիստն ու ժամանցը։

Մենք ունենք մի շարք հանրակացարաններ, որտեղ լավ է կազմակերպված աշխատավորների կոմունալ-կենցաղային սպասարկումը և պարտիական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունները, տնտեսական ղեկավարներն անդադրում հոգում են մարդկանց քաղաքական-կուլտուրական դաստիարակության մասին։

Երկու տարի առաջ աննախանձելի էր Լենինականի տեքստիլ կոմբինատի հանրակացարանի վիճակը, վատ էին օգտագործվում եղած հնարավորությունները բանվորուհիների կենցաղն ու հանգիստը լավագույն ձևով կազմակերպելու համար։ Այդ հարցով զբաղվեց ՀԿԿ Լենինականի քաղկոմը և կոմբինատի պարտիական կոմիտեն, գործնական միջոցառումներ իրականացվեցին ստեղծված դրությունը բարելավելու համար։ Կատարված աշխատանքի արդյունքները շոշափելի են։ Այստեղ հաստատվել է պատշաճ կարգ ու կանոն, մաքրություն, կահավորվել ու ռադիոֆիկացվել են բոլոր ննջասենյակները։ Շենքում մշտապես տաք ջուր կա, ստեղծված են հարմարություններ շորերը լվանալու, արդուկելու և նախաճաշ պատրաստելու համար. հանրակացարանն ունի կանացի վարսավիրանոց, առողջապահական պունկտ, ճաշարան, կարմիր

անկյուն՝ ստացիոնար կինո կետով, հեռուստացույցով ու ռադիո ընդունիչով, ստացվում են երկու տասնյակից ավելի թերթեր ու ամսագրեր։ Կազմակերպվում են էքսկուրսիաներ, պարեր, երեկոներ, զեկուցումներ և այլն։ Բայց դեռևս չի կարելի գոհացուցիչ համարել կատարվածը, օրինակ, բնակիչներն իրավացիորեն դժգոհում են ճաշերի որակից, գրադարանում չկան նոր լույս տեսած գրքեր, քիչ են կազմակերպվում հետաքրքրական միջոցառումներ։ Բավարար կարելի է համարել աշակերտների կոմունալ-կենցաղային և կուլտուրական սպասարկումը պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության № 18 ուսումնարանում և այլն։

Ցավոք, բոլոր տեղերում չէ, որ տնտեսական ղեկավարները, պարտիական և արհմիութենական կազմակերպությունները զբաղվում են հանրակացարաններով, ինչպես հարկն է մտահոգվում նրանց բնակիչների կենցաղային պայմանների բարելավմամբ։ Ձեռնարկությունների, կառույցների և ուսումնական հաստատությունների ղեկավարներից շատերն ամիսներով ոտք չեն դնում հանրակացարան, չեն հետաքրքրվում մարդկանց նիստ ու կացով, ասես թե բանվորների և սովորողների կենցաղն իրենց չի վերաբերում։ Մասնավորապես անհանդուրժելի է, երբ արհմիութենական ռեսպուբլիկական և տեղական կազմակերպություններից շատերը հեռու են կանգնել այդ կարևոր գործից, հստակ պատկերացում չունեն տեղերում իրական վիճակի մասին։ Վերջերս, երբ գունավոր մետալուրգիայի աշխատողների արհմիության ռեսպուբլիկական կոմիտեն անդրադարձավ այդ հարցին, պարզվեց, որ բարվոք չէ դրությունը Ղափանի, Ալավերդու, Ախթալայի, Քաջարանի և Դաստակերտի բանվորական հանրակացարաններում. պակասում է կահույքը, դեռևս լավ չի կազմակերպված բնակիչների կոմունալ-կենցաղային սպասարկումը։

Երևանի ջերմաէլեկտրակենտրոնի հանրակացարանում (Թբիլիսիի խճուղի) չի գործում բաղնիքը, չկան առողջապահական կետ, վարսավիրանոց, բուֆետ, անհատական օգտագործման խոհանոցներ և այլն։ Լենինականի գուլպայի ֆաբրիկայի կացարանում չկա խմելու ջուր (հետևապես և՛ տաք ջուր), կահավորված չէ կարմիր անկյունը, ննջասենյակներում զգեստապահարանների փոխարեն օգտագործում են գրքի փոքր պահարաններ։ Հայքիմարդշինի Երևանի հանրակացարանում (Զարբախում), ուր ապրում են ավելի քան ութ հարյուր մարդ, չկա ճաշարան, եղած փոքրիկ բուֆետը երբեք չի կարող բավարարել բնակիչների պահանջները։ Գորշ ու անհրապույր է № 6 շինտրեստի (Լենինական) հանրակացարանը, այստեղ չկան նորմալ պայմաններ ապրելու և հանգստանալու համար։ Բանվորական և ուսանողական մի շարք հանրակացարաններում ժամանակին չի փոխվում ննջասենյակների սպիտակեղենը, պակասում են անհրաժեշտ կահույքն ու իրերը, լավ չեն կոմունալ-կենցաղային պայմանները և այլն։ Կան հնարավորություններ ու պայմաններ, բայց պակասում են հոգատար ձեռքն ու սրտացավությունը։

Լուրջ մտահոգություն է պատճառում հանրակացարաններում ապրողների դաստիարակության, նրանց ազատ ժամանակի խելացի կազմակերպման հարցը, որի վրա դեռևս տնտեսական ղեկավարները, պարտիական կոմիտեները անհրաժեշտ, իսկ առանձին տեղերում բոլորովին ուշադրություն չեն դարձնում։ Բավական չէ միայն ստեղծել նորմալ պայմաններ ապրելու համար, այլև անհրաժեշտ է մտածել մարդկանց հոգևոր կյանքի մասին, ճիշտ հունի մեջ դնել նրանց կենցաղը։ Այնտեղ, ուր աշխատավորների կենցաղը դուրս է



մնում կոլեկտիվի, պարտիական կազմակերպության ազդեցության ոլորտից, հաճախ առկա են անցանկալի երևույթներ։

Ահա Երևանի կոոպերատիվ տեխնիկումի ուսանողական հանրակացարանը, որը մյուսների համեմատ չի փայլում ո՛չ իր հարուստ կահավորմամբ, ո՛չ էլ ունեցած կոմունալ-կենցաղային լավագույն հարմարություններով։ Այստեղ դուք կգտնեք պակասություններ, թերի կողմեր։ Սակայն ուրախալին այն է, որ տեխնիկումի ղեկավարները ջանում են եղածը լավ օգտագործել։ Դասերից դուրս ամեն օր հանրակացարան են այցելում տեխնիկումի դիրեկտորը, դասատուները՝ հետաքրքրվում են իրենց սաների կյանքով ու կենցաղով, զրուցում նրանց հետ, օգնում դասերը լավ պատրաստելու։

Հանրակացարանում ապրում են երկու հարյուր տղաներ ու աղջիկներ։ Դա մի առողջ ու համերաշխ ընտանիք է, որի յուրաքանչյուր անդամը պատասխանատվություն է կրում մյուսի համար և փոխադարձաբար իրար օգնում կենցաղում և ուսման մեջ։ Հանրակացարանի ներքին գործերն աստիճանաբար սկսում են տնօրինել նրա երիտասարդ բնակիչները. նրանք ունեն իրենց խորհուրդը, որը հետևում է հանրակեցության կանոնների պահպանմանը, անցկացնում զանազան օգտավետ միջոցառումներ։ Շենքի մաքրությունն ու կացարանի ներքին կանոնների պահպանման հսկողությունն իրենց վրա են վերցրել բնակիչները, ինքնասպասարկման կարգով իրենք են մաքրում ննջասենյակները և միջանցքները, հարկերում և շենքում սահմանված է ամենօրյա հերթապահություն։ Նրանք են տնօրինում գործերը նաև կարմիր անկյունում։ Այժմ տեխնիկումի կոմերիտականները խորհում են հանրակացարանում ծավալել կոմունիստական կենցաղավարության շարժումը, ապրել այնպես, որպեսզի սոցիալիստական համակեցության նորմերը դառնան յուրաքանչյուրի առօրյա վարքագիծը։

Մի քիչ այլ է պատկերը անասնաբուժական-անասնաբուժական ինստիտուտի հանրակացարանում. այստեղ ուսանողների համար քիչ են կազմակերպվում քաղաքական-կուլտուրական հետաքրքրական ու բազմապիսի միջոցառումներ, երբեմն նկատվում են ներքին կարգ ու կանոնի խախտման դեպքեր։ Ահա երկու տղաներ զավրախոսում են տարեց դռնապանուհու հետ, անվայելուչ խոսքեր ասում նրան. շենքի պարետը վրդովված պատմում է, թե ինչպես առանձին ուսանողներ հոգատար չեն գույքի նկատմամբ, փչացնում են սեղաններն ու աթոռները։ Դրանք մանրուք չեն։ Բժշկական ինստիտուտի ուսանողներ Է. Արզումանյանը և Թ. Հովհաննիսյանը հանրակացարանում կռվելով իրար հետ, պատահաբար մարմնական վնասվածք են հասցնում իրենց զասընկերներից մեկին. կամ՝ պետական համալսարանի ուսանող Ա. Առաքելյանը վիճելով իր ընկերոջ հետ, հարվածում է նրան։ Կարելի է բերել օրինակներ, երբ հանրակացարաններում առանձին ուսանողներ թույլ են տալիս հակահասարակական արարքներ, կոպիտ կերպով խախտում համակեցության կանոնները։

Ապագա մասնագետների դաստիարակությամբ պետք է լրջորեն զբաղվեն դասախոսները ո՛չ միայն ինստիտուտների պատերի ներսում, այլև այնտեղ, ուր ապրում ու օրվա մեծ մասն անց են կացնում իրենց սաները։ Այնինչ բուհերի ու տեխնիկումների շատ ղեկավարներ ու դասախոսներ հազվադեպ են լինում հանրակացարաններում, մոտիկից չեն հետաքրքրվում ուսանողների կյանքով ու կենցաղով։ Մոռանում են, որ նրանք պատասխանատու են ո՛չ

դիսկուսիաներ, երեկոներ՝ քաղաքական-հասարակական, գիտատեխնիկական, էսթետիկական թեմաների շուրջ, զանազան զվարճություններ ու սպորտային խաղեր, էքսկուրսիաներ։ Այնինչ դրանք ոչ միայն կնպաստեին երիտասարդների մտահորիզոնի ընդլայնմանը, լավ ճաշակի պատվաստմանը, այլև հանրակացարանի բնակիչների համախմբմանը, կոլեկտիվիզմի ոգով նրանց դաստիարակմանը։ Մի՞թե, օրինակ, չի կարելի աղջիկներին սովորեցնել տնավարություն, նախապատրաստել նրանց ընտանեկան կյանքին, կամ զրույց-զեկուցումներ կազմակերպել սիրո և ընտանիքի, գեղեցկի ու ճաշակի վերաբերյալ։ Հանրակացարաններում ապրում են սովետական ժողովուրդների բազմաթիվ ներկայացուցիչներ. այդ իսկ պատճառով պետք է լուրջ ուշադրություն նվիրել նրանց ինտերնացիոնալ դաստիարակությանը, նրանց միջև բարեկամության ամրապնդմանը։ Մի՞թե նորմալ է, երբ ռուս կամ ուկրաինացի երիտասարդը մեկ-երկու տարի ապրելով Հայաստանում, իրազեկ չէ մեր ժողովրդի նվաճումներին, չի լինում տեսարժան վայրերում, լավ չգիտե այն քաղաքը, ուր նա աշխատում է ու ապրում։ Դաստիարակության գործը բարելավելու նպատակով պարտիական կազմակերպությունները պետք է հետևեն, որ լավ ընտրվի հանրակացարանի սպասարկող անձնակազմը. առանձին տեղերում որպես դաստիարակ, պարետ, կուլտմասսավիկ են աշխատում կոպիտ ու բռի, անգամ դատապարտված մարդիկ։

Անհրաժեշտ է հասարակական լայն կարծիք ստեղծել հանրակացարանների շուրջը, ուժեղացնել նաև կենցաղում կոլեկտիվի ազդեցությունը։ Պարտիական կազմակերպությունները պետք է խրախուսեն գիտակցական ինքնակարգապահության բոլոր այն ձևերը, որոնք տանում են դեպի կոմունիստական հանրակեցության հիմնական կանոնների ամրապնդում ու զարգացում, կոմունիստական կենցաղավարության արմատավորում հանրակացարաններում։

Վ. ՍԱՐԳՍՅԱՆ

## ԼԱՎԱԳՈՒՅՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԸ

Հաջողությամբ է գործում Իջևանի գյուղատնտեսական արտադրական վարչության Ուզունթալայի կոլտնտեսության սկզբնական պարտիական կազմակերպության գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող սեմինարը, որում ընդգրկված են բրիգադավարներ, ֆերմաների վարիչներ, օղակավարներ, արտադրության առաջավորներ։ Առաջ նրանք մարքսիստական-լենինյան տեսության հարցերն ուսումնասիրում էին տարբեր քաղխմբակներում, իսկ արդեն երրորդ տարին է, ինչ անցել են քաղաքական ինքնակրթության սեմինարային ձևին։ Ուսուցման այդ ձևը, որ կամավոր ընտրել են սեմինարի մասնակիցները, տալիս է լավ արդյունք. ամեն մի ունկնդիր ինքնուրույն աշխատում է գրքի վրա, ուսումնասիրում ու վերլուծում կոլտնտեսության տնտեսական գործունեությունը և ապա սեմինար պարապմունքների ընթացքում կոլեկտիվ ուժերով քննարկում տնտեսագիտության տարբեր հարցեր։

Գյուղատնտեսության էկոնոմիկայի հարցերի խոր ուսումնասիրությունը հնարավորություն է տվել քաղաքական ուսուցումը մոտեցնել ու սերտորեն շաղկապել արտադրության կոնկրետ խնդիրների լուծման հետ, զարգացնել



սեմինարի մասնակիցների քաղաքական ու արտադրական ակտիվությունը, նախաձեռնությունը։ Այդ ասպարեզում շնորհակալ գործ է կատարում սեմինարի ղեկավար Սարգիս Գևորգյանը։

Շատ են Ուզունթալայի կոլտնտեսության վարչության նախագահ Ս. Գևորգյանի աշխատանքային հոգսերը։ Հարկավոր է ճիշտ վարել այդ խոշոր ու բազմաճյուղ տնտեսությունը, կոլտնտեսականներին կազմակերպել ու հաղթահարել կլիմայական անբարենպաստ պայմանների պատճառած հետևանքները, ապահովել գյուղատնտեսական մթերքների արտադրության ու վաճառքի պլանների կատարումը։ Նա այն տնտեսավարներից է, որ չապավինելով միայն իր ուժերին, հենվում է կոմունիստների, կոլտնտեսականների, նրանց կոլեկտիվ փորձի ու բանականության վրա։ Քաջ գիտակցելով տնտեսական խնդիրների իրականացման բնագավառում գաղափարական ներգործման վճռական դերը, Ս. Գևորգյանն իր կարևոր գործն է համարում մշտապես զբաղվել աշխատավորների քաղաքական դաստիարակման, նրանց գիտական աշխարհայացքի ձևավորման գործով։ Եվ պետք է նշել, որ նա մեծ սիրով ու պատասխանատվության զգացումով է կատարում իր այդ պարտականությունը։

Սեմինար պարապմունքների ընթացքում կոլտնտեսության հրամանատարական կադրերն ուսումնասիրում են գյուղատնտեսության էկոնոմիկայի բազմապիսի պրոբլեմները։ Դա բարերար է ներգործում մարդկանց վրա, օգնում է նրանց իրենց աշխատանքային տեղամասում գործել գիտակցված և ուժերի առավել լարումով։

Փորձենք մի քանի օրինակներով հաստատել մեր ասածը, ցույց տալ պրոպագանդիստի արդյունավետ գործունեությունը։

Ուսման ծրագրով նախատեսված Բաշխման սոցիալիստական սկզբունքի կիրառումը գյուղատնտեսական արտելում թեման խոր ուսումնասիրելու նպատակով պրոպագանդիստը այն բաժանեց հետևյալ ենթաթեմաների՝

— Ըստ աշխատանքի բաշխումը սոցիալիզմի տնտեսական օրենքն է.

— Բաշխման սոցիալիստական սկզբունքի արմատավորումը գյուղատնտեսական արտելում.

— Գյուղատնտեսական մթերքների արտադրությունը և դրանց բաշխումը Ուզունթալայի կոլտնտեսությունում.

— Ժամանակակից պայմաններում բաշխման կատարելագործված ձևերի կիրառումը Սարիգյուղի և Ենոքավանի կոլտնտեսություններում.

— Բաշխման սոցիալիստական սկզբունքի կիրառումը որպես կարևոր նախապայման բաշխման կոմունիստական սկզբունքին անցնելու համար։

Պրոպագանդիստը սեմինարի մասնակիցներին հանձնարարեց կարդալ համապատասխան գրականություն։ Բայց դա քիչ էր։ Անհրաժեշտ էր խորամուխ լինել կոլտնտեսության գործերին, վերլուծել եղած նյութերը, ինչպես և ծանոթանալ հարևան տնտեսություններում բաշխման առաջադիմական ձևերին։ Լուրջ նախապատրաստությունից հետո հրավիրվեց սեմինար պարապմունք, որն իրականում վերածվեց գիտա-պրակտիկ կոնֆերանսի։ Այն հանգամանքը, որ պրոպագանդիստը կարողացել էր ճիշտ կողմնորոշել ունկնդիրներին, թեմայի ուսումնասիրությունն անմիջականորեն առնչել կոլտնտեսային առօրյայի հետ, մեծ հետաքրքրություն էր առաջ բերել նրանց մոտ։ Պարզվեց, որ մարդիկ ոչ միայն լավ են ըմբռնել տեսական հարցերը, այլև պատրաստ են այն հետևողականորեն կիրառել իրենց արտելում։

Սեմինարի մասնակիցների ելույթներից ակնհայտ դարձավ, որ Ուզունթալայի կոլտնտեսության արտադրաֆինանսական պլանով նախատեսված եկամուտների ծախսման ու բաշխման գործում թույլ են տրվել խախտումներ, որի հետևանքով ստեղծվել է դիմազրկություն, նվազել կոլտնտեսականների շահագրգռվածությունը առավել բարձր արդյունքի հասնելու համար։ Կոլտնտեսության արտադրական ծախքերի մեջ մեծ տոկոս են կազմում կերի համար կատարված հատկացումները, մի բան, որ բարձրացնում է անասնաբուծական մթերքների ինքնարժեքը։ Պարապմունքում նշվեց նաև հիմնական թոշակավորման, ինչպես և ջրմուղի, մանկամսուրի, բաղնիքի ու ակումբի շենքերի կառուցման համար ֆոնդերի առանձնացման անհրաժեշտությունը։ Դա արժանացավ կոլտնտեսության վարչության ուշադրությանը։ Հետագայում գյուղը ստացավ խմելու սառնորակ ջուր, կառուցվեց բաղնիք, հիմնականում կարգավորվեց կոլտնտեսային եկամուտների բաշխումը, սեփական կերի բազայի ստեղծման ճանապարհով մեծ չափով կրճատվեցին այդ նպատակի համար հատկացվող գումարները։

Գյուղատնտեսության արտադրության բազմակողմանի մեքենայացումը և հետևողական ինտենսիֆիկացումը թեման անցնելիս սեմինարի մասնակիցներ Ա. Օհանյանը և Ժ. Մատինյանը իրենց ուսումնասիրությունների հիման վրա հանգեցին այն հետևության, որ անհրաժեշտ է մեքենայացնել կաթնապրանքային ֆերմաների աշխատատար պրեցեսները։ Այս առաջարկության արմատավորման հարցով լրջորեն զբաղվեցին կոլտնտեսության վարչությունը և պարտիական կազմակերպությունը. որոշ ժամանակ անց ֆերմաներում կառուցվեցին կախովի ճանապարհներ, տեղադրվեցին կթի ագրեգատներ, ավտոմատ խմոցներ, որոնց շնորհիվ բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը, իջավ արտադրանքի ինքնարժեքը։

Թեպետ ծխախոտագործությունն Ուզունթալայի կոլտնտեսությունում համարվում է տնտեսության հիմնական ճյուղերից մեկը, բայց և այնպես 1961 թվականին այստեղ խիստ թերակատարվեց ծխախոտի հումքի արտադրության պլանային առաջադրանքը՝ հեկտարից ստացվեց 12,9 ցենտներ միջին բերք։ Երկար ժամանակ տնտեսության ղեկավարներին չէր հաջողվում պարզել դրա պատճառները. հայտնի էր մի բան, որ այդ նույն տարում և նույն պայմաններում ծխախոտագործուհի Ջ. Օհանյանը, աշխատելով անհատական գործավարձային սիստեմով, հեկտարից ստացել էր 40 ցենտներ բերք։

Եվ ահա անցած տարի գյուղատնտեսության էկոնոմիկայի սեմինարի հերթական պարապմունքի համար Աշխատանքի կազմակերպումը, նորմավորումը և վարձատրումը կոլտնտեսություններում թեման նախապատրաստելիս պրոպագանդիստը համակողմանի ուսումնասիրեց աշխատանքի կազմակերպման, նորմավորման և վարձատրման վիճակը կոլտնտեսության դաշտավարական բրիգադներում։ Ս. Գևորգյանը Իջևանի մի խումբ գյուղատնտեսության աշխատողների հետ եղավ Շամշադինում, ծանոթացավ Նորաշենի կոլտնտեսության ծխախոտագործների աշխատանքի կազմակերպման և վարձատրման գործին։ Պարզորոշ դարձան այդ գործում իր ղեկավարած տնտեսության թերի կողմերը։ Բանն այն էր, որ իրենց մոտ ծխախոտի արտադրության համար սահմանված վարձատրությունը կախման մեջ չէր դրվում ձեռք բերված վերջնական արդյունքից, ծխախոտագործների վարձատրությունը հիմնականում չէր կատարվում ըստ նրանց աշխատանքի քանակի ու որակի։



Սեմինար պարապմունքում վերոհիշյալ թեմայի քննարկմանը նա մասնակից դարձրեց նաև առաջավոր ծխախոտագործներին։ Պարզվեց, որ այդ նույն կարծիքին էին նաև ունկնդիրները՝ իրենց ելույթներում հաստատելով պրոպագանդիստի հետևությունները։ Արվեցին գործնական առաջարկություններ ստեղծված դրությունը շտկելու նպատակով։ Սեմինարի մասնակիցները ցանկություն հայտնեցին օգնել վարչությանը՝ բարելավելու ծխախոտագործների աշխատանքի կազմակերպման, նորմավորման ու վարձատրման գործը։ Այդ նպատակով մի խումբ ունկնդիրներ պարտիական կազմակերպության, կոլտնտեսականների ընդհանուր ժողովի քննարկմանը ներկայացրին տեխնիկատնտեսական տեսակետից հիմնավորված նորմավորման, վարձատրության և աշխատանքի կազմակերպման պրոգրեսիվ սիստեմ, որն ընդունվեց ու արմատավորվեց։ Արդյունքը եղավ այն, որ 1962 թվականին պետությանը վաճառվեց 103 տոննա ավելի շատ ծխախոտի բարձրորակ հումք, քան 1961 թվականին. միայն ծխախոտից ստացվեց 410.000 ռուբլի դրամական եկամուտ՝ նախորդ տարվա 180.000-ի դիմաց։

Պրոպագանդիստն առանձնահատուկ ուշադրություն է հատկացնում այն ունկնդիրներին, որոնք թերանում են իրենց աշխատանքում և իրենց գործունեությամբ ետ են պահում կոլտնտեսությունը։ Այսպես, Վ. Աչինյանի ղեկավարած բրիգադան տևականորեն ետ էր մնում։ Պրոպագանդիստը նպատակահարմար գտավ լրացուցիչ գումարել գիտա-պրակտիկ կոնֆերանս՝ Աշխատանքի կազմակերպման և վարձատրման վիճակը դաշտավարական բրիգադայում թեմայով։ Զեկուցումը հանձնարարվեց Վ. Աչինյանին, իսկ սեմինարի մասնակիցներին խորհուրդ տրվեց մոտիկից ծանոթանալ վերոհիշյալ բրիգադայի գործերին։ Այդ կոնֆերանսին, որին մասնակցում էին Վ. Աչինյանի ղեկավարած բրիգադայի անդամները, հիմնական զեկուցումից և մտքերի փոխանակությունից պարզվեց, որ բրիգադայում լավ չեն կազմակերպված աշխատանքի հաշվառումն ու աշխօրերի գրանցումը, ճիշտ չեն օգտագործվում կոլտնտեսականների ուժերն ու հողատարածությունները։

Դա գործնական լուրջ օգնություն էր բրիգադային։ Պրոպագանդիստը միաժամանակ լինելով տնտեսության ղեկավար, մոտիկից օգնեց Վ. Աչինյանին ու նրա բրիգադայի անդամներին՝ կարգ ու կանոն մտցնելու աշխատանքում, հասնելու առաջավոր բրիգադաներին։

Տնտեսագիտության և արտադրության արմատական հարցերի խոր իմացությունը, նորի, առաջադիմականի ընկալումը պրոպագանդիստին հնարավորություն են տվել տեսական նյութի ուսուցումը հմտորեն կապելու արտադրության կոնկրետ խնդիրների լուծման հետ, օգնելով սեմինարի մասնակիցներին իրենց ստացած գիտելիքները ստեղծագործաբար կիրառելու արտադրության մեջ, աշխատելու եռանդուն, հանձնարարված գործի նկատմամբ բարձր պատասխանատվությամբ։

Կ. ԽՈՋՈՅԱՆ

ՀԿՊ Իջևանի արտադրական կոմիտեի
քաղլուսկաբինետի վարիչ



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՄԵԾ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՍՆՆԴԻՆ

*Աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման գործում կարևոր նշանակություն ունեն հասարակական սննդի հետագա զարգացումն ու բարելավումը։ Հասարակական ճաշարանների ստեղծումը մի շարք առավելությունների հետ հնարավորություն է տալիս նաև խնայելու մեծ քանակությամբ հասարակական աշխատանք, որը ծախսում են կանայք տանը կերակուր պատրաստելու համար և, միաժամանակ, պայմաններ են ստեղծվում խոհանոցի բթացնող ու ճնշող մթնոլորտից կնոջն ազատագրելու, նրան հանրային արտադրության մեջ ներգրավելու համար։*

*Ժամանակակից պայմաններում տնային տնտեսուհուց դեռևս շատ ժամանակ է խլում կերակուր պատրաստելը։ Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ 3—4 հոգուց բաղկացած ընտանիքում միայն դրա համար օրական ծախսվում է երկուսուկեսից երեք ժամ, չհաշված այն ժամանակը, որ վատնվում է խանութներում ու շուկայում մթերքներ ձեռք բերելու, ամանեղենը լվանալու և այլ գործերի վրա։ Հասկանալի է, որ այդ ժամանակի տնտեսումը ամբողջ հասարակության մասշտաբով կտա ժողովրդատնտեսական մեծ օգուտ։*

*Մեր երկրում ստեղծվել է հասարակական սննդի ձեռնարկությունների լայն ցանց, որից այժմ օգտվում է երկրի բնակչության զգալի մասը։ ՍՍՌՄ հասարակական սննդի ապրանքաշրջանառությունը (համապատասխան տարիների գներով) 1924 թվականի 14 միլիոն ռուբլուց, 1960 թվականին հասել է 702[illegible] միլիոնի։*

*Հասարակական սննդի կազմակերպման ուղղությամբ մեծ գործ է կատարված նաև մեր ռեսպուբլիկայում։ 1962 թվականի վերջին ռեսպուբլիկայում գործում էին հասարակական սննդի 1383 ձեռնարկություն, 39,3 հազար սպասարկման տեղով, այդ թվում՝ մեկ ֆաբրիկա-խոհանոց, 431 ճաշարան ու ռեստորան, 13 թեյարան և 938 նախաճաշարան ու բուֆետ։ Այժմ տասնյակ հազարավոր մարդիկ օգտվում են հասարակական սննդի ձեռնարկություններից, բազմազան են դարձել ճաշատեսակները, բարձրացել է սպասարկման կուլտուրան։ Սակայն ՀԿՊ Կենտկոմի 1963 թ. ապրիլյան պլենումը նշեց, որ առևտրական կազմակերպությունները դեռևս անբավարար գործ են կատարել ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի՝ հասարակական սննդի հետագա զարգացման և բարելավման մասին որոշման կենսագործման ուղղությամբ։ Ամբողջ մանրածախ ապրանքաշրջանառության մեջ հասարակական սնունդը կազմում է 8,1 տոկոս, որը շատ քիչ է։*

*Հասարակական սնունդը, հատկապես, անբավարար է կազմակերպված մասսայական ցանցում, նորակառույցներում և սովխոզներում։ Դրա հետևանքով էլ ռեսպուբլիկայում ներկայումս հասարակական սննդի ձեռնարկություններից բանվոր-ծառայողները մեծ մասամբ օգտվում են միայն աշխատանքի վայրում, ընդ որում այն կազմում է նրանց օրվա սննդի մի փոքր մասը։ Եթե ելնենք օրական մեկ անգամ կերակրվելու հաշվարկումներից, ապա մեր ռեսպուբլիկայի հասարակական սննդի ձեռնարկություններում՝ ճաշարաններում, ռեստորաններում և այլուր օրական սնվում են մոտավորապես 90 հազար մարդ, որը կազմում է ռեսպուբլիկայի ազգաբնակչության 5 տոկոսից էլ պակաս։*

*Անցյալ տարի ընդհանուր առմամբ ՍՍՌՄ-ում տասը հազար մարդուն*



*ընկնում էին հասարակական սննդի յոթ ձեռնարկություն, իսկ մեկ ձեռնարկության սպասարկման տեղերի միջին քանակը 36,1 միավոր էր. մեր ռեսպուբլիկայում տասը հազար մարդուն ընկնում էին վեց ձեռնարկություն, յուրաքանչյուրը միջին հաշվով 28,3 սպասարկման տեղով։ 1962 թվականին ռեսպուբլիկայում գործող հասարակական սննդի ձեռնարկությունների մեծ մասը մանր օբյեկտներ էին՝ բուֆետներ, թեյարաններ, նախաճաշարաններ։*

*Ճաշարանների և ռեստորանների աճը թելադրվում է կյանքի կողմից, որովհետև միայն այդ տիպի ձեռնարկություններում սպառողները հնարավորություն ունեն ստանալու բազմատեսակ տաք կերակուրներ։ Ճաշարաններն ու ռեստորանները համեմատաբար մեծ ձեռնարկություններ են, որտեղ արտադրական կարողություններն ավելի լրիվ օգտագործելու շնորհիվ բարձր է աշխատանքի արտադրողականությունը, ավելի հեշտ են ներդրվում սպասարկման առաջավոր ձևերն ու մեթոդները։ Այդ բոլորը բարենպաստ պայմաններ են ստեղծում սեփական արտադրանքի ինքնարժեքի, ուրեմն և գների իջեցման համար։*

*Մեր ռեսպուբլիկայում հասարակական սննդի ցանցում աճել է բուֆետների և նախաճաշարանների թիվը, մինչդեռ ՍՍՌՄ-ում հասարակական սննդի սիստեմում մասսայաբար արմատավորվող սեփական արտադրանքի թողարկման տեսակարար կշռի բարձրացման շնորհիվ զգալի չափով կրճատվում է բուֆետների ցանցը, որովհետև բուֆետները մեծ մասամբ զբաղված են գնված ապրանքների առևտրով։ Բուֆետները չունեն զարգացման այնպիսի հեռանկարներ, ինչպիսիք՝ ճաշարանները։ Հիմնարկ-ձեռնարկություններում, դպրոցներում և այլուր հասարակական սննդի զարգացմանը զուգընթաց բուֆետներին կփոխարինեն ճաշարաններն ու ճաշարան-բուֆետները։ Ուրեմն, այդ տեսակետից մեր ռեսպուբլիկայում նրանց տեսակարար կշռի պրոգրեսիվ աճն արդարացված չէ և չի համապատասխանում Միության մասշտաբով կատարվող ընդհանուր օրինաչափությանը։ Այսպես, օրինակ՝ եթե ՍՍՌՄ հասարակական սննդի սիստեմում 1950—1961 թթ. ընթացքում նախաճաշարանների և բուֆետների տեսակարար կշիռը նվազել է ավելի քան 5 տոկոսով (1950 թ. 58 տոկոս, 1961 թ. 53 տոկոս), ապա Հայկական ՍՍՌ-ում այդ ձեռնարկությունների տեսակարար կշիռը 1950—1962 թվականների ընթացքում ընդհակառակը՝ աճել է 3 տոկոսով։*

*1962 թվականին Հայկական ՍՍՌ-ում գործող հասարակական սննդի ձեռնարկությունների 29 տոկոսն էին միայն ճաշարաններ, իսկ բուֆետների ու նախաճաշարանների թիվը հասնում էր 66 տոկոսի, այն դեպքում, երբ ՍՍՌՄ-ում ճաշարանները կազմում էին՝ 41,3, բուֆետներն ու նախաճաշարանները՝ 52,8 տոկոս։*

*Հանդուրժելի չէ այն, որ յոթնամյակի անցած չորս տարում հասարակական սննդի ձեռնարկությունների ցանցի աճման նախատեսված պլանը կատարվել է միայն 42 տոկոսով։ Այդ տարիների համար նախատեսված 333-ի փոխարեն կառուցվել են 140 նոր ձեռնարկություն։ Շինարարական կազմակերպությունների մեղքով հաճախ ուշացվում է նոր օբյեկտների շահագործման հանձնելը։ Այսպես, նախատեսված էր լաքերի ու ներկերի, էլեկտրապարատների, կոնյակի գործարանի, գինու կոմբինատի ճաշարանները, «Բարեկամություն» ռեստորանը, Հրազդանի ափին կառուցվող նախաճաշարանը և այլ օբյեկտներ շահագործման հանձնել դեռևս 1960—1961 թվականներին, մինչդեռ մինչև օրս դրանք չեն գործում։*

*Դրությունը ոչնչով մխիթարական չէ սպառողական կոոպերացիայի գծով նախատեսված հասարակական սննդի նոր ձեռնարկությունների շինարարության ու գործարկման ուղղությամբ։ Յոթնամյակի չորս տարվա համար պլանով նախատեսված 71 ձեռնարկության փոխարեն կառուցվել և շահագործման են հանձնվել միայն 37-ը։ Նոր ձեռնարկությունների շինարարական պլանները վատ են կատարվում նաև սովխոզների ու ժողտնտխորհի գծով։ 1961—1962 թվականներին շահագործման հանձնվելիք Այգր լճի, Նոյեմբերյանի Վորոշիլովի անվան խաղողագործական, Շահումյանի շրջանի Մասիս և այլ սովխոզ-*

ների, Մարտունու, Կրասնոսելսկի, Գեղարդի ճաշարանները դեռևս չեն գործում։

Հայկական ՍՍՌ գյուղատնտեսական մթերքների ու մթերումների մինիստրության 132 սովխոզից միայն 48-ում են գործում ճաշարաններ ու բուֆետներ։

Անբավարար է կենսագործվում ՀԿԿ Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի որոշումն այն մասին, որ ռեսպուբլիկայի բնակարանային շինարարության համար հատկացված միջոցների 5 տոկոսը պետք է օգտագործել բնակելի շենքերի առաջին հարկերում և առանձին տեղերում առևտրի ու հասարակական սննդի օբյեկտներ ստեղծելու համար։

Վատ են օգտագործվում նաև հասարակական սննդի խոշոր ձեռնարկությունների սպասարկման տեղերը։ Ըստ առևտրի և հասարակական սննդի գիտահետազոտական ինստիտուտի տվյալների մեկ սպասարկման տեղի միջին ծանրաբեռնվածությունը կազմելու է օրական 18—20 մարդ։ Ռեսպուբլիկայի նույնիսկ խոշոր արդյունաբերական ձեռնարկություններին և ուսումնական հաստատություններին կից ճաշարաններում (Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, կաուչուկի գործարանների, Երևանի պետական համալսարանի, Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի) մեկ սպասարկման տեղի միջին ծանրաբեռնվածությունը կազմում է օրական 8—10 մարդ, մինչդեռ աշխատանքներն ավելի լավ կազմակերպելու դեպքում այդ ճաշարաններից կարող են օգտվել ավելի մեծ թվով աշխատավորներ։ Օրինակ, Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի նորակառույց ճաշարանն ունի լավ հարմարություններ, ժամանակակից սարքավորումներով հագեցած խոհանոց, սակայն աշխատում է իր կարողությունների միայն մեկ երրորդի չափով։ Այս ճաշարանում սպասարկումն սկսվում է առավոտյան ժամը ինն անց երեսուն րոպեին, ավարտվում մեկին։ Այսպիսով, ճաշարանը բանվոր-ծառայողներին սպասարկում է օրական երեք ու կես ժամ, իսկ գործարանի բանվորների մեծ մասը ճաշարանից հեռու գտնվելու պատճառով չի կարողանում օգտվել նրա ծառայություններից։ Բացի այդ, մեծ թվով բանվորներ չեն կարողանում ճաշարանից օգտվել աշխատանքային ընդմիջման ժամանակ առաջացած հերթի պատճառով։ Գործարանի և ճաշարանի ղեկավարները փոխադարձ համաձայնությամբ կարող են բոլոր հերթափոխների բանվորների համար պայմաններ ստեղծել օրվա տարբեր ժամերին տաք ճաշով սնվելու։

Սպասարկման տեղերն ավելի լավ օգտագործելու համար անհրաժեշտ է լուրջ ուշադրություն հատկացնել նաև հասարակական սննդի գործող և նոր կառուցվող օբյեկտների քանակին ըստ տիպերի։

Հայտնի է, որ առայժմ համեմատաբար մեծ մասսայականություն են վայելում ճաշարաններն ու ռեստորանները, որովհետև այստեղ սպառողները հնարավորություն ունեն ստանալու տաք կերակուրներ (1-ին, 2-րդ), սառը խորտիկներ և քաղցր բաժիններ, մի բան, որ ոչ միշտ կարելի է ստանալ սրճարաններում, նախաճաշարաններում ու բուֆետներում։ Սակայն, ինչպես արդեն նշել ենք, ռեսպուբլիկայի հասարակական սննդի ցանցում համեմատաբար փոքր է ճաշարանների թիվը, իսկ նոր կառուցվող ձեռնարկություններում առայժմ մեծ տեսակարար կշիռ են կազմում սրճարանները։ Ճիշտ է, սրճարանները որպես հասարակական սննդի նոր ձև օժտված են մի շարք առավելություններով։ Այստեղ կարելի է նախաճաշել կամ ընթրել, միաժամանակ հանգստանալ՝ անցկացնել բովանդակալից ժամանց, սակայն սրճարաններում հնարավոր չէ արագ սնվել (կատարելով կերակրատեսակների ազատ ընտրություն)։ Մինչդեռ ճաշարաններում ստեղծվում են բոլոր պայմաններն արագ սնվելու՝ հատկապես ճաշելու համար։

Ճաշարանների անբավարար քանակի հետևանքով այժմ ռեսպուբլիկայում գործող սրճարանների մեծ մասը չի ծառայում իր նպատակին։ Սրճարաններում վաճառքի հիմնական առարկան ոչ թե սուրճը, խմորեղենը և թեթև ճաշատեսակներն են, այլ այն ամենը, ինչ ընդունված է ռեստորաններում ու ճաշարաններում։ Այսպիսին է վիճակը, օրինակ, Երևանի «Նաիրի», «Քնար», «Զեփյուռ» և այլ սրճարաններում։



Ռեսպուբլիկայի հասարակական սննդի պետական ձեռնարկությունների ցանցը 1962 թ. աճեց 14,8 տոկոսով, այդ թվում ճաշարաններինը՝ 10,4, սրճարաններինը՝ 25, բուֆետներինը՝ 17,7 տոկոսով։

Մի՞թե նորմալ բան է, որ ներկայումս Երևանի քաղսովետի առևտրի վարչության ճաշարանների ու ռեստորանների տրեստի գծով ոչ մի ճաշարան չի կառուցվում, և դա այն դեպքում, երբ քաղաքի մասսայական ցանցում գործում են միայն 13 ճաշարան։ Դրան հակառակ մեծ ուշադրություն է նվիրվում սրճարանների կառուցմանը։ Չնայած այն բանին, որ քաղաքում կան 21 սրճարան, այժմ ընթացքի մեջ է 18 նոր սրճարանի շինարարությունը։ Բացի այդ, մեծ քանակությամբ սրճարաններ է կառուցում նաև «Երհացառը»։

Ճիշտ է, ռեսպուբլիկայում դեռևս սահմանափակ է սրճարանների քանակը (առ մեկը հունվարի 1963 թ. 30 սրճարան), բայց այդ չի նշանակում, որ հասարակական սննդի մասսայական ցանցի զարգացման հիմնական ուղղությունը ներկա էտապում պետք է հանդիսանա նրանց քանակի մեծացումը։ Հասարակական սննդի նոր օբյեկտների շինարարությունը պլանավորող կազմակերպությունները պետք է աշխատեն ճիշտ հարաբերակցություն սահմանել նրանց տարբեր տիպերի քանակի միջև, առավելությունը տան այնպիսի ձեռնարկությունների շինարարությանը, որոնք ավելի են նպաստում հասարակական սննդի մասսայականացմանը և, հետևապես, բնակչության սպասարկման բարելավմանը։

Հասարակական սննդի ձեռնարկություններն ավելի մասսայական դարձնելուն մեծ չափով կնպաստի նաև սպասարկման կուլտուրայի բարձրացումը։ Այն ձեռնարկություններում, որտեղ «արֆա» սիստեմի հարմարանքի միջոցով կազմակերպված է ինքնասպասարկում, սպառողները հնարավորություն ունեն կարճ ժամանակում ճաշելու։ Անհանդուրժելի է, որ մի շարք ձեռնարկություններում ինքնասպասարկման համար տեղադրված սարքավորումներն իրենց նպատակին չեն ծառայում, և սպասարկումը շարունակվում է հին ձևով (Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարան)։

Պետք է նշել, որ ձեռնարկություններում դեռևս անբավարար է սանիտարական վիճակը։ Հաճախ սպառողները ճաշելու են նստում վերարկուով, գլխարկով կամ արտահագուստով։ Բանվորական և ուսանողական ճաշարաններում հանդերձարաններ չկան, կամ եղածներն էլ չեն գործում. օրինակ՝ կանաչի գործարանի, պոլիտեխնիկական ինստիտուտի հանդերձարանները։ Արդյունաբերական ձեռնարկությունների ճաշարանների սանիտարական վիճակի բարելավման գործում մեծ դեր կարող է խաղալ այդ ձեռնարկությունների բժշկական անձնակազմը, որն ի վիճակի է հասարակական սննդի օբյեկտներում սահմանել ամենօրյա հսկողություն։ Պոլիվինիլացետատ գործարանի ճաշարանում կազմակերպված ամենօրյա բանվորական հերթապահության շնորհիվ զգալիորեն բարձրացել է սպառողների սպասարկման կուլտուրան։ Այս գործարանի օրինակին պետք է հետևեն նաև արդյունաբերական մյուս ձեռնարկությունների հասարակական կազմակերպությունները։

Ձմեռվա պայմաններում առևտրի ցանցին և հասարակական սննդի ձեռնարկություններին թարմ բանջարեղեն մատակարարելու գործում մեծ է ջերմոցային տնտեսությունների դերը։ Մինչդեռ մեր ռեսպուբլիկայում դրանց թիվը շատ փոքր է։ Չնայած դրան, Երևանի քաղաքամերձ գոտում ջերմոցների կառուցման 1962 թվականի կապիտալ ներդրումների տարեկան պլանը կատարվել է 77 տոկոսով։ Անհրաժեշտ է օգտագործել ջերմոցային տնտեսությունների ստեղծման արդյունավետ միջոցներ։ Օրինակ, ջերմոցային տնտեսություններ ստեղծելու լայն հնարավորություններ ունի Կիրովի անվան գործարանին կից ճաշարանը։ Գործարանի արտադրական պրոցեսներից դուրս եկող տաք ջուրը կարելի է օգտագործել ջերմոցների տաքացման համար։ Ջերմուկ առողջարանի տերիտորիայում կան մեծ քանակությամբ հոսող հանքային տաք ջրեր, որոնց բազայի վրա ստեղծված ջերմոցային տնտեսությունները հնարավորություն կտան տարվա բոլոր եղանակներին բավարարելու ճաշարաններում սնվող քաղաքացիների սպառողական պահանջները։

Դեռևս անբավարար ուշադրություն է հատկացվում քաղաքամերձ վայրերում բանջարեղենի արտադրությունն ավելացնելուն և պահեստային տնտեսություններ ստեղծելուն։ Պահեստային տնտեսությունների անմխիթար վիճակն է պատճառը, որ հասարակական սննդի ձեռնարկությունները ձմեռվա ամիսներին հաճախ ստանում են ցածրորակ բանջարեղեն ու կարտոֆիլ, որը մեծ չափով իջեցնում է պատրաստվող կերակուրների որակը։

Ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի նման հասարակական սնունդը ևս անցնում է արդյունաբերական ռելսերի վրա։ Այստեղ ևս մեքենաների ու սարքավորումների ներդրման շնորհիվ նեղանում է ձեռքի աշխատանքի ոլորտը։ Հասարակական սննդի թե՛ արտադրական ու օժանդակ և թե՛ առևտրական աշխատամասերում տեղի է ունենում ջերմային ու մեխանիկական սարքավորումների զգալի աճ։ Այսպես, 1962 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, ջերմային սարքավորումներն ավելացել են 83,4, մեխանիկականը՝ 52,7 տոկոսով, ընդ որում ստացել են մեծ քանակությամբ էլեկտրական կաթսաներ, տապակելու պահարաններ ու սալիկներ։ Ձեռնարկություններում ինքնասպասարկման նոր մեթոդների լայն արմատավորման շնորհիվ մոտ երկու անգամ ավելացել է էլեկտրական մարմիտների չափը։

Մթերքների մշակման համար կատարելագործված սարքավորումների ավելացման շնորհիվ հասարակական սննդի ներկայիս ցանցը ստացել է մեծ քանակությամբ մեքենաներ։ Այժմ այնպիսի աշխատատար պրոցեսներ, ինչպիսիք են՝ միս աղալը, բանջարեղեն կտրտելը, կարտոֆիլ մաքրելը և այլն, կատարվում են մեքենաներով։ Մեքենաներով են լվանում ամանները։ Այս ամենը մեծ չափով բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը հասարակական սննդում։

Սակայն անհրաժեշտ է նշել, որ ժողովրդական տնտեսության այս բնագավառում, չնայած կատարված լուրջ առաջադիմությանը, դեռևս դանդաղ է տեղի ունենում ձեռքի աշխատանքը մեքենաներով փոխարինելու պրոցեսը։ Շատ ձեռնարկություններում առայժմ մեխանիկական ամենաանհրաժեշտ սարքավորումների բացակայության պատճառով աշխատանքների զգալի մասը կատարվում է ձեռքով, որը կլանում է մեծ քանակությամբ կենդանի աշխատանք։ Այդ ձեռնարկություններն անբավարար չափով են հագեցված ունիվերսալ հաղորդակներով, կարտոֆիլ մաքրող և այլ մեքենաներով։ Ունիվերսալ հաղորդակներ են տեղադրված ՀՍՍՌ առևտրի մինիստրության և օրսերի միայն 36 ձեռնարկությունում, իսկ կարտոֆիլ մաքրող մեքենաներ՝ միայն 91-ում. մինչդեռ վերջինիս առկայությունը կիսաֆաբրիկատների մասսայական արտադրության բացակայության պայմաններում գրեթե պարտադիր է հասարակական սննդի բոլոր խոշոր ու միջին ձեռնարկությունների համար։ Հասարակական սննդի ցանցում չկան կոտլետներ ու պելմեններ պատրաստող մեխանիկական ավտոմատներ, որի պատճառով էլ շռայլվում են հազարավոր աշխատաժամեր։

Մեխանիկական սարքավորումների խիստ բացակայություն է զգացվում ռեսպուբլիկայի սպառողական կոոպերացիայի ձեռնարկություններում, որոնց տրամադրության տակ եղած սահմանափակ քանակությամբ մեքենաները չեն բավականացնում իրենց կարիքների բավարարմանը։ Այս սիստեմի 120 ձեռնարկություններից (ռեստորան և ճաշարան) միայն 10 ձեռնարկություններում կան աման լվացող մեքենաներ։

Ռեսպուբլիկայի հասարակական սննդի ձեռնարկություններն առայժմ խիստ անբավարար են հագեցված ջերմային սարքավորումներով ու սպասեղենի առարկաներով։

Վերջին տարիներս մի քանի անգամ ավելացել է էլեկտրական կաթսաների և կրակարանների քանակը, բայց դրանց թիվը հեռու է հասարակական սննդի աճող պահանջմունքները բավարարելուց։ Հայկական ՍՍՌ մեքենաշինական արդյունաբերությունն ունի բոլոր հնարավորությունները ձեռնարկություններից որևէ մեկում հասարակական սննդի ցանցին անհրաժեշտ էլեկտրական սարքավորումների արտադրություն կազմակերպելու համար։ Անհրաժեշտ է, որ



Հայկ. ՍՍՌ Մինիստրների սովետի պետական պլանային հանձնաժողովը և ժողտնտխորհը պատշաճ ուշադրություն հատկացնեն այդ հարցի դրական լուծմանը։ Ներկայումս հասարակական սննդի ձեռնարկություններն զգում են սպասեղենի առարկաների (ափսեներ, բաժակներ, թերմոսներ, կավե ամաններ, խորովածի սարքեր և այլն) ու առևտրական սարքավորումների խիստ պակաս։ Հաճախ փոքր ճաշարաններն ու բուֆետները նշված առարկաների բացակայության պատճառով չեն կարողանում տաք կերակուրներ վաճառել, բուֆետները ճաշարաններից տաք ճաշեր չեն ստանում հերմետիկորեն փակվող կաթսաների բացակայության պատճառով, կամ ստանում են սովորական կաթսաներով, որոնցով ճաշ տեղափոխելը կապված է լուրջ դժվարությունների հետ։ Չնայած առևտրի մինիստրության ու Հայկոոպի հասարակական սննդի բաժինների մի շարք ահազանգումներին, ռեսպուբլիկայի պետպլանն անհրաժեշտ միջոցներ չի ձեռնարկել համապատասխան ձեռնարկությունների կողմից այդ առարկաների արտադրությունն ավելացնելու ուղղությամբ։

Հասարակական սննդի ձեռնարկությունների համար թողարկվող տեխնոլոգիական, մեխանիկական սարքավորումների և այլ առարկաների արտադրության յուրացումը և գոյություն ունեցող ձեռնարկություններում անհրաժեշտ սարքավորումների արտադրության մեծացումը կարևոր ու առաջնահերթ խնդիր է։ Առանց աշխատանքների կազմակերպման գործում ռեսպուբլիկայի արդյունաբերության առկա ռեզերվների մաքսիմալ օգտագործման, հնարավոր չէ հասարակական սննդի կազմակերպումը բարձրացնել պահանջվող մակարդակի վրա։

Բացի սարքավորումներով ու անհրաժեշտ գույքով ձեռնարկությունները հագեցնելուց անհրաժեշտ է նաև ինչպես հարկն է օգտագործել առկա սարքավորումները։ Որքան երկարատև են աշխատում մեքենաներն ու այլ սարքավորումները, այնքան բարձր է աշխատանքի տնտեսական արդյունավետությունը։

Իսկ ինչպես է կազմակերպված սարքավորումների օգտագործումը հասարակական սննդի ցանցում։

Անհրաժեշտ է նշել, որ այդ ուղղությամբ մեր ռեսպուբլիկայում տարվող անբավարար աշխատանքի հետևանքով զգալի թերություններ կան. հասարակական սննդի ձեռնարկություններում գործող սարքավորումների մեծ մասը՝ կարտոֆիլ մաքրող մեքենաները, մսաղացները, ունիվերսալ հաղորդակները (ПРИВОД), հարիչները օրական աշխատում են միայն կես կամ մեկ ժամ։ Այդպես է վիճակը Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի, պոլիտեխնիկական ինստիտուտի, «Կովկաս» և այլ ճաշարաններում։ Օրվա մնացած ժամերին դրանք մատնված են անգործության։ Մինչդեռ ձեռնարկություններին կից կիսաֆաբրիկատների վաճառք կազմակերպելու դեպքում զգալի չափով կբարձրանա այդ սարքավորումների օգտակար գործողության գործակիցը։ Միաժամանակ հնարավոր կլինի բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը հասարակական սննդի սիստեմում և իջեցնել միավոր կերակրաբաժնի ինքնարժեքը։

Պետք է նշել նաև, որ ժամանակավորապես շարքից դուրս եկած սարքավորումները երկար ժամանակ չեն վերանորոգվում, ձգձգվում է նոր սարքավորումների տեղադրումը։ Սրանք ունեն իրենց պատճառները, որոնց բացահայտումը թույլ կտա վերացնել թերությունները և աշխատանքները դնել լավ հիմքերի վրա։

Սարքավորումների վերանորոգման գործում եղած թերությունները գրեթե ամբողջովին ընկնում են «Հայառմոնտաժ» կազմակերպության վրա, որի աշխատողները վերանորոգումները հաճախ կատարում են անորակ։ Դրա հետևանքը լինում է այն, որ վերանորոգված սարքավորումները մի որոշ ժամանակ (մի քանի օր միայն) աշխատելուց հետո նորից խափանվում են։ Բացի այդ, հասարակական սննդի ձեռնարկությունների որոշ ղեկավարներ էլ ժամանակին մասնագետներ չեն կանչում շարքից դուրս եկած սարքավորումների վերանորոգման համար, որի հետևանքով ձեռնարկության ներսում մեծ չափով ընկնում է աշխատանքի արտադրողականությունը։

Հայաստանում և հասարակական սննդի ձեռնարկությունների որոշ ղեկավարների մեղքով հաճախ նոր ստացված սարքավորումները երկար ժամանակ չեն տեղադրվում: Հասարակական սննդի որոշ ղեկավարներ երբեմն խուսափում են դրանց տեղադրումից, պատճառաբանելով, որ տեղի կադրերը չեն կարողանում ինչպես հարկն է օգտվել դրանցից:

Մենք կարծում ենք, որ նոր սարքավորումների տեղադրման ու հների վերանորոգման ասպարեզում եղած թերությունների պատճառները սուբյեկտիվ են, և աշխատանքները լավ կազմակերպելու շնորհիվ կարելի է հեշտությամբ դրանք հաղթահարել:

Մեր օրերում առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում հասարակական սննդի զարգացմանը: ՍՄԿԿ Ծրագրում նշված է, որ հասարակական սննդի նկատմամբ ժողովրդի աճող պահանջմունքները բավարարելու համար հասարակական սննդի ցանցի ընդլայնման հետ մեկտեղ անհրաժեշտ է ապահովել նաև ճաշերի բարձր որակը, որպեսզի դրանք համեղ և սննդարար, ավելի էժան լինեն, քան տնային պայմաններում պատրաստվածները: Նկատի ունենալով այս ամենը՝ խնդիր է դրվում առաջիկայում հասարակական սննդի գներն ավելի մեծ չափերով իջեցնել, քան առևտրի սիստեմում պարենամթերքների գները:

Մատչելի գները հնարավորություն կընձեռեն ավելի մասսայական դարձնելու հասարակական սնունդը: Այս նպատակներին է ծառայում նաև սպասարկման նոր ձևերի ու մեթոդների արմատավորումը, որի շնորհիվ բարձրանում են ձեռնարկությունների թողարկման հնարավորությունն ու աշխատանքի արտադրողականությունը, իջնում է միավոր արտադրանքի ինքնարժեքը, բարելավվում սպասարկման կուլտուրան: Այս ամենի շնորհիվ մոտակա տասը-տասնհինգ տարում հասարակական սնունդը գերակշռող տեղ կգրավի տնային պայմաններում պատրաստվող սննդի համեմատությամբ:

Հասարակական սննդի կազմակերպման գործը կզարգանա, հատկապես, երկրորդ տասնամյակում, երբ սովետական հասարակությունը կմոտենա ըստ պահանջմունքների բաշխման սկզբունքի իրականացմանը, երբ վճարովի սննդի կողքին սպառման հասարակական ֆոնդերի հաշվին լայնորեն կտարածվի նաև ձրի սնունդը: Այժմ արդեն լուրջ քայլեր են արվում հասարակական սննդի հարցը արմատապես լուծելու ասպարեզում: Օրինակ, սպառման հասարակական ֆոնդերի հաշվին մանկական հիմնարկներում լրիվ օրապարեն են ստանում 5,5 միլիոն երեխա, տարեկան 7 միլիոն մարդ սնվում են սանատորիաներում ու հանգստյան տներում և բնակչության մի որոշ մասն էլ լրիվ կամ մասնակի չափով բավարարվում է ձրի սննդով:

Նախատեսվում են հետագայում հասարակական սննդի զարգացման ավելի բարձր տեմպեր: Եթե պետական ու կոոպերատիվ (ներառյալ հասարական սնունդը) մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը տասը տարում ավելանալու է 2,5, իսկ քսան տարում՝ 5 անգամ, ապա հասարակական սննդի ապրանքաշրջանառությունը առաջին տասը տարում կավելանա ավելի քան երեք, իսկ քսան տարում՝ մոտ 13 անգամ:

Ռեսպուբլիկայում հասարակական սննդի զարգացումը հնարավորություն կտա ո՛չ միայն խնայելու մեծ քանակությամբ հասարակայնորեն անհրաժեշտ աշխատանք, ազատագրելու կնոջը խոհանոցի ստրկությունից, տնտեսելու նյութական ու դրամական միջոցներ ամբողջ հասարակության համար, այլև կարևորագույն միջոց կհանդիսանա բնակչության կենցաղի վերափոխման, նրա նյութական, կուլտուրական վիճակի առավել բարելավման համար:

Մ. ՄԿՐՏՉՅԱՆ



# ՃԻՇՏ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ՀՈՂԱՅԻՆ ՖՈՆԴԸ

Մեր ռեսպուբլիկայի մոտ երեք միլիոն հեկտար ընդհանուր տարածության միայն մեկ վեցերորդ մասն է մշակության համար պիտանի վարելահող: Դրա միայն մեկ քառորդն է գտնվում հարթ տարածություններում, ու տրակտորներն ու մեքենաները կարող են աշխատել նորմալ արտադրողականությամբ: Մնացած երեք քառորդը հիմնականում սակավաբեր, բարձրադիր ու թեք լանջերին ընկած փոքր ու քարքարոտ հողակտորներ են, որոնք մեքենահարմար չեն:

Հողերի որակը բնորոշող ցուցանիշներից մեկը տեղի բարձրությունն է: Ռեսպուբլիկայի վարելահողերի մոտ 60 տոկոսը գտնվում է ծովի մակերևույթից 1500—2000 մետր բարձրության վրա, իսկ յոթ տոկոսն ավելի բարձրադիր է. այնտեղ բույսերի վեգետացիայի շրջանը շատ կարճ է լինում, այդ պատճառով էլ հացահատիկը հաճախ չի հասունանում, ցրտահարվում է: Նման հողերը համարվում են ոչ լիարժեք: Ոչ լիարժեք են նաև քարքարոտ հողերը, որոնք կազմում են վարելահողերի մոտ 15 տոկոսը: Քարքարոտ են, հատկապես, նախալեռնային և լեռնային շրջանների հողերը: Այսպես, օրինակ, Աշտարակի շրջանում քարքարոտ հողերը կազմում են նրա վարելահողերի մոտ 27, Եղեգնաձորում՝ 26, Թալինի ու Սիսիանի շրջաններում՝ 25, Անիում՝ 28 տոկոսը և այլն: Աշտարակի ու Թալինի շրջանների որոշ կոլտնտեսություններում հողաշերտի մոտ կեսը քարքարոտ է: Այդ խոչընդոտում է դաշտավարական աշխատանքների, հատկապես վարի մեքենայացմանը:

Հողատարածությունների մյուս առանձնահատկությունը մեր ռեսպուբլիկայում, այդ դաշտերի փոքրությունն ու անհարթությունն է: Հաշվումները ցույց են տալիս, որ վարելահողերի 40,8 տոկոսը կազմում են մեկ հեկտարից փոքր հողակտորները, իսկ որոշ շրջաններում (Մեղրիում) մինչև կես հեկտար մեծություն ունեցող հողակտորները կազմում են ամբողջ հողակտորների 12 տոկոսը:

Պարզ է, որ նման պայմաններում ոչ բոլոր մեքենաները կկարողանան աշխատել, իսկ աշխատելու դեպքում էլ նրանց արտադրողականությունը շատ ցածր կլինի, աշխատանքն անորակ:

Չնայած այս առանձնահատկություններին, շատ կոլտնտեսություններում ու սովխոզներում գյուղատնտեսությունը պատշաճ ձևով վարելու և հողագործների ազնիվ աշխատանքի շնորհիվ հողը տալիս է առատ բերք: Այսպես, Արտաշատի արտադրական վարչության Այգեզարդի կոլտնտեսությունը նույն դաշտից մեկ տարում ստանում է եգիպտացորենի երկու բերք: Բասարգեչարի արտադրական վարչության Զախրլու գյուղի կոլտնտեսությունը 446 հեկտար հասկավոր կուլտուրաների ցանքատարածությունների յուրաքանչյուր հեկտարից ստանում է միջին հաշվով 25 ցենտներ բերք: Իջևանի արտադրական վարչության Թալա գյուղի կոլտնտեսությունը լեռնային պայմաններում մացառուտներից մաքրել ու օգտագործելի է դարձրել մոտ 90 հեկտար հողատարածություն:

Ցավոք սրտի ոչ բոլոր կոլտնտեսություններն ու սովխոզներն են արդյունավետ օգտագործում հողը, խնամքով պահպանում այն: Ավելին, կան առանձին կազմակերպություններ, որոնք նույնիսկ ցանքատարածություններից դուրս են գցում բերրի հողատարածությունները:

Բացի այդ, տասնյակ տարիների ընթացքում համարյա ոչինչ չի արվել թեք

լանջերում գտնվող հողերի օգտագործման համար համապատասխան մեքենաներ ու գործիքներ արտադրելու ուղղությամբ: Շատ քիչ տնտեսություններ են ապահովված կենդանի քարշող ուժով՝ ոչ տրակտորահարմար հողերում դաշտային աշխատանքները կատարելու համար:

Միայն վերջերս Վոլգոգրադի գործարանը ձեռնարկել է թողարկել ԴՏ—5, լանջերը մշակող հզոր տրակտոր, որը մասամբ բավարարում է լեռնային հողերի մշակման ագրոտեխնիկական պահանջները: Ժամանակն է, որպեսզի առաջավոր գիտության փորձով մեզ մոտ ձեռնամուխ լինեն 10—15 ուժանոց տրակտորների արտադրությանը, որոնք կաշխատեն մինչև 30 աստիճան թեքություն ունեցող լանջերում:

Քանի որ չունենք նման մեքենաներ ու գործիքներ, մենք պետք է բազմակողմանի, ըստ տնտեսությունների հաշվի առնենք մշակությունից հանված ու խոպանացած թեք, քարքարոտ, փոքր կտորներով բոլոր հողերը ու մշակենք դրանց օգտագործման համար անհրաժեշտ միջոցառումներ, նկատի ունենալով կենդանի քարշող ուժի ու համապատասխան գյուղատնտեսական ինվենտարի պահանջը:

Թեք լանջերում գտնվող խոպանացած հողերի մի մասը տարիների ընթացքում դարձել է քարքարոտ, տեղ-տեղ ծածկվել թփուտներով (Ղափանում): Պարզ է, որ լեռնալանջերում հողերն անմշակ թողնելիս խոպանանում են. նրանց բերրիությունը վերականգնելու համար անհրաժեշտ են լրացուցիչ ագրոմելիորատիվ միջոցառումներ: Օրինակ, Ալափարսի սովխոզի թեք լանջերի որոշ դարավանդների հողերն, ունենալով մշակության համար բավարար վարելաշերտ, երկար ժամանակ անխնամ մնալով տեղ-տեղ քարքարոտ են դարձել, խոպանացել: Այդպիսի հողերի յուրացման խնդիրը պետք է լուծել ոչ թե նեղագրոտեխնիկական տեսանկյունով, այլև տնտեսական լուրջ հաշվարկի օգնությամբ: Դարավանդներ առաջին հերթին պետք է պատրաստել արդյունաբերական կենտրոնների շուրջը գտնվող թեքություններում, ուր հնարավոր կլինի մշակել բարձր արժեքավոր բանջարանոցային կուլտուրաներ: Մեր կարծիքով կարիք չկա ավերել այն միջնակները, որոնք այս կամ այն չափով նպաստում են հողատարման դեմ պայքարելուն:

Դարավանդները կարևոր ագրոտեխնիկական կառուցումներ են, որ ստեղծվել են թեք լանջերում գտնվող հողերի օգտագործման նպատակով: Դրանք մինչև այժմ էլ էրոզիայի դեմ պայքարելու լավագույն միջոցներից են: Քաջ գիտենալով այդ, շատ տնտեսությունների ղեկավարներ, դաշտերն ընդարձակելու, «տրակտորահարմար» դարձնելու նպատակով քանդում են դարավանդներն ու դրանով իսկ պայմաններ ստեղծում էռոզիայի՝ հողերի քամահարման համար: Այսպես, օրինակ, Սևանի շրջանի Վարսեր գյուղի թեք լանջերից մեկում գտնվող հողամասն ունի հարավային էքսպոզիցիա: Միայն մի քանի տարի է անցել դարավանդները հարթեցնելուց և այստեղ արդեն առկա է ջրի էռոզիայի ազդեցությունը: Դաշտի որոշ մասերում սկսել են հոսել առվակներ, իսկ նրա վերին եզրում, ուր տեղանքի թեքությունը հասնում է մոտ քսան աստիճանի, արդեն ձորակներ են առաջանում:

Համեմատելով դարավանդները պահպանած և «հարթեցրած» լանջերի արտերի աշնանացան ցորենի բերքը՝ տեսնում ենք, որ առաջինում տատանվում է 8,5 ց. հեկտարից (վերին դարավանդում) մինչև 12,3 ց/հ (ներքին դարավանդում), մինչդեռ երկրորդի՝ վերին մասում ստացվել է միայն 3,7 ց/հ, իսկ ներքին մասում՝ 10,8 ց/հ բերք:

Այս տվյալները բավական են ցույց տալու համար, թե ինչպիսի կարևոր դեր են խաղում դարեր առաջ տեխնիկայի բացակայության դժվարին պայմաններում ստեղծված ու մինչև օրս պահպանված այդ դարավանդները հողի բերրիության պահպանման գործում: Պարզ է, որ բոլոր դեպքերում անթույլատրելի է դաշտերի մեծացման նպատակով վերացնել դարավանդները: Պետք է պահպանել դրանք, թույլ չտալ ավերել, որովհետև դրա հետևանքը լինում են հողմահարումն ու բերրիության անկումը:

Լեռնային պայմաններում հողերի պահպանման գործում կարևոր նշանակություն ունեն միջնակները, որոնք արգելակում են քամու ու ջրի մակերեսային հոսքի քայքայիչ գործունեությունը:



Շատ տեղերում, առանց հաշվի առնելու միջնակների այդ դերը՝ քանդում են դրանք ու դրանով իսկ նպաստում հողի փոշիացմանը: Այսպես՝ Գորիսի շրջանի Քարահունջ, Խոտ և Շինուհայր գյուղերի այն դաշտերը, որոնք ընկած են Որոտան գետի ու նրա վտակների խոր ձորերի ափերին, այնքան էլ մեծ թեքություն չունեն, բայց մակերեսային հոսքի ջրերը, աշնանն ու գարնանը փչող ուժեղ քամիները խիստ քայքայում են դրանք: Լեռներից դեպի հարավ փչող քամիները տանում են Որոտանի ափերին ընկած բաց դաշտերի հողի մակերեսային շերտը, աղքատացնում վարելահողերը: Այստեղ, Որոտանի ձորափնյա մասերում հողատարման պրոցեսն այնքան ուժեղ է, որ տեղ-տեղ դաշտերն ամբողջովին լերկացել են վարելաշերտերից ու երևում են միայն ցեմենտացած կարբոնատային շերտն ու քարերը:

Միջնակներն այստեղ ո՛չ միայն որոշ չափով դարավանդների դեր են կատարում, այլև դրանց քարապատերն ու բարձր թփուտները պաշտպանում են այդ դաշտերը քամուց: Դրանց վերացումը պայմաններ է ստեղծում ջրի ու քամիների քայքայիչ գործունեության համար:

Հողերի պահպանման գործում շատ անելիքներ կան հարթավայրային շրջաններում: Այժմ էլ մի շարք կոլտնտեսություններում շարունակվում է հողերի աղակալման պրոցեսը, որի հիմնական պատճառն է բարձր ֆիլտրացիան, հատկապես Արտաշատի ջրանցքից ու նրա ջրբաժան ցանցից: Գրունտային ջրերը բարձրանում են նաև ցանքատարածություններն անկանոն ջրելու և դաշտերում տեղի ունեցող մակերեսային (ջրի) կորստի ու նրա ֆիլտրացիայի հետևանքով:

Գրունտային ջրերն անհրաժեշտ մակարդակի վրա պահելու համար կառուցվում է դրենաժային ցանց, որը եղած բաց դրենաժային ցանցի հետ միասին զբաղեցնում է հսկայական հողային տարածություններ: Դրենաժային բաց ցանցի թերությունները, նրա հաճախակի մաքրման հետ կապված ծախսերն ու ոչ լիարժեք աշխատանքը օրակարգի հարց են դարձնում փակ դրենաժային սիստեմին անցնելը, որը հնարավորություն կտա շահագործելու հարյուրավոր հեկտար բերրի հողային տարածություններ: Փակ դրենաժներ են կոչվում այն դրենաժները, որոնց հատակում դրված են թրծված կավի խողովակներ, որոնց միջցով հոսում են գրունտային ջրերը: Դրենաժների կառուցման այդ եղանակը արդեն երեսուն տարուց ավելի (շատ արդյունավետ) կիրառվում է մեր հարևան Ադրբեջանի Մուղանի հարթավայրում: Այս դեպքում ամեն մի կիլոմետրում մենք շահում ենք մոտ հինգ հեկտար հողատարածություն ու ազատվում բաց դրենաժների մաքրման ծախսերից: Այդ միջոցառումը միաժամանակ կմիացնի դրենաժային կտրտված փոքր հողակտորները, և պայմաններ կստեղծվեն դաշտային աշխատանքների մեքենայացման ու մեքենաները բարձր արտադրողականությամբ օգտագործելու համար:

Այժմ արդեն բաց դրենաժային ցանցը գլխավոր արգելակն է նորագույն մեքենաների կիրառման: Այսպես՝ չի օգտագործվում թևավոր անձրևացնող մեքենան, որի կիրառմամբ ո՛չ միայն կստեղծվեն ավելի բարենպաստ ջրային պայմաններ, խնայողաբար կօգտագործվեն ջրային ռեսուրսները, այլ այն կդառնա հողերի աղակալման դեմ պայքարելու հզոր միջոց: Այդ բոլորի հետ միասին չպետք է մոռանալ, որ բաց դրենաժային ցանցը մոլախոտերի բազմացման ու մալարիայի տարածման օջախ է:

Հայտնի է, որ երկաթգծի ու խճուղիների շրջակայքի հողերը Հայաստանում շատ քիչ են օգտագործվում իրենց ուղղակի նպատակների համար: Ինչպես հայտնի է, այդ հողերը պետք է պատվեն բազմամյա տնկարքների շերտով՝ ձյան հոսքից ու քամիներից պաշտպանելու համար, սակայն այդ չի կատարվում: Սովորաբար, հարմար կտորներն օգտագործում են համապատասխան ծառայության առանձին աշխատողներ: Մեծ մասամբ էլ դրանք մնում են անմշակ, դառնալով մոլախոտերի տարածման բույն: Ժամանակն է, որ շահագրգռված կազմակերպությունները երկաթուղու և ճանապարհների եզրերին ծառեր տնկեն:

Մեր շատ ձեռնարկությունների տրամադրության տակ կան տարածություններ, որոնց զգալի մասը մնում է անօգտագործելի, կամ օգտագործվում է անփական կարիքների համար։ Հաճախ էլ շինարարության պլանները, նախագծերն ու նախահաշիվները կազմելուց շատ առաջ հողամաս է առանձնացվում նորակառույցի համար. այդ հողամասը տարիներ շարունակ մնում է անօգտագործելի, մինչև շինարարության պլանի հաստատումն ու աշխատանքն սկսելը։ Այսպիսով հողը մնում է անմշակ, հասարակությունը նրանից օգուտ չի ստանում։

Ավանի աղի հանքերի ամբողջ բլուրը՝ մոտ 20 հեկտար տարածություն, արդեն երկրորդ տարին է չի մշակվում, հանքվարչությունն էլ այն չի օգտագործում։ Միայն տեղ-տեղ թափթփվում են հանքահորի, հողի ու բուսականության համար վնասաբեր ավելցուկները, որի հետևանքով շրջակա տարածություններում բազմամյա տնկարքների չորացման պատճառ են դառնում։ Հաճախ շինարարական կազմակերպություններն աշխատում են ավելի մեծ տարածություններ վերցնել քարհանքերի համար, քան պահանջվում է, սակայն այդ հանքերն օգտագործելուց հետո քանդածը չեն կարգավորում։

Ջվարթնոցի մոտ հիսուն հեկտարանոց ավազահանքերն օգտագործվելուց հետո մնացել են առանց հարթեցնելու և ավերակ են հիշեցնում։ Ավանի խճուղու երկու կողմերում ընկած ինչպես ավազի, այնպես էլ քարի հանքերը (բավականին մեծ տարածություն) թողնված են քանդրված, չնայած շահագործումը վաղուց դադարեցված է։

Քաղաքի շինարարական հիմնարկները հսկայական քանակությամբ հող են տեղափոխում քաղաքից դուրս, որը կարող էր օգտակար լինել քարհանքերի մնացորդների օգտագործման համար։ Սակայն այդ հողերը թափում են ուր պատահի, կեղտոտում քաղաքի շրջակայքը։ Արդյոք ներելի՞ է, որ քաղաքից դուրս, դեպի Արտաշատ տանող խճուղու երկու կողմերում թափվում են գործարանային ամեն տեսակի, հաճախ բույսերի համար խիստ թունավոր մնացորդներ, զանազան այնպիսի նյութեր, որոնք այրում ու սպանում են հողը, շինանյութերի մնացորդներ և այդ ամենի հետ՝ հսկայական քանակությամբ այգիների ու փլատակների պարարտ հող։ Մի՞թե Երևանի քաղսովետը չի կարող հատուկ աղբանոցներ ստեղծել արդյունաբերական ձեռնարկությունների՝ բույսերին վնասող անպետք նյութերը թափելու համար։

Գորիսի շրջանում կառուցվում է Որոտանի հիդրոէլեկտրակայանը, էլեկտրասյուները կամ այլ շինարարական նյութեր տեղափոխում են որտեղով ուզում են, մոռանալով, որ դրա համար կա հատուկ ճանապարհ. ամենուրեք ոչնչանում են ցանքերը, նոր ճանապարհներ ստեղծելով։ Վերջապես մեր երկրաբանները, շինարարները իրենց հետախուզական աշխատանքների ընթացքում անթիվ փոսեր են փորում կամ ճեղքում յանչերն ու այդպես թողնում։ Չէ՞ որ այդ ճեղքերի ու փոսերի մեծ մասը բացվում է մշակելի հողերում, փչացնում հողը կամ դժվարացնում նրա մշակությունը, իսկ հետագայում դրանք էռոզիայի օջախներ են դառնում։

Ժամանակը չէ՞ արդյոք կարգավորելու այդ գործը։ Դրա համար անհրաժեշտ է, որ ամեն մի մասնագետ իր աշխատանքը վերջացնելուց հետո կարգավորի իր քանդածը, ավելի հոգատար լինի հայրենի բնության նկատմամբ, գործով և խոսքերով չսահմանափակվի իր մասնագիտության շրջանակներով— երկրաբան է, ճարտարապետ, թե շինարար, աշխատի նաև գյուղատնտեսության զարգացման գործում մուծել իր լուման, հնարավորության սահմաններում ավելացնել մեր մեքենահարմար ցանքատարածությունները։

Ս.. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ



# ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԻՆ

## ՊԵՏԱԿԱՆ-ՄՈՆՈՊՈԼԻՍՏԱԿԱՆ ԿԱՊԻՏԱԼԻԶՄԸ ԱՄՆ-ՈՒՄ

Երկրորդ համաշխարհային պատերազմն ուժեղ ներգործություն ունեցավ կապիտալիստական երկրների էկոնոմիկայի վրա։ Այդ ներգործությունը տարբեր երկրների համար տարբեր էր՝ նայած այն բանին, թե տվյալ երկիրն ինչ չափով է մասնակցել պատերազմին։ Որոշ երկրներում էկոնոմիկայի վերելք էր տեղի ունենում, արտադրողական ուժերն աճում էին, իսկ մյուսներում արտադրությունը կրճատվում էր, արտադրողական ուժերը քայքայվում էին։

Պատերազմի ժամանակաշրջանում ԱՄՆ-ում արտադրությունը խիստ աճում էր, համակենտրոնանում։ 1939 թվականին արդյունաբերական ձեռնարկությունները գնահատվում էին 40 միլիարդ դոլար, իսկ 1948 թվականին նրանց արժեքը հասավ 60 միլիարդ դոլարի, այսինքն՝ 6 տարում աճեց 50 տոկոսով։ Արդյունաբերական նոր սարքավորման վրա փաստորեն ծախսվել էր 26 միլիարդ դոլար։ 1943 թվականին երկրում կային 10 ձեռնարկություն, որոնցից յուրաքանչյուրում միջին թվով ամսական զբաղված էին ավելի քան 100 հազար բանվոր։ ԱՄՆ-ի բոլոր բանվորների մոտ $1/10$-ը, կամ 2 միլիոն մարդ, աշխատում էին այդ ձեռնարկություններում։ Ինչպես խոշորագույն ձեռնարկությունների թիվը, այնպես էլ ԱՄՆ-ի էկոնոմիկայում ունեցած նրանց տեսակարար կշիռն զգալիորեն աճեցին։ Ութ վիթխարի կորպորացիաների եկամուտներն անցան 1 միլիարդ դոլարից[1]։

Վերջին տարիներս, ինչպես նշված է Կոմունիստական և բանվորական պարտիաների 1960 թ. Հայտարարության մեջ, «աննախընթաց չափերով ուժեղանում է կապիտալիստական համակենտրոնացման պրոցեսը»։ Այդ տեղի է ունենում այն բանի շնորհիվ, որ պետությունը, ծառայելով մոնոպոլիաներին, ավելի ակտիվ է միջամտում այդ պրոցեսին։ Արտադրության համակենտրոնացման և կապիտալի կուտակման աճը, վերջին հաշվով, պայմանավորում է պետական-կապիտալիստական տենդենցների աճումը, իսկ այդ իր հերթին, ներգործում է արտադրության ու կապիտալի համակենտրոնացման զարգացման վրա։ Այդպիսով տեղի է ունենում դրանց փոխադարձաբար միմյանցից կախված զարգացում, որտեղ համակենտրոնացումը որոշիչ է։



Այժմ ԱՄՆ-ի տերիտորիայում գտնվող արդյունաբերական սարքավորման 45 տոկոսը, այսինքն՝ ամբողջ աշխարհում արտադրվող սարքավորման մոտ

[1] Տե՛ս Е. Варга. Основные вопросы экономики и политики империализма, 1947, էջ 130.

մեկ քառորդը, գտնվում է 135 ընկերությունների վերահսկողության տակ: Երկրի էկոնոմիկայում վճռական դիրքերը գրավել են մի քանի առավել հզոր խմբեր:

Ծանոթանանք 1 միլիարդ դոլարից ավելի ակտիվ ունեցող կորպորացիաների աճը ցույց տվող թվերին ԱՄՆ-ում: Առաջին համաշխարհային պատերազմից հետո երկրում կար ընդամենը 6 միլիարդատեր կորպորացիա: Երկրորդ համաշխարհային պատերազմի սկզբներին դրանց թիվը հասնում էր 31-ի, 1945 թվականին՝ 43-ի, իսկ 1959 թվականին՝ 93-ի: Միլիարդատեր կորպորացիաների ընդհանուր ակտիվը 1959 թվականի վերջին հասավ 286,6 միլիարդ դոլարի: Ամերիկյան կորպորացիաների ակտիվի մոտ մեկ երրորդը կենտրոնացված է ընկերությունների մի փոքր խմբի ձեռքում, որոնք կազմում են կորպորացիաների ընդհանուր թվի 0,01 տոկոսը[1]:

Աշխարհի 100 խոշորագույն արդյունաբերական ընկերություններից, հաղորդում է իտալական «Տեմպո» թերթը, 67-ը գտնվում են ԱՄՆ-ում: Կապիտալի չափերով աշխարհում առաջին տեղը գրավում է ԱՄՆ-ի «Ջեներալ մոտորս» ավտոմոբիլային կոնցեռնը, երկրորդ ու երրորդ տեղերը՝ նույն ամերիկյան «Ստանդարտ օյլ» և «Ֆորդ մոտորս» ընկերությունները: 20 ամենախոշոր արդյունաբերական կոնցեռններից միայն երկուսն են եվրոպական. մնացած բոլորը գտնվում են ԱՄՆ-ում:

Կապիտալի համակենտրոնացումը ԱՄՆ-ում առանձնապես լավ են լուսաբանում հետևյալ թվերը, որոնք բերել է ամերիկյան առաջադեմ տնտեսագետ Ջ. Բուդիշը: Առ 1-ը հունվարի 1962 թ. ԱՄՆ-ում գործում էր 475,2 հազար ակցիոներական ընկերություն կամ ձեռնարկատիրական միավոր: 1961 թվականին նրանց ամբողջական զուտ շահույթը կազմել է 23,3 միլիարդ դոլար: 2178 խոշոր ընկերություններ շահույթ են ստացել (հարկերը վճարելուց հետո) 17,8 միլիարդ դոլարի չափով: Այլ կերպ ասած, բոլոր ընկերությունների 0,5 տոկոսից էլ պակաս մասը յուրացրել է ընդհանուր շահույթների երեք քառորդից ավելին՝ 76,4 տոկոսը:

Պատերազմական և հետպատերազմյան տարիներին արտադրության ու կապիտալի համակենտրոնացման կարևորագույն առանձնահատկությունը բուրժուական պետության աճող դերն է, մոնոպոլիաների օգտին վարվող նրա տնտեսական քաղաքականությունը: Համակենտրոնացման պրոցեսի ուժեղացմանը պետությանը ցույց տված մասնակցությունը երևում է ԱՄՆ-ի պետական սեփականության տեսակարար կշռի աճից:

Պետության սեփականությունը կազմող ձեռնարկությունները առաջացել են գլխավորապես պատերազմի ժամանակաշրջանում, երբ պահանջվում էր խիստ ընդլայնել արդյունաբերական արտադրանքի ծավալը՝ ռազմական պահանջները բավարարելու նպատակով: Հաշվի առնելով երկու համաշխարհային պատերազմների միջև ընկած ժամանակաշրջանում արտադրության խրոնիկական թերբեռնվածությունը և երկյուղ կրելով, որ արտադրության ընդլայնումը հետագայում կարող է նորից ավելացնել ավելորդ կարողությունները, ամերիկյան մոնոպոլիաներն այդ գործի ամբողջ ռիսկը դրեցին պետության վրա: Այսպես, երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին մշակող արդյունաբերության նոր ձեռնարկությունների կառուցման վրա ծախսված 26

1 Տե՛ս Экономика зарубежных стран М., 1962, էջ 256.



միլիարդ դոլարից 17,5 միլիարդ դոլարը ծախսել է պետությունը[1]: Պատերազմի ժամանակ առաջացած և հետպատերազմյան տարիներին զարգացող ատոմային արդյունաբերությունը ևս գրեթե ամբողջապես ստեղծվել է պետության միջոցներով: Այսպիսով, ԱՄՆ-ի պետական սեփականությունը կրում է վառ կերպով արտահայտված ռազմական բնույթ: Ֆեդերալ անշարժ գույքի հաշվի առնված ամբողջ արժեքը 1956 թվականին կազմում էր 40,8 միլիարդ դոլար: Այդ գումարից ռազմական գերատեսչությունների (պաշտպանության մինիստրություն, ատոմային էներգիայի հանձնաժողով և այլն) բաժինը կազմում էր 30,1 միլիարդ դոլար[2]:

Պետական մոնոպոլիստական կապիտալիզմի էությունը մոնոպոլիաների և պետության վիթխարի ուժերի միացումն է մեկ միասնական մեխանիզմի մեջ: Իմպերիալիզմի դարաշրջանում, գրում էր Վ. Ի. Լենինը, տեղի է ունենում պետական մեքենայի արտասովոր ուժեղացում, նրա չինովնիկական և ռազմական ապարատի աննախընթաց աճ: Նա նշում է, որ աշխատավոր մասսաների հրեշավոր ճնշումը պետության կողմից, որը գնալով ավելի սերտորեն է ձուլվում կապիտալիստների ամենազոր միությունների հետ, ավելի ու ավելի հրեշավոր է դառնում:

Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի ամենազարգացած երկրի՝ Ամերիկայի Միացյալ Նահանգների օրինակով կարելի է առավել լրիվ չափով տեսնել պետության ենթարկումը հզորագույն մոնոպոլիաներին, իսկ մյուս կողմից՝ պետության աճող ազդեցությունը երկրի տնտեսական կյանքի բոլոր կողմերի վրա:

Մոնոպոլիստների զինանոցում կան պետական ապարատն իրենց շահերին ենթարկելու զանազան միջոցներ: Դրանցից են, օրինակ, ինչպես մոնոպոլիաների լայնորեն կիրառվող վերահսկողությունը պետության նկատմամբ, այնպես էլ նրանց անդրկուլիսային ճնշումը: Պետական իշխանության մեխանիզմի ենթարկումը ֆինանսական օլիգարխիայի շահերին իրականացվում է նաև «Արդյունաբերողների ազգային ասոցիացիա» ձեռնարկատիրական միավորման և ֆինանսական կապիտալի քաղաքական պարտիաների՝ ռեսպուբլիկական ու դեմոկրատական պարտիաների միջոցով, մոնոպոլիստական միավորումների ու կառավարության միջև եղած անձնական ունիայի, մոնոպոլիաների ղեկավարների հետ պետական կառավարման օրգանների սերտաճման, «լոբբիների», այսինքն՝ կուլուարային քաղաքագետների, կաշառքի միջոցով և այլն:

Ամերիկյան հայտնի հրապարակախոս Ջ. Դևիսը իր Աշխարհի քաղաքացիներ գրքում ցույց է տալիս այն մարդկանց, ովքեր իրոք կառավարում են ԱՄՆ-ը: «Համազգային մասշտաբով,— գրում է նա,— երկիրը տնօրինում են երեք խմբեր՝ քաղաքական ապարատը և այդ ապարատը վերահսկող ու օգտագործող պրոֆեսիոնալ քաղաքագետները, ֆինանսական և արդյունաբերական մագնատները, որոնք փող և նյութական ռեսուրսներ են դնում քաղաքագետների տրամադրության տակ և, վերջապես, միլիտարիստները, որոնք

1 Տե՛ս Дж. Блэр, Х. Хлугтон, и М. Роуз, Экономическая концентрация и вторая мировая война, М., 1948, էջ 60:

2 Տե՛ս И. Драгилев, Г. Руденко, Монополистический капитализм, М., 1961, էջ 416:

կլանում են պետական ծախսերի մոտ 40 միլիարդ դոլարը»։ Այդ կառավարող էլիտայի իշխանությունը ներկայումս ավելի ու ավելի է ուժեղանում, տեղի է ունենում պետական ապարատի և մոնոպոլիստների այնպիսի սերտ միահյուսում, որ դժվար է որոշել նրանց միջև եղած սահմանը։ ԱՄՆ-ի մոնոպոլիստներն իրենց ձեռքն են վերցնում պետական գլխավոր պոստերը, իրենց ներկայացուցիչներին տեղավորում են պետական ապարատում՝ նրանց տրամադրելով առաջատար պաշտոններ, պետական բարձրաստիճան պաշտոնյաներն էլ իրենց հերթին ծառայում են մասնավոր խոշորագույն ֆիրմաներում, գրավելով կարևոր պոստեր։

Մոնոպոլիաների և պետական ապարատի միջև անձնական կապերի ամրապնդման կարևոր գործոններից մեկն այն է, որ կառավարության խոշորագույն գործիչներն ու բարձրաստիճան պաշտոնյաները ղեկավար աշխատանքի են անցնում մասնավոր մոնոպոլիստական ընկերություններում։

Մոնոպոլիստները մեծ պատրաստակամությամբ են իրենց մոտ աշխատանքի ընդունում նախկինում կառավարության մեջ, պետական ապարատում, ռազմա-տնտեսական և դիվանագիտական օրգաններում բարձր պաշտոններ գրաված գեներալներին ու ծովակալներին։ Դա երկրի տնտեսական ու հասարակական-քաղաքական կյանքը ռազմականացնելու ձևերից մեկն է։ Գեներալներին ու բարձրաստիճան սպաներին մասնավոր մոնոպոլիստական ընկերություններում ծառայության ներգրավելը ձեռնտու է վերջիններին այն պատճառով, որ այդ զինվորականները, նախ՝ լավ գիտեն, թե բանակը մշտապես ինչպիսի արտադրանքի կարիքն է շատ զգում և, երկրորդ, լավ գիտեն այն զսպանակները, որոնցից կախված է ռազմական պատվերների ստացումը, այլ կերպ ասած՝ օգնում են ավելի հաջող իրականացնելու սպառազինությունների մրցավազքը և ագրեսիայի նախապատրաստումը։

Կառավարության վրա մոնոպոլիստների գործադրած ճնշման տարածված մեթոդներից մեկը «լոբբիզմն» է։ Ամերիկացիներն իրավամբ լոբբիստներին անվանում են կոնգրեսի երրորդ անտեսանելի պալատ։

Լինելով մոնոպոլիստների խոշորագույն կազմակերպությունների գործակալները, լոբբիստները գործում են կոնգրեսի և պետական մյուս հիմնարկների կուլիսների հետևում, զբաղվելով մոնոպոլիստներին հաճելի օրենքներ ու որոշումներ նախապատրաստելով և անցկացնելով։ Նրանք անձնական կապեր են հաստատում կոնգրեսմենների և կառավարական հիմնարկությունների ղեկավար պաշտոնյաների հետ, գնում են օրենսդիրների ձայները, ստանում շահութաբեր պատվերներ։

Վերջին տարիներս առանձնապես շատ է զարգացել ռազմական ու ռազմա-արդյունաբերական «լոբբիզմը»։ Ներկայացնելով ռազմական և ռազմաարդյունաբերական ֆիրմաները, «պաշտոնաթող սպաները հեղեղում են պաշտպանական արդյունաբերության ղեկավարության առանձնասենյակները,— գրում է Լուկ ամսագիրը։— Ճնշում են առանձին կոնգրեսմենների, որոնք վճռական պոստեր են գրավում կոնգրեսի հանձնաժողովներում։ Իրենց հերթին կոնգրեսի անդամները գործադրում են քաղաքական-տնտեսական ճնշում»։

Ռուրկեր Թերթը, 1963 թվականի մարտի 24-ի համարում պատմում է, թե Վաշինգտոնում ինչ կատաղի պայքար է մղվել ռազմա-տնտեսական կոմպլեքսի երկու հսկաների՝ «Ջեներալ դայնեմիքս»-ի և «Բոինգ էյկրաֆտ»-ի



միջև, Նոր տիպի տակտիկական փորձնական կործանիչի արտադրության պատվեր ստանալու համար։ Պատվերը՝ «մի համեղ պատառ, որը հարկատուներին նստելու է վեց կամ յոթ միլիարդ դոլար», ստացավ «Ջեներալ դայնեմիքս»-ը։ Սակայն «Բոինգ էյկրաֆտ»-ը մոբիլիզացրեց իր բոլոր հզոր լոբբիներին, որպեսզի վերանայել տա այդ որոշումը։ Երկու հսկա ընկերությունների պայքարի մեջ ներգրավվեց ամբողջ պաշտոնական Վաշինգտոնը։ Այդ ընկերությունների լոբբիստներն ուժեղ ճնշում գործեցին կառավարության, կոնգրեսմենների, ռազմական դեպարտամենտի վրա։ Մի ամբողջ շարք պաշտոնական անձեր շատ ակտիվ կերպով ներգրավվեցին մրցակցող ֆիրմաների շահերի համար մղվող պայքարի մեջ։ Դրանցից էր սենատոր Գ. Ջեկսոնը, որին սովորաբար անվանում են ««Բոինգ»-ի սենատոր»։ Ռազմա-ծովային ուժերի մինիստր Ֆ. Կորտին, պաշտպանության մինիստրի տեղակալ Ռ. Գալպատրիկին և մյուսներին «Բոինգ»-ի շահերի պաշտպանները մեղադրում են այն բանում, որ նրանք օգտագործել են իրենց պաշտոնական դիրքը նոր կործանիչի պատվերները «Ջեներալ դայնեմիքս»-ի օգտին բաշխելիս։



Մենք կանգ առանք պետական ապարատը մոնոպոլիստներին ենթարկելու բազմաթիվ միջոցներից միայն մի քանիսի վրա, երբ մի բուռ միլիարդատերեր ու միլիոնատերեր կարողանում են առանց վերահսկողության տնօրինել երկրի բոլոր հարստությունները։ Տեսնենք, թե մոնոպոլիաներն ինչ հիմնական գծերով են պետությունն օգտագործում իրենց նպատակների համար։

Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի հիմնական ձևերից մեկը պետական գնումների աճն է։ ԱՄՆ-ում պետությունը ապրանքների ամենախոշոր գնորդն է։ Ավելացնելով մասնավոր մոնոպոլիստական ֆիրմաներից կատարած իր գնումները, պետությունը ձգտում է կապիտալիստական արտադրության համար երաշխավորված շուկա ստեղծել։ Պետական գնումների վերլուծությունն ի հայտ է բերում դրանց բացահայտ միլիտարիստական բնույթը, հստակորեն ցույց տալիս, որ պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը հանդես է գալիս զինվորական համազգեստով։

«Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը,— ասված է ՍՄԿՊ ծրագրում,— չլսված չափերով ուժեղացնում է միլիտարիզմը։ Իմպերիալիստական պետությունները խաղաղ ժամանակ էլ հսկայական զինված ուժեր են պահում։ Ռազմական ծախսերը կլանում են պետական բյուջեների ավելի ու ավելի մեծ մասը։ Իմպերիալիստական պետությունները վերածվում են միլիտարիստական, ռազմա-ոստիկանական պետությունների. ռազմականացումն ընդգրկում է բուրժուական հասարակության կյանքը» [1]։

Ռազմական պատվերներ։ Ահա այն հիմնական ուղին, որով կառավարությունն ապահովում է խոշորագույն մոնոպոլիստների շահույթները ի հաշիվ պետական բյուջեի։ Այդ պատվերներն իրականացվում են սպառազինությունների կատաղի մրցավազքի պայմաններում, երբ դրանց մեծ մասը ստանում են փոքրաթիվ, բայց հզոր արդյունաբերական կորպորացիաները։ 1962 թվականին 7 ընկերություններ ստացան այդ տարվա բոլոր ռազմական պատ-

1 ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 449։

վերների մեկ երրորդը։ Պետք է նշել, որ ելնելով խոշորագույն մոնոպոլիստական կորպորացիաների շահերից, կառավարությունը նրանց պատվերներ է տալիս ամենաարտոնյալ պայմաններով։

Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում մոնոպոլիստները ձգտում են իրենց գործիքի՝ պետության միջոցով անցկացնել «հակաճգնաժամային միջոցառումներ»։ Այժմ ԱՄՆ-ում իրականացվում է այդպիսի միջոցառումների մի ամբողջ սիստեմ, օրինակ՝ ռազմական պատվերների ավելացումը և դրանով իսկ պետական շուկայի ընդլայնումը, որով մոնոպոլիստական բուրժուազիան ձգտում է մասամբ փոխարինել կրճատվող մասնավոր շուկան, վարկային լծակների օգտագործումը, հարկային բեռի փոխադրումը կապիտալիստներից աշխատավորների վրա և դրանով կապիտալ ներդրումների աճի խթանումը։

Սակայն այդ «հակաճգնաժամային միջոցառումները» չեն կարող որոշակի դեր խաղալ, նրանց օգնությամբ կարելի է հասնել միայն փոքր և ժամանակավոր արդյունքների։ ԱՄՆ-ի վերջին տարիների պատմությունը համոզիչ կերպով ցույց է տալիս, որ այդ միջոցառումները, վերջին հաշվով, չեն փրկում տնտեսական ճգնաժամերից, այլ դրանց ամբողջ ծանրությունը բարդում են բնակչության աշխատավոր խավերի ուսերին։

ԱՄՆ-ի կառավարության կողմից պետական-մոնոպոլիստական միջոցառումների վրա կատարվող ծախսերը առաջ են բերում պետական բյուջեի մեծ լարվածություն։ ԱՄՆ-ի պետական բյուջեի եկամուտների հիմքը, ինչպես և բոլոր կապիտալիստական երկրներում, կազմում են հարկերը։

Իսկ ինչի՞ց է կազմվում բյուջետային դոլարը և ինչի՞ վրա է ծախսվում այն։ Ահա բյուջետային բյուրոյի հաղորդագրությունը 1964 թվականի ֆինանսական տարվա մասին [1]։

| Ինչի՞ց է կազմվում բյուջետային դոլարը | Ինչի՞ վրա է ծախսվում բյուջետային դոլարը |
|---|---|
| 1. Անհատական եկամուտներից գանձվող հարկեր . . . . . 47 ցենտ | 1. Ազգային պաշտպանության, օտարերկրյա օգնության և տիեզերքի հետազոտության վրա կատարված ծախսեր . . . 62. ցենտ |
| 2. Կորպորացիաների եկամուտներից գանձվող հարկեր . . . 24 ցենտ | 2. Պետական պարտքի տոկոսների վճարում . . . . . . . . . 10 ցենտ |
| 3. Ակցիզային գանձումներ . 11 ցենտ | 3. Օգնություն պատերազմի վետերաններին . . . . . . . . . 6 ցենտ |
| 4. Փոխառություններ . . 11 ցենտ | 4. Գյուղատնտեսության զարգացման վրա կատարված ծախսեր . . . . . 6 ցենտ |
| 5. Այլ մուտքեր . . . . 7 ցենտ | 5. Մյուս բոլոր ծախսերը . . . . 16 ցենտ |
| Ընդամենը . . . 100 ցենտ | Ընդամենը . . . 100 ցենտ |

Ինչպես տեսնում ենք աղյուսակի առաջին մասից, ԱՄՆ-ի պետական բյուջեի հիմքը կազմում են հարկերը։ Բյուջետային մուտքի գերակշիռ ստացվում է երկրի բնակչությունից՝ ուղղակի և անուղղակի հարկերի ձևով և միայն

[1] *The Worker,* January 22. 1963։



24 տոկոսը՝ կապիտալիստների եկամուտներից գանձվող հարկերից։ Եվ կապիտալիստների ամբողջ եկամուտը չէ, որ ենթակա է հարկման։ Գոյություն ունի հարկային արտոնությունների ու զեղչումների մի ամբողջ սիստեմ, որի հետևանքով նրանց եկամտի զգալի մասը հարկվում է իջեցված դրույքներով կամ բոլորովին ազատվում է հարկադրումից։ Աղյուսակի երկրորդ մասը ցույց է տալիս, որ բյուջետային ծախսերի մեծագույն մասը՝ մոտ 70 տոկոսը, մտնում է արդյունաբերական-ֆինանսական օլիգարխիայի ներկայացուցիչների գրպանը՝ պաշտպանության, օտարերկրյա օգնության, տիեզերքի հետազոտության համար արված հատկացումների և պետական պարտքի տոկոսների վճարման ձևով։ Այսպիսով, պետական բյուջետային ծախսերի առյուծի բաժինը վեր է ածվում մոնոպոլիաների եկամտի և հիմնականում ծառայում էկոնոմիկայի հետագա ռազմականացման նպատակներին։



Հետպատերազմյան տարիներին պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի բնորոշ ձևը կապիտալի պահպանումն է։ ԱՄՆ-ի ֆինանսական օլիգարխիան ձգտում է գերիշխել ոչ միայն երկրի ներսում, այլև ամբողջ աշխարհում։ Մոնոպոլիստներն ԱՄՆ-ի կառավարության օտարերկրյա կապիտալ ներդրումներն օգտագործում են որպես տնտեսական ու քաղաքական զենք՝ իրենց նպատակներին հասնելու համար։ Կապիտալի արտահանումն իրականացվում է տվյալ երկրի էկոնոմիկայում վճռական դիրքեր գրավելու, այն ԱՄՆ-ի տնտեսության կցորդը դարձնելու, վաճառահանության նոր շուկաներ և հումքի աղբյուրներ նվաճելու, ոչ-համարժեքային փոխանակություն կատարելու, գաղութային սիստեմը պահպանելու, դեմոկրատիայի ու սոցիալիզմի դեմ պայքարելու համար և այլն։ Կապիտալի արտահանման վերջնական նպատակը շահույթն է։

Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի կարևոր գիծը մոնոպոլիաների կողմից պետության օգտագործումն է բանվոր դասակարգի և բնակչության մյուս աշխատավոր խավերի վրա հարձակվելու դեպքում։ Պետությունն ակտիվ միջամտում է բանվորների ու ձեռնարկատերերի կոնֆլիկտներին հօգուտ ձեռնարկատերերի, գործադրում է նորանոր հակաբանվորական օրենքներ, ձգտում ուժով ճնշել մասսաների դժգոհությունը։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո սկսված ժամանակաշրջանն ԱՄՆ-ում նշանավորվեց նրանով, որ բանվոր դասակարգն աճող ակտիվություն ցուցաբերեց իր կենսական շահերի համար մղվող պայքարում։ Աշխատանքի վիճակագրության բյուրոյի տվյալներով միայն 1946 թվականին գործադուլավորների թիվը հասավ 4 միլիոն 600 հազարի, իսկ գործադուլների պատճառով առաջացած պարապուրդների թիվը՝ 116 մլն. մարդօրվա [1]։

Այս պայմաններում ռեակցիան, մոնոպոլիաները, կառավարության մեջ եղած նրանց ներկայացուցիչները բանվորական շարժման դեմ մոբիլիզացրին իրենց բոլոր ուժերը՝ ձգտելով կասեցնել նրա նոր վերելքը։ Հարձակումը բանվոր դասակարգի դեմ տեղի էր ունենում իբրև թե «արհմիությունների մոնո-

[1] *Дж. Моррис,* Основные проблемы рабочего движения в США. М., 1961, էջ 53։

պոլ իշխանության» վերացման համար պայքարելու դրոշով։ Բուրժուական մամուլը վայնասուն բարձրացրեց, թե բանվորական շարժումը սպառնում է ԱՄՆ-ի գոյությանը։

1947 թվականի ամռանը մոնոպոլիաները կարողացան էֆեկտիվ զենք ձեռք բերել բանվոր դասակարգի դեմ պայքարելու համար. ԱՄՆ-ի կոնգրեսն ընդունեց հակաբանվորական՝ «Արդյունաբերության մեջ աշխատանքային փոխհարաբերությունների վերաբերյալ ազգային ակտը» կամ Տաֆտ-Հարտլիի օրենքը, որն աշխատավորներն իրավացիորեն անվանեցին «ստրկական աշխատանքի օրենք»։ ԱՄՆ-ի կառավարությունը հնարավորություն ստացավ ստիպելու բանվորներին, որ նրանք աշխատեն կապիտալիստների սահմանած պայմաններով։ Տաֆտ-Հարտլիի օրենքն արգելեց համերաշխության գործադուլները, արտադրության ռացիոնալացման կապակցությամբ որպես «ավելորդներ» հեռացված բանվորներին իրենց աշխատանքում վերականգնելու պահանջը։ Լիովին արգելվեցին կառավարական ձեռնարկությունների բանվորների գործադուլները։ Թեև օրենքը «փակ ձեռնարկությունը», այսինքն՝ առավելապես արհմիությունների անդամներին աշխատանքի ընդունելու իրավունքը չէր արգելում, այնուամենայնիվ այդ հարցի լուծումը հանձնվեց նահանգների իրավասությանը։ Արդեն 1949 թվականին 19 նահանգներում օրենք ընդունվեց «աշխատանքի իրավունքի մասին»։ «Փակ ձեռնարկությունների» կազմակերպումը փաստորեն արգելվեց։ Տաֆտ-Հարտլիի օրենքն արգելեց արհմիութենական ֆոնդերի օգտագործումը քաղաքական նպատակներով, կոմունիստների կամ նրանց համակրողների մասնակցությունը արհմիությունների ղեկավարմանը և սիստեմատիկ ինֆորմացիան վերջիններիս ներքին գործունեության մասին։ Դրանով օրենքը փաստորեն արհմիությունները դրեց կառավարական վերահսկողության տակ։ Այսպիսով, Տաֆտ-Հարտլիի օրենքը որոշակի ցույց է տալիս, որ ԱՄՆ-ի կառավարությունը բացահայտորեն ծառայում է մոնոպոլիաների շահերին։

1959 թվականին մոնոպոլիաները նոր հարձակում սկսեցին բանվորական շարժման դեմ։ Դա պայմանավորված էր այն բանով, որ 1959 թվականին նկատվում էր գործադուլային շարժման հսկայական աճ, որի հետևանքով ձեռնարկատերերը կորցրել էին 65 միլիոն աշխատանքային օր։ Առանձնապես խոշոր իրադարձություն էր պողպատաձուլական ձեռնարկությունների բանվորների վիթխարի գործադուլը, որին մասնակցում էին ավելի քան կես միլիոն մարդ և որը տևեց 116 օր։ Այդ գործադուլի եռուն շրջանում մոնոպոլիաները կոնգրեսի միջոցով անցկացրին Լանդրամ-Գրիֆֆինի նոր հակաբանվորական օրենքը, որը ձևականորեն ուղղված է արհմիությունների ղեկավարության մեջ եղած կաշառակերության դեմ, իսկ փաստորեն՝ բանվորական շարժման դեմ։ «Թեև ամերիկյան շատ արհմիություններ իրոք տուժում են բյուրոկրատների բռնացումից,— գրում է ԱՄՆ-ի բանվորական շարժման հայտնի մասնագետ Ջ. Մորիսը,— օրենքն ամենևին էլ այդ չարիքի դեմ պայքարելուն չի ծառայում։ Ձեռնարկատերերը հիանալի լեզու են գտնում այդպիսի բոսսերի հետ, քանի որ վերջիններս օգնում են նրանց՝ հնազանդության մեջ պահելու բանվորներին։ Խոսքով հանդես գալով արհմիութենական բյուրոկրատիզմի դեմ, ռեակցիան փաստորեն ուզում է քայքայել արհմիությունները»[1]։

[1] *Дж. Моррис*, Антипрофсоюзная реформа в Соединенных Штатах, журнал Новое время, № 3, 1960, էջ 20։



Վերջին ամիսները ԱՄՆ-ի արդյունաբերողների ազգային ասոցիացիան, որը միավորում է մոտ 18 հազար արդյունաբերական ընկերություն, նոր լայն կամպանիա է ծավալել, նպատակ ունենալով անցկացնել այնպիսի ֆեդերալ օրենք, որը սահմանափակեր, ինչպես ինքն է արտահայտվում, «արհմիությունների մոնոպոլ իշխանությունը»։ Ըստ Նյու-Յորք թայմս թերթի հաղորդագրության, արհմիությունների ձեռքն են ընկել այն ներքին փաստաթղթի պատճենները, որոնք կազմել են Արդյունաբերողների ազգային ասոցիացիայի՝ արդյունաբերության մեջ եղած հարաբերությունների հարցերով զբաղվող բաժինը։ Արհմիությունների մոնոպոլ իշխանությունը սանձահարելու ծրագիր վերտառությունը կրող այդ փաստաթուղթը պարունակում է մի բաժին, որը կոչվում է «Հեռանկարային պլանը և կատարման գրաֆիկը»։ Այդ ծրագրի բարձրակետը 1964 թվականն է, երբ «ամբողջ թափով կամպանիա կծավալվի... և բոլոր ուժերը կմոբիլիզացվեն օրենքն ընդունելու համար»։

Խոսելով հակաբանվորական այդ նոր ծրագրի մասին, բեռնատար ավտոմեքենաների վարորդների խոշորագույն անկախ արհմիության նախագահ Ջեյմս Հոֆան վերջերս նշեց, որ այդ ծրագիրը, ինչպես և Լանդրամ-Գրիֆֆինի օրենքը, «...օրինականացնում է արհմիության յուրաքանչյուր անդամի շորթկերբեխեր դառնալը»[1]։



ԱՄՆ-ի ամբողջ հետպատերազմյան պատմությունը ցույց է տալիս, որ մոնոպոլիաները հարաճուն տենդենց ունեն, պետության ակտիվ աջակցությամբ ուժեղացնելու հարձակումը արհմիութենական ու գործադուլային շարժման վրա, քայքայելու բանվորական շարժումը, վերացնելու աշխատավորական մասսաների տարրական կենսական իրավունքները։

ԱՄՆ-ում տեղի ունեցող դասակարգային պայքարի և ամենից առաջ բանվորների տնտեսական պայքարի կոնկրետ փաստերը վճռականորեն հերքում են բուրժուազիայի գաղափարախոսների այն պնդումը, թե երկրում իբր սկսվել է «դասակարգային խաղաղություն», «բանվորների և կապիտալիստների դասակարգային շահերի ընդհանրություն»։ Իր կենսական շահերի համար բանվոր դասակարգի մղած պայքարը պայմանավորված է արտադրության կապիտալիստական եղանակի ներքին օրինաչափություններով և այդ պայքարը գնալով սրվում է։ Չնայած հիշատակված սահմանափակումներին, գործադուլների ընդհանուր թվով ԱՄՆ-ը գրավում է աշխարհում առաջին տեղը։

Մոնոպոլիաների ճնշման դեմ ԱՄՆ-ի բանվոր դասակարգի մղած պայքարը տեղի է ունենում համադեմոկրատական շարժման շրջանակներում։ Բայց կասկածից դուրս է, որ այդ պայքարի պրոցեսում կազմավորվող հակամոնոպոլիստական ժողովրդական կոալիցիան կարող է խարխլել մոնոպոլիստական բուրժուազիայի քաղաքական տիրապետությունը և բանվոր դասակարգին դուրս բերել բացահայտ պայքարի հանուն իր քաղաքական ազատագրության

[1] *The Worker*, March *31. 1963*, էջ 4։

**Ա. Ա. ՄԿՐՏՉՅԱՆ**



# ՏՈՂԵՐ ՆԱՄԱԿՆԵՐԻՑ

## ԲՈԼՈՐԻՍ ՀԱՐԱԶԱՏ ԳՈՐԾԸ

Մեր պարտիան իրագործում է լայն ծրագիր, որի նպատակն է առաջիկա 10—20 տարիների ընթացքում լիովին բարելավել բնակչության պահանջները բժշկական սպասարկման ասպարեզում, կանխել ու վճռականորեն կրճատել հիվանդությունները, բարելավել մոր ու մանկան առողջության պահպանման գործը: Այդ խնդիրների կենսագործման համար պահանջվում են մեծ ջանքեր ու եռանդ, անհրաժեշտ է մշտապես բարելավել ու կատարելագործել ժողովրդական առողջապահության գործի կազմակերպումն ու դրվածքը: Չնայած առկա հնարավորություններին, դեռևս լուրջ թերություններ կան բնակչության բժշկական սպասարկման, առողջապահական օբյեկտների շինարարության, կադրերի պատրաստման ու դաստիարակման ասպարեզներում:

Մեր ամսագրի 1963 թվականի № 7-ում տպագրված էր Արմաշի բժշկական տեղամասի վարիչ Ա. Հայրյանի **Բժշկի խոհերը** ուրվագիծը, ուր արծարծվել էին ռեսպուբլիկայի առողջապահության և, մասնավորապես, գյուղական բնակչության սպասարկման գործի կազմակերպման մի քանի էական հարցեր: Ինչպես պետք էր սպասել, գյուղական բժշկի վերոհիշյալ հոդվածը լայն արձագանք գտավ մեր ընթերցողների շրջանում: Ստորև համառոտակի տպագրում ենք ստացված նամակներից մի քանիսը:

**Բժ. Գ. ՊԵՏՐՈՍՅԱՆ**
**Ռեսպուբլիկական սանիտարական լուսավորության տան մեթոդիստ**

— «Բուժական գործում քիչ է լավ մասնագետ լինելը, հարկ է, որ բժիշկը լինի նաև հոգատար ու սրտակից մարդ, ունենա ջերմ սիրտ, որով նրան չեն կարող օժտել ո՛չ մի պաշտոնական հրահանգ ու հրաման: Կարևորը, նախ՝ բժշկի մասնագիտական պատրաստականությունն է և երկրորդ՝ նրա անձնական մարդկային գծերը»:

Դա է կազմում հոդվածի ողջն ու ծուծը: Մեր բժիշկներին ամենամարդկային այդ գծերով օժտելու գործում մեծ է մարքսիզմ-լենինիզմի ուսմունքով նրանց պինելու նշանակությունը, ուսմունք, որը մարդուն դարձնում է մարդու բարեկամը, ընկերն ու սրտակիցը: Ցավոք, բժիշկների գաղափարական դաստիարակության վրա դեռևս քիչ ուշադրություն է դարձվում: Այդ գործում խոշոր դեր կարող են խաղալ նաև երիտասարդ մասնագետների հանդիպումները մեր բազմաթիվ այն բժիշկների հետ, որոնք տասնյակ տարիներ աշխատում են շրջաններում և իրենց համեստությամբ ու ավնիվ աշխատանքով նվաճել են աշխատավորների սերն ու հարգանքը, պատշաճ ձևով նրանց մեծարելը:

Մեր կարծիքով միանգամայն ժամանակին է դրվում կադրերի ճիշտ օգտագործման հարցը: Մասնագետների համարյա 50 տոկոսը պրակտիկ բժշկությամբ չի զբաղվում՝ պաշտոնավարում է առողջապահության ցանցի տարբեր օղակներում: Մենք չենք թերագնահատում այդ հիմնարկների գործունեությունը, սակայն գտնում ենք, որ հիմնարկներում աշխատողները պետք է անպայման մասնակցեն նաև հիվանդների բուժմանը, իհարկե, ոչ էպիզոդիկ ձևով, ինչպես այժմ այն կատարվում է: Գիտական աշխատողը պետք է զբաղվի նաև պրակտիկայով, տարվա մեջ մի քանի ամիս աշխատի գյուղական և ավանային բժշկական տեղամասերում, օգնի տեղի ընկերներին՝ բարձրացնելու աշխատավորության բժշկական սպասարկման գործը: Գիտական ոչ մի կոչում



չպետք է տալ այն բժշկին, որը աշխատավորների հետ չի շփվում և անձամբ չի մասնակցում առողջապահության գործի կազմակերպմանը:

Զայրացուցիչ և պարսավանքի է արժանի այն երևույթը, որ մեր շարքերում կան բժիշկների անունը վարկաբեկող բազմաթիվ դիպլոմավորներ, որոնք չեն զբաղվում հանրօգուտ աշխատանքով: Մենք համամիտ ենք ընկ. Ա. Հայրյանի առաջարկներին: Եթե հասարակական-բարոյական ներգործությունը չի ազդում նման մարդկանց վրա, ապա պետք է նրանց զրկել բժշկի պատվավոր կոչումից:

Ինչ խոսք, որ բազմապիսի և ավելորդ գրագրությունները մի անբուժելի խոց են դարձել բժիշկների պրակտիկ գործունեության համար: Այդ մասին շատ է գրվել ու ասվել, բայց, ցավոք սրտի, այդ կարևոր հարցին ուշադրություն դարձնող չկա:

Ինչպես հայտնի է սովետական բժշկականությունը հիմնված է պրոֆիլակտիկայի, սանիտարական լուսավորության վրա: Դժբախտաբար փոքր չէ այն բժիշկների թիվը, որոնք անտարբեր են այդ գործի նկատմամբ: Մեզ թվում է, առողջապահության մինիստրությունը պետք է իրականացնի ավելի արդյունավետ միջոցառումներ:

Սակայն չեմ բաժանում հեղինակի այն կարծիքը, թե մանկական մահացությունների ճնշող մեծամասնությունը նկատվում է բազմազավակ մայրերի մոտ, և որ մահացությունը կիջնի, եթե միանվագ օգնությունը տրվի երեխայի մեկ տարին լրանալուց հետո: Մայրական զգացմունքը չի կարելի կապել դրամական օգնության հետ: Մեր կարծիքով այդ գումարը չպետք է անվանվի օգնություն, նպաստ, այլ այն պետք է դարձնել պարգևատրում, որը կտրվի երեխայի տարին լրանալուց հետո, այն էլ հատուկ հանձնաժողովի կողմից. այն կլինի առողջ երեխաներ դաստիարակող մոր մեծարանքը:

**Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆ**
**Արտաշատի շրջսովետի գործկոմի նախագահ**

— Արմաշի գյուղական բուժտեղամասի վարիչ Ա. Հայրյանն իր հոդվածում առաջ է քաշել մի շարք հարցեր, որոնց արագ լուծումը մեծապես կնպաստի աշխատավորության բուժսպասարկման գործի բարելավմանը:

Մեր շրջանում լուրջ ու հետևողական աշխատանք է տարվում բնակավայրերի սանիտարական դրության բարելավման, առողջապահական հիմնարկների և սանիտարական-կենցաղային օբյեկտների կառուցման ուղղությամբ: Շրջանի շատ գյուղերում կան բաղնիքներ, սպորտ հրապարակներ, ճաշարաններ և այլն: Բոլոր գյուղերը հիմնականում ապահովված են լավորակ խմելու ջրով, աշխատանքներ են տարվում այդ ցանցը ընդլայնելու ուղղությամբ: Օրեցօր կանաչապատ, ծաղկազարդ, մաքուր ու գեղեցիկ են դառնում մեր շատ գյուղեր: Շրջանի Նորաշեն, Քաղցրաշեն, Շահումյան, Մասիս, Ավշար, Շիրազլու, Այգևան և մի շարք այլ գյուղերում գործում են կոլտնտեսային ծննդատներ, Այգեստանում և Վ. Արտաշատում՝ հիվանդանոցներ: Կոլտնտեսությունների միջոցներով կառուցվում են առողջապահական հիմնարկներ (Միսյանում, Արևշատում և այլն):

Պաշտպանում ենք ընկ. Հայրյանի տեսակետը՝ նպատակահարմար է շրջկենտրոնից հեռու գտնվող բնակավայրերի հիվանդանոցներում մահճակալների թիվը հասցնել 25—35-ի, իսկ առավել մոտ բնակավայրերում՝ դրանք դարձնել մասնագիտացված բուժհիմնարկներ:

Շրջանի պարտիական ու սովետական կազմակերպությունները հոգ են տանում, որպեսզի բոլոր գյուղերում կառուցվեն առողջապահական հիմնարկներ ու սանիտարական կենցաղային օբյեկտներ: Դժբախտաբար Հայկ. ՍՍՌ առողջապահության մինիստրությունը շահագրգռվածություն հանդես չի բերում կոլտնտեսությունների միջոցներով կառուցված առողջապահական հիմնարկներն անհրաժեշտ սարքավորումներով ապահովելու խնդրում:

**Տ. ԲՈՒՆԻԱԹՅԱՆ**
**Հայկ. ՍՍՌ առողջապահության մինիստրության երեխաների և մայրերի բուժ. պրոֆիլակտիկ օգնության վարչության պետ**

— Մենք հիմնականում համաձայն ենք մանկական հիվանդությունների և մահացության կրճատման վերաբերյալ բժիշկ Ա. Հայրյանի առաջարկություններին ու հետևություններին: Սակայն նպատակահարմար չենք համարում վերանայել բազմազավակ մայրերին տրվող միանվագ նպաստի վճարման ներկայումս գործող կարգը:

ՀՐԱՉՈՒՀԻ ԳՐԻԳՈՐՅԱՆ
**Արարատի բժշկական տեղամասի վարիչ**

Այսօր, երբ մեր կոլտնտեսականներն ունեն բարեկարգ տներ, գյուղում կառուցվել են սքանչելի կուլտուրայի տներ, դպրոցներ, ցավալի է, որ բուժարանը կամ հիվանդանոցը տեղավորված է խղճուկ, խարխլված շենքում, գյուղում չկան բաղնիք, անհրաժեշտ չափով ջրի ծորակներ: Պետք է գյուղերում լայնորեն ծավալել առողջապահական-կենցաղային օբյեկտների կառուցման գործը, պլանավորել այն վերևից:

Գյուղական վայրերում քիչ են որոշ հիվանդությունների գծով բարձրորակ մասնագետները և հարկադրված մենք հիվանդին ուղարկում ենք Երևան՝ կոնսուլտացիայի: Սակայն հաճախ նրանք մայրաքաղաքում երկար են սպասում, դժվարությամբ են ընկնում մասնագետների մոտ և դժգոհ վերադառնում: Էլ չեմ խոսում այն մասին, որ կարոտ ենք մնում մեր պրոֆեսորների կոնսուլտացիաներին: Ռեսպուբլիկական հիվանդանոցում մեր հիվանդներին տեղավորելու համար երկու-երեք ամիս առաջ պիտի պայմանավորվենք նրանց հետ և նոր ուղարկենք (քիթ-կոկորդ, ներվային բաժին):

Պետք է մտածել գյուղական բժիշկների կենցաղային պայմանների բարելավման մասին, ապահովել նրանց բնակարանով, տրանսպորտով: Ճիշտ է նշում հեղինակը, որ ասպիրանտուրա ընդունելու համար առաջնությունը պետք է տալ գյուղական բժիշկներին, այն մարդկանց, ովքեր իրենց լավ են դրսևորել աշխատանքում և ունեն գիտությամբ զբաղվելու հակում: Պրակտիկայում երբեմն առաջանում են բազմաթիվ խոչընդոտներ: Օրինակ, ինստիտուտն ավարտելուց հետո ութ տարի է ինչ աշխատում եմ գյուղում և ուզում եմ ընդունվել ասպիրանտուրա գինեկոլոգիայի գծով, սակայն ինձ չեն ընդունում (նույնիսկ գործերս), նշելով, որ ես ո՛չ գինեկոլոգ եմ, ո՛չ էլ վերապատրաստվել եմ այդ գծով: Սակայն նրանք մոռանում են, որ ես տարեկան ընդունում եմ 250 ծնունդ՝ գինեկոլոգ չլինելու պատճառով: Վերապատրաստման էլ չեն ուղարկում, պատճառաբանելով, թե փոխարինող չունեմ:

Ամենակարևորը մանուկների մահացության կրճատման հարցն է: Գյուղական բժիշկը պետք է երեխայի սաղմնային շրջանից հետևի երեխայի աճին, ծնվելուց հետո շատ հաճախ հանդիպի նրան, խորհուրդներ տա մորը: Բայց բժիշկներս երբեմն սահմանափակվում ենք միայն ամիսը մեկ անգամ երեխային տեսնելով, այդ անթույլատրելի է: Սակայն բժիշկը հնարավորություն չունի 200 երեխայի տեսնել և միաժամանակ զբաղվել այնքան շատ գրագրությամբ, որով նա ծանրաբեռնված է. ուրեմն այստեղ բժշկին պետք է օգնի մայրը:

Համամիտ եմ հեղինակի հետ, բազմազավակ մայրերին տրվող միանվագ նպաստի վճարման կարգը փոխելու խնդրում:

Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆ
**Հայկ. ՍՍՌ սոցիալական ապահովության մինիստրության կենսաթոշակների և պետնպաստների բաժնի վարիչ**

— Սահմանված կարգի համաձայն բազմազավակ մայրերի միանվագ նպաստը վճարվում է երեխային խնամելու, դաստիարակելու և անհրաժեշտ պարագաներ ձեռք բերելու համար: Տեղերից ստացված առաջարկությունների հիման վրա ներկայումս ՍՍՌՄ Գերագույն սովետի օրենսդրական հանձնաժողովն ուսումնասիրում է բազմազավակ և միայնակ մայրերի պետական նպաստների նշանակման և վճարման կարգի վերաբերյալ գործող կանոնադրության մեջ մասնակի փոփոխություններ մտցնելու հարցը. մեր մինիստրության կողմից ներկայացված առաջարկությունների մեջ մտցված են նաև բժիշկ Հայրյանի նկատառումները:

Բացի այդ, նպաստների վճարման գործը հեշտացնելու նպատակով, մինիստրությունը նախատեսել է 1964 թ. հունվարի 1-ից նպաստները վճարել տանը, առանց մայրերին սոցիալական ապահովության բաժին հրավիրելու:

Փ. ՋԻԼՓԻՆՅԱՆ
**Երևանի Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրագործարանի տեխնիկ**

— Ամենակարևորը հոդվածում այն միտքն է, որ բժիշկները պետք է լինեն ուշադիր և հոգատար հիվանդների նկատմամբ, մի բան, որ, ցավոք սրտի, չի նկատվում որոշ բժիշկների մոտ և,



ինչպես նշված է հոդվածում, նման մասնագետները հաճախ ինչ որ գլխով ու ձեռքով ստեղծում են, խոսքով ու սրտով քանդում են: Սովետական բժշկի համար պետք է հատուկ լինեն մարդկային լավագույն գծերը: Ընկ. Հայրյանն իրավացի կերպով նշում է, որ ինչքան «հաճախ հանդիպեն առողջ մարդիկ բուժաշխատողների հետ, այնքան քիչ և հազվադեպ նրանք գործ կունենան բժիշկների հետ»: Բայց, սովորաբար, մենք բժիշկներին տեսնում ենք միայն այն ժամանակ, երբ հիվանդ ենք, ավելի ճիշտ, նրանք մեզ մոտ լինում են մեր հիվանդության ժամանակ: Իսկ որքա՜ն լավ կլինի, եթե մենք հաճախ հանդիպենք առողջ ժամանակ, նրանք մեզ բացատրեն ու սովորեցնեն ինչպես պաշտպանվել հիվանդություններից, կոփել մեր մարմինը:

Ա. ՄԱՐԳԱՐՅԱՆ
**Շամշադինի շրջանի գլխավոր բժիշկ**

— Ներկա էտապում խիստ անհրաժեշտ է, որ առողջապահության վերադաս օրգաններն ավելի մոտիկից զբաղվեն և որակյալ օգնություն ցույց տան լավ կազմակերպելու առողջապահության գործը հեռավոր շրջաններում: Օրինակ, եթե ետ է մնում մանկաբուժական օգնությունը, անհրաժեշտ է ապահովել այդ բնագավառը որակյալ կադրերով, կամ օգնել՝ լավ կազմակերպելու մեխանիզատորների և գյուղական առաջավորների դիսպանսեր սպասարկումը և այլն:

Ես ևս գտնում եմ, որ բժշկական ինստիտուտ ընդունվելիս նախապատվությունը պետք է տրվի այդ գործը սիրող մարդկանց. դեռևս կան շատ շրջանավարտներ, որոնք մի կերպ կամ երբեմն էլ լավ ցուցանիշներով ավարտելով բժշկական ինստիտուտը, դժկամությամբ կամ բոլորովին չեն մեկնում գյուղական վայրերը: Դրա պատճառը ոչ միայն այն է, որ երիտասարդ մասնագետներն այսօրվա գյուղը չեն ճանաչում, այլև այն, որ տեղական կազմակերպությունները քիչ են մտահոգվում նրանց կուլտուր-կենցաղային պայմանները բարելավելու մասին:

Բաժանում եմ հեղինակի մտքերը ուսանողների արտադրական պրակտիկայի կազմակերպման վերաբերյալ: Թույլ է պրոֆեսորա-դասախոսական անձնակազմի կապն իրենց նախկին սաների հետ: Կան այնպիսի դասախոսներ, որոնք տարիներ շարունակ չեն տեսնում ու հետաքրքրվում նախկին շրջանավարտների կյանքով ու գործունեությամբ:

Մանկական սպասարկման հարցը իրոք դժվար է՝ մի կողմից բավարար պայմաններ չեն ստեղծվում երեխաների համար, մյուս կողմից՝ մենք բուժաշխատողներս, դեռևս անբավարար ենք զբաղվում այդ հարցով: Դեռևս կան շատ մայրեր, որոնք քիչ են օգտվում մանկական կոնսուլտացիայի սպասարկումից և ճիշտ ու ժամանակին չեն կատարում մանկաբույժների խորհուրդները, երբեմն էլ մայրերը, հատկապես բազմազավակ մայրերը, խուսափում են երեխաներին հիվանդանոցում պառկեցնելուց: Այդ մայրերին պետք է ընդգրկել մայրական դպրոցներում և նրանց հետ աշխատանք տանել: Այո՛, օրենսդրական որոշ փոփոխություններ պետք է մտցնել բազմազավակ մայրերին տրվող նպաստների կարգի մեջ, քանի որ այդ որոշումն ընդունելուց հետո փոխվել են մեր մարդկանց նյութական պայմաններն ու կենցաղը: Բազմազավակ երեխաների մայրերին ոչնչով չի խանգարի, եթե նրանք այդ գումարը ստանան երեխայի մեկ տարին լրանալուց հետո, իսկ եթե կլինեն կարիքավոր երեխաներ, նրանց սնուցման գործը դնել կաթնախոհանոցի վրա:

Անհրաժեշտ է գյուղական վայրերում աշխատող մանկական քույրերի ու մանկաբույժների համար կազմակերպել կարճատև դասընթացներ, սեմինար պարապմունքներ գարնան և ամռան սկզբին: Գյուղական փոքր հիվանդանոցների լիկվիդացումը մեր ռեսպուբլիկայի պայմաններում իրեն չի արդարացնի՝ գյուղերի ցրվածության, ճանապարհների անսարքության և դեռևս բուժհիմնարկների՝ տրանսպորտով անբավարար ապահովվածության պատճառով: Ներկայումս պետք է զբաղվել գյուղերում կոլտնտեսային ծննդատներ կազմակերպելու, բուժ-մանկաբարձական կայանների աշխատանքները կանոնավորելու և տեղամասային հիվանդանոցները բժիշկներով ապահովելու հարցերով: Փոքր հիվանդանոցները պետք է խոշորացնել աստիճանաբար, նախօրոք շրջկենտրոններում բարձրորակ սպասարկում ստեղծելուց հետո:

Մ. ԵՆՈՔՅԱՆ
**Արտաշատի շրջանի Մեծ Վեդի գյուղի բնակիչ**

— Ընթերցողներիս համար հաճելի է, որ Ձեր ամսագիրը անդրադառնում է առողջապահության հարցերին, հասարակական քննության առարկա դարձնում ժողովրդի առողջապահության գործի կազմակերպման պրոբլեմները:

խիստ կրճատվել է մանկական մահացությունը: Եվս մեկ-երկու տարի, և մեր գյուղը կունենա իր կաթնախոհանոցը, ճաշարանը, ծննդատունը:

Ամեն ինչ մարդու բարօրության, առողջության և երկարակեցության համար — ահա այս է մեր բոլորի աշխատանքի նշանաբանը:

**Ա. ԻՈՆԻՍՅԱՆ**
**Իրավաբան, Երևան**

— Հոդվածում բարձրացված բոլոր հարցերն ակտուալ են և պահանջվում է դրանց անհապաղ լուծում: Ռեսպուբլիկայի առողջապահության մինիստրությունը պարտավոր է արմատական միջոցառումներ ձեռնարկել՝ առավել բարելավելու ժողովրդական առողջապահության գործի դրվածքը:

**ԴՈՑ. Ս. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
**Երևանի բժշկական ինստիտուտի ռեկտոր**

— Հոդվածագրի հարցադրումները ճիշտ են և արժանի համապատասխան օրգանների ուշադրությանը:

Իրոք, մի շարք ուսանողներ ինստիտուտն ավարտելուց հետո չեն ցանկանում մեկնել նշանակված վայրը: Դրա պատճառները մի քանիսն են: Անշուշտ մեծ նշանակություն ունեն ուսումնառման տարիներին ուսանողների դաստիարակության ճիշտ կազմակերպումը, դասախոսների անձնական օրինակը: Չնայած այդ բնագավառում ինստիտուտի կոլեկտիվը հասել է որոշ հաջողությունների, այնուամենայնիվ աշխատանքի վայրը մեկնելուց հրաժարվելու փաստերը վկայում են, որ այդ ասպարեզում դեռևս մեզ մոտ ամեն ինչ բարվոք չէ: Բացասական ազդեցություն է ունենում նաև այն, որ երբեմն խախտվում են բաշխման հանձնաժողովի որոշումները և քաղաքում աշխատանքի են նշանակվում դրա իրավունքը չունեցող երիտասարդ բժիշկներ: Մյուս կողմից՝ հաճախ շրջաններում աշխատանքի և ապրուստի նորմալ պայմաններ չեն ստեղծվում երիտասարդ մասնագետների համար: ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի որոշման համաձայն այսուհետև երիտասարդ մասնագետները դիպլոմ կստանան մեկ տարի աշխատելուց հետո միայն:

Ամեն տարի ինստիտուտ ընդունվողների մոտ 40%-ը գյուղական վայրերից եկածներն են: Մեր կարծիքով, մասնագետների սուր կարիք ունեցող շրջանների համար պետք է սահմանել ընդունելության լիմիտ: Ինստիտուտ ընդունվելու համար նախապատվությունը տրվում է արտադրական ստաժ ունեցող երիտասարդներին, ինչպես և բժշկական հիմնարկներում աշխատածներին:

Առողջապահության գործի կազմակերպմանը ծանոթացնելու նպատակով, IV կուրսից հետո ուսանողները երկու ամիս արտադրական պրակտիկա են անցկացնում գյուղում և պետք է ասել, որ այնտեղ, ուր աշխատանքները լավ են կազմակերպված, ուսանողները մոտիկից ծանոթանում են և անձամբ մասնակցում են այդ գործին: Միայն պետք է հետևել, որ շրջանային բոլոր բազաներն ունենան պատշաճ կահավորում, ապահովված լինեն որակյալ կադրերով և ճիշտ կազմակերպվի ուսանողների պրակտիկան:



# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



## ԳՈՀԱՑՆՈՂ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆ

*Վերջին տասնամյակում հայ ժողովրդի նախասովետական շրջանի (1917—1920 թվականներ) պատմության հարցերի շուրջ լույս են տեսել բազմաթիվ հայերեն և ռուսերեն աշխատություններ ու հոդվածներ: Չի կարելի ասել, թե այդ գործերը սպառիչ պատասխան են տվել վերոհիշյալ ժամանակաշրջանի բոլոր հարցերին: Մեծ հոկտեմբերի նախօրյակին աշխատավորների ռևոլյուցիոն պայքարի, 1917—1920 թթ. Հայաստանի ներքին վիճակի ու միջազգային դրության հետ առնչվող շատ պրոբլեմներ դեռևս կարոտ են համակողմանի ուսումնասիրության ու պարզաբանման:*

*Այդ առումով* Ծ. Աղայանի *նոր աշխատությունը* * *որոշակի առաջընթաց քայլ է: Հեղինակը գիտական բարեխղճությամբ ուսումնասիրել և շարադրել է թեմայի հիմնական հարցերը, միաժամանակ շեշտը դնելով մանավորապես այն խնդիրների վրա, որոնք առկա գրականության մեջ համեմատաբար քիչ են արծարծված: Նա փորձել է ո՛չ միայն ամփոփել այդ ուղղությամբ մեր պատմագրության արդեն ձեռք բերած նվաճումները, այլև լրացնել բաց թողնվածը, առավել պարզություն մտցնել տակավին հստակ մեկնաբանման կարոտ հարցերի լուսաբանման մեջ:*

*Նախ սկսենք ներածությունից և աղբյուրների ու գրականության տեսությունից: Համառոտ էքսկուրս կատարելով դեպի հայ ժողովրդի պատմական անցյալը, հնագույն ժամանակներից ընդհուպ մինչև Հայաստանում սովետական իշխանության հաղթանակը, հեղինակը ներածության մեջ ուրվագծում է հայ ժողովրդի անցած բազմադարյան ուղին՝ իր ելևէջներով հանդերձ: Այդօրինակ էքսկուրսը, որը բացակայում է ցարդ լույս տեսած գրքերում, լիովին պատճառաբանված է, մանավանդ, եթե նկատի առնենք, որ գիրքը նախատեսված է ռուս ընթերցողների համար: Նպատակային է նաև աշխատության վերջում անգլերեն տրված ամփոփումը, որը օտարերկրացի ընթերցողին ծանոթացնում է աշխատության բովանդակությանը, ուրեմն և հայ ժողովրդի պատմության հույժ կարևոր այդ ժամանակաշրջանին:*

*Գիտական առումով* Ծ. *Աղայանը շահեկան գործ է կատարել՝ աշխատության սկզբում զետեղելով* Աղբյուրներ և գրականություն *բաժինը (էջ 24—54), որը քննարկվող պրոբլեմին վերաբերող և առնչվող գրականության ընդարձակ տեսությունն է: Հեղինակը մեկ առ մեկ արժեքավորում է աղբյուրները, մերժելով հախուռն մոտեցման և գնահատման որևէ տենդենց: Նա գնահատել է նաև արտասահմանում լույս տեսած առանձին գրքեր և հակիրճ ու հիմնավորված ձևով մերկացրել բուրժուական հեղինակների զրպարտանքները, ցույց տվել նրանց աշխատությունների հակագիտական էությունը:*

*Աշխատության առաջին չորս գլուխներում հանգամանորեն շարադրված են Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նախօրյակին Հայաստանում ստեղծված վիճակը, Անդրկովկասյան կոմիսարիատի ու սեյմի տիրապետության շրջանում (1917 թ. նոյեմբեր—1918 թ. մայիս) մասսաների մղած ռևոլյուցիոն պայքարը, բոլշևիկյան կազմակերպությունների գործունեությունը և այլն: Միաժամանակ քննարկված են Հայաստանում դաշնակների տիրապետության և նրա դեմ աշխատավորների մղած ռևոլյուցիոն պայքարի հետ առնչվող հարցերը:*

*Փաստական նոր նյութի ընդգրկման տեսակետից ընթերցողը կհանդիպի տասնյակ էջերի, ուր պատմվում է 1918—1920 թթ. Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների ու բջիջների գործունեության, ռևոլյուցիոն մասսայական շարժման վերելքի մասին (մանավանդ 1920 թվականին), նկարագրվում այդ շարժման*

---

* *Ц. П. Агаян* — Великий Октябрь и борьба трудящихся Армении за победу Советской власти, Ереван, 1962 г.

ընթացքը, ելևէջները՝ ժամանակի իրադարձությունների համեմատ։

Չի կարելի ասել, թե նորություն են մայիսյան ապստամբությանը նվիրված էջերը (235—269)։ Սակայն տվյալ հարցը քննարկելիս Ծ. Աղայանը հանդես չի գալիս սոսկ որպես դեպքերի ու իրադարձությունների էմպիրիկ շարադրող. նա քննական մոտեցում է ցուցաբերում ապստամբության ծագման պայմանների և նրա հաղթանակի հնարավորությունների նկատմամբ։ Աշխատության մեջ հիմնականում ճիշտ են բացահայտված ապստամբության պարտության պատճառները։ Միաժամանակ գրքում ապստամբության պարտության հիմնական պատճառներից հեղինակը նշում է նաև Արմենկոմի թույլ տված սխալները՝ միասնական ղեկավարության բացակայությունը, ռևոլյուցիոն ուժերի դանդաղկոտությունն ու անբավարար վճռականությունը. այդպիսի գնահատականը համապատասխանում է պատմական իրողությանը, բայց հեռու է երբեմնի շրջանառության մեջ գտնված այն սխալ տեսակետից, ըստ որի ապստամբության ղեկավարներից մի քանիսին կպցվում էր «թշնամիներ» և «հակառևոլյուցիոներներ» պիտակը, նրանց «դավաճանությունը» հիմք դարձվում ապստամբության պարտությունը բացատրելու համար։

Մենագրության հինգերորդ գլուխը նվիրված է սովետական իշխանության հաստատման նախօրյակին Հայաստանի միջազգային դրությանը (1920 թվականի ապրիլ-հոկտեմբեր ամիսներ)։ Հեղինակը որոշակի պարզություն է մտցրել վերոհիշյալ պրոբլեմի լուսաբանման մեջ։ Նա առաջին հերթին ուշադրություն է նվիրել այն հարցին, թե ինչ տեղ էին հատկացնում արևմտյան իմպերիալիստները դաշնակցական Հայաստանին և մենշևիկյան Վրաստանին Սովետական Ռուսաստանի դեմ սկսած իրենց նոր արշավանքում և ի՞նչ էր անում Սովետական կառավարությունը իմպերիալիստական տերությունների դավադրությունները ձախողելու համար։ Ծ. Աղայանն իրավացիորեն նշում է, որ եթե իմպերիալիստները ձգտում էին Հայաստանը դարձնել Սովետական Ռուսաստանի դեմ ուղղված պայքարի հենակետերից մեկը, ապա դաշնակներն էլ, ընդառաջելով նրանց, նպատակ ունեին վերջիններիս օգնությամբ պահպանել իրենց տիրապետությունը, որը պատմական զարգացման ընթացքով արդեն դատապարտված էր կործանման։ Նշելով Անտանտի տերությունների և դաշնակցական կառավարության գործարքի հակասովետական և հակաժողովրդական բնույթն ու նպատակները, հեղինակը միաժամանակ լուսաբանում է Սովետական Ռուսաստանի վարած խաղաղասիրական ու փրկարար քաղաքականությունը։ Այդ կապակցությամբ գրքում մանրամասն քննարկված են դաշնակցական կառավարության և Սովետական Ռուսաստանի միջև 1920 թվականին տեղի ունեցած բանակցությունները, կոնկրետ փաստերի հիման վրա ցույց է տրված, որ սովետական կառավարությունը հանդես էր գալիս իբրև բոլոր ճնշված ազգերի, ինչպես և հայ ժողովրդի բարեկամն ու փրկարարը և բոլոր ուժերով ջանում էր մեկընդմիշտ վերջ դնել ազգամիջյան այն կռիվներին, որ մղվում էին Անդրկովկասում իմպերիալիստների թելադրանքով ու միջամտությամբ։ Հեղինակն ապացուցում է, որ եթե 1920 թվականի օգոստոսի 10-ի համաձայնագիրը Սովետական Ռուսաստանը դիտում էր որպես Հայաստանում կայուն խաղաղություն հաստատելու կարևորագույն միջոցառում, ապա դաշնակները փայփայում էին այլ նպատակներ, այն է՝ ժամանակ շահել և ակտիվ մասնակցել Սովետական Ռուսաստանի դեմ Արևմուտքի կողմից նյութվող պայքարին։

Աշխատության մեջ քննարկվում է քեմալական շարժման հարցը, այդ շարժման նկատմամբ Սովետական Ռուսաստանի ունեցած վերաբերմունքը՝ կապված Հայաստանում ստեղծված մղձավանջային դրության և դաշնակների անհեռատես ու ժողովրդակործան քաղաքականության հետ։ Հեղինակն իրավացի ընդգծում է, որ չնայած քեմալական շարժման՝ իբրև հակաիմպերիալիստական, ազգային-ազատագրական շարժման նկատմամբ Սովետական Ռուսաստանի ունեցած համակրանքին, հակառակ դաշնակցականների արևմտյան կողմնորոշման ու հարուցած խոչընդոտներին, Սովետական կառավարությունը դիմադիր էր այդ շարժման հակահայ ընթացքին, հայերին բնաջնջելու քեմալականների քաղաքականությանը և ամեն կերպ ձգտում էր փրկել հայ ժողովրդին վերահաս կործանումից։ Սա պատմական իրողություն է, և այն հաստատելու համար հեղինակը փաստարկում է 1920 թվականի ամռանն ու աշնանը այդ առթիվ սովետական ականավոր գործիչների պաշտոնական գրություններն ու հայտարարությունները։ Դեպի հայ ժողովուրդն ու նրա ազգային շահերը Սովետական Ռուսաստանի տածած հումանիզմի փայլուն ապացույցն է այն, որ 1920 թ. հոկտեմբերի 28-ին կնքված պայմանագրով Սովետական կառավարությունն արդարացի էր համարում Արևմտյան Հայաստանի մարզերի միացումը Հայաստանին և պատրաստակամություն էր հայտնում օգտագործելու իր ազդեցությունը այդ մարզերի կամ դրանց մի մասի փաստական միացման համար (էջ 292)։ Դրա հետ մեկտեղ, հեղինակը մատնանշում է թե ինչպես պայմանագիր կնքելով՝ դաշնակցական կառավարությունը միաժամանակ վարում էր երկդիմի քաղաքականություն և դաշնակցային տերությունների հետ բանակցում ընդդեմ Սովետական Ռուսաստանի։

Գրախոսվող աշխատության բազմաթիվ էջեր շոշափում են դաշնակցական Հայաստանի և Թուրքիայի միջև արևմտյան իմպերիալիստների հրահրանքով 1920 թվականին սկսված պատերազմական գործողությունները, դրանց կործանարար հետևանքները հայ ժողովրդի համար, դեպի վերջինս Սովետական Ռուսաստանի ունեցած հաստատակամ ու մարդասիրական դիրքը։ Միաժամանակ գրքում մերկացված է թուրքական բանակի հրամանատար Քյազիմ Կարաբեքիրի այն խարդախ ու կեղծ հայտարարությունը, որով նա փորձում էր թուրքական ագրեսիան պատկերել իբրև հայ ժողովրդի «ազատագրական» միսիա։ Փաստերով ցույց են տրված «ազատագրական» այդ միսիայի ահավոր հետևանքները՝ մարդկային զոհերը, տնտեսության քայքայումը, քաղաքների ու գյուղերի ավերումը։

Գրքում պարզաբանված են մի շարք հարցեր, որոնք անմիջականորեն առնչվում են 1920 թ. աշնանը Հայաստանում սովետական կարգերի հաստատման իրադարձությունների հետ։ Այստեղ արժեքավորն այն է, որ հեղինակը նոր նյութերի օգտագործմամբ պարզություն է մտցրել դրանց լուսաբանման մեջ, հանգամանորեն կանգ է առել ներքին և արտաքին այն պայմանների վրա, որոնք անխուսափելիորեն հասցրին Հայաստանում Սովետական իշխանության հաղթանակին։ Նշելով մայիսյան ապստամբությունից հետո Հայաստանում ստեղծված վիճակը և մերկացնելով դաշնակների տեռորիստական քաղաքականությունը, հեղինակը լուսաբանում է Հայաստանի կոմպարտիայի արգասավոր գործունեությունը՝ Հայաստանի աշխատավորների ռևոլյուցիոն պայքարը կազմակերպելու և ղեկավարելու, նրանց դասակարգային վճռական գոտեմարտերի նախապատրաստելու նպատակով։

Բազմակողմանի լուսաբանելով 1920 թ. նոյեմբերին, Կարմիր բանակի եղբայրական օգնությամբ, Հայաստանի ապստամբ բանվորների ու գյուղացիների հաղթանակը և դաշնակների տիրապետության անկումը, հեղինակն արխիվային նոր նյութերով մերկացնում է դաշնակցական կառավարության ազգադավ գործարքը քեմալականների հետ՝ ընդդեմ արդեն հաղթանակած ապստամբ ժողովրդի և նրա շահերի։ Հեղինակը հոդված առ հոդված քննարկում և մերկացնում է Ալեքսանդրապոլի պայմանագրի հակաժողովրդական բնույթը, պայմանագիր, որը փաստորեն օրինականացնում էր հայ ժողովրդի ազգային անկախության վերացումը։

Աշխատության վերջին գլուխը, որ կոչվում է «Հաղթանակը քաղաքացիական պատերազմում և Սովետական իշխանության ամրապնդումը Հայաստանում», ընթերցողին ծանոթացնում է դաշնակցական ավանտյուրայի ծագման արտաքին և ներքին պատճառներին, այդ ավանտյուրան ջախջախելու և քաղաքացիական կռիվներում երիտասարդ սովետական իշխանության տարած հաղթանակների պատմությանը։

Համառոտակի սրանք են այն հիմնական հարցերը, որոնք լուսաբանվել են Ծ. Աղայանի աշխատության մեջ։ Սակայն չի կարելի, իհարկե, ասել, թե վերջինս զերծ է թերություններից։

Սկսենք աղբյուրների տեսությունից։ Քննարկելով տվյալ թեմային առնչվող գրքերն ու նույնիսկ առանձին հոդվածները, հեղինակը հիմնականում զբաղվում է դրանց արժեքավորմամբ, երբեմն միայն նշելով առանձին աշխատությունների մասնակի թերություններն ու պակասությունները։ Սակայն միայն արժեքավորմամբ, ավելի ճիշտ եղած գրքերին դրական գնահատական տալով, չի կարելի սահմանափակվել։ Մեկ-երկու աշխատությունների վերաբերյալ հեղինակի արած անմեղ դիտողությունները բնավ չեն վերացնում այս բացը։

Բացի դրանից, առանձին հեղինակների մասին Աղայանի արած որոշ դիտողություններ միշտ չէ, որ համոզիչ են։ Օրինակ, նա սխալ է համարում Շ. Ամիրխանյանի պնդումն այն մասին, որ «1920 թ. հունվարյան պարտիական կոնֆերանսը և Արմենկոմը միայն ֆորմալ կերպով էին դնում Հայաստանում սովետական իշխանության հաղթանակի հարցը, որ Արմենկոմն անհրաժեշտ միջոցառումներ չձեռնարկեց զինված ապստամբության նախապատրաստման համար, սահմանափակվելով միայն ագիտացիոն աշխատանքով» (էջ 33)։ Մեր կարծիքով այս հարցում Շ. Ամիրխանյանն իրավացի է։ Հետագա շարադրանքի մեջ հեղինակը, անդրադառնալով մայիսյան ապստամբության պարտության պատճառներին, ինքն էլ փաստորեն կանգնում է այդ նույն տեսակետի վրա։ Այսպես, խոսելով մայիսյան ապստամբության առթիվ ղեկուցողների համար Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի 1930 թ. հրապարակած թեզիսների մասին, նա համաձայնում է թեզիսների այն դրույթներին, որ 1) ապստամբությունը ծագեց տարերայնորեն, անկազմակերպ ձևով, 2) որ քաղաքների մեծ մասում ռևոլյուցիոն շարժումը չուներ փորձված ղեկավարություն և, վերջապես՝ 3) որ մինչև ապստամբության սկսվելը բանակում և մի շարք գավառների գյուղերում ագիտացիոն-կազմա-

կերպական աշխատանքը թույլ էր կամ ամենևին չէր տարվում (էջ 35)։

Այդ ամենը խոսում են այն մասին, որ Արմենկոմը գործնական միջոցներ չէր ձեռնարկել ապստամբությունը նախապատրաստելու համար։ Եթե այդ միջոցները ձեռնարկվել էին, և Արմենկոմը ճիշտ հաշվի էր առել դասակարգային ուժերի փոխհարաբերությունը և պայքարի սրության աստիճանը, ապա ինչո՞ւ Արմենկոմն ինքը կանգնեց մասսաների կողմից տարերայնորեն սկսված ապստամբության փաստի առաջ, ինչո՞ւ ապստամբությունն սկսվեց ոչ թե միաժամանակ, այլ տարբեր տեղերում, տարբեր ժամանակ, մի բան, որն, անշուշտ, նրա պարտության կարևոր պատճառներից մեկն էր։ Այդ մի փաստ է, որ հեղինակն ինքն էլ չի ժխտում, գրելով, թե Արմենկոմը չկարողացավ ապահովել միասնական և կայուն ղեկավարություն, որ մի շարք վայրերում ապստամբությունները բռնկվում էին անսպասելի կերպով, իսկ ղեկավարները չէին կարողանում արագ և ճիշտ կողմնորոշվել ստեղծված իրադրության մեջ (տե՛ս էջ 266)։ Եթե հունվարյան կոնֆերանսից հետո ձեռնարկվել էին ապստամբության նախապատրաստման միջոցառումներ, ապա դրանք իրականացնող ղեկավարները ինչո՞ւ չպիտի կարողանային կողմնորոշվել ստեղծված իրադրության մեջ։

Հունվարյան կոնֆերանսից հետո պարտիական աշխատանքի աշխուժացումը չպետք է նույնացնել ապստամբություն նախապատրաստելու կոնկրետ միջոցառումների հետ։ Մայիսյան ապստամբության օրինակը ցույց է տալիս, որ այդպիսի միջոցառումներ, համենայն դեպս, մինչև ապրիլի վերջերը գրեթե չէին նախատեսվել։ Գրախոսվող աշխատության մեջ ևս մենք չենք հանդիպում դրանց։

Խոսելով ցարիզմի տապալումից հետո հայկական քաղաքական պարտիաների գործելակերպի մասին, Ս. Աղայանը գրում է, թե «հայկական բուրժուական մյուս պարտիաները (օրինակ՝ հայկական կադետները) մի կողմ քաշվեցին և առաջին պլանի վրա, իբրև հայկական բուրժուա-նացիոնալիստական շարժման գլխավոր ղեկավար, հանդես եկավ դաշնակների պարտիան» (էջ՝ 75)։ Հանրահայտ է, որ հայկական կադետները փետրվարյան ռևոլյուցիայից հետո մի կողմ չքաշվեցին։ Եվ երկրորդ, իրենց բախտախնդիր գործունեությամբ և ազգայնական դեմագոգիայով հայկական բուրժուա-նացիոնալիստական շարժման մեջ փետրվարյան ռևոլյուցիայից թե՛ առաջ և թե նրանից հետո միշտ էլ առաջին պլանի վրա են եղել դաշնակները, և ո՛չ թե վերջիններս այդ դրությանը հասան փետրվարյան ռևոլյուցիայից հետո։

Հեղինակը ճիշտ է վարվել, ըստ արժանվույն գնահատելով հերոսական այն դիմադրությունը, որ հայ աշխատավորները ցույց տվին թուրքական զավթիչներին 1918 թվականին՝ Սարդարապատի տակ և Փամբակում։ Սակայն նա դրանց նվիրել է ընդամենը յոթ տող (էջ՝ 171), այնինչ նշված հարցը դեռևս կարոտ է լայն մեկնաբանման, քանի որ առկա գրականության մեջ այդ բացը չի վերացված։

Այնուհետև, աշխատության II գլուխը ըստ էության նվիրված է Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո Անդրկովկասում ստեղծված քաղաքական իրավիճակին։ Սակայն չգիտեք ինչու այդ բաժինը վերնագրված է՝ Հոկտեմբերյան ռեվոլյուցիան և Հայաստանում Սովետական իշխանության համար մղված պայքարը Անդրկովկասի բուրժուա-նացիոնալիստական կոալիցիայի ժամանակաշրջանում (1917 թ. նոյեմբեր—1918 թ. մայիս)։ Վերնագիրն ակնհայտ չի արտահայտում գլխի բովանդակությունը։ Այնտեղ գրեթե չի քննարկված Հայաստանում սովետական իշխանության համար մղված պայքարը. այդ բաժինը հիմնականում վերլուծությունն է քաղաքական ու սոցիալ-տնտեսական այն կացության, որ ստեղծվել էր երկրամասում Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո։ Հենց վերջին առիթով էլ, այդ գլխի վերաբերյալ մենք կցանկանայինք անել մի կարևոր դիտողություն։ Հայտնի է, որ Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո Անդրկովկասում զինված ապստամբությամբ իշխանությունը վերցնելու հնարավորության և ռևոլյուցիոն սիտուացիայի հարցը վերջին տարիներին դարձել է գիտական աշխույժ բանավեճի առարկա։ Այնինչ գրքում ուղղակի շրջանցված է այդ հարցը. թեև 1917 թ. աշնան և 1918 թ. սկզբնական շրջանի դեպքերի նկարագրությանը հեղինակը մի քանի տասնյակ էջեր է հատկացրել (էջ 105—183)։ Մինչդեռ նա պարտավոր էր անպայման անդրադառնալ այդ բանավեճին։ Թեև 123-րդ էջում հեղինակը հարց է առաջ քաշում, թե սոցիալիստական ռևոլյուցիան Անդրկովկասում այդ ժամանակ «հանդիպեց վիթխարի դժվարությունների», բայց նա չի փորձում ասել, թե որո՞նք էին այդ դժվարությունները։ Դրանց փոխարեն տրվում է իրադարձությունների սոսկ նկարագրություն։ Մինչդեռ այդ դժվարությունների վերլուծությունը միայն կարող է պատասխանել առաջադրված հարցին։

Աշխատության մեջ կան կրկնություններ։

Գրքի վերջում զետեղված է Անձնանունների ցանկ։ Այդ, անշուշտ, լավ է։ Սակայն անուններ մի զգալի մասը բերելիս հեղինակն ազգանվան կողքին չի նշում տվյալ անձի անվան և հայրանվան սկզբնատառերը։

Վ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

---

# ԽՐԱԽՈՒՍԵԼԻ ՔԱՅԼ

Կոլտնտեսային արտադրանքի ինքնարժեքի հաշվարկումն ունի ժողովրդա-տնտեսական կարևորագույն նշանակություն և տեսական ու գործնական առումով մեծ հետաքրքրություն է ներկայացնում։ Գրախոսվող աշխատության մեջ* Արտաշատի կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչության հինգ կոլտնտեսությունների գյուղատնտեսական հիմնական մթերքների ինքնարժեքի կոնկրետ վերլուծմամբ բացահայտված են արտադրության չօգտագործված հնարավորությունները, պարզաբանված են արտադրանքի ինքնարժեքի իջեցման ուղիները։

Գրքույկի սկզբում հեղինակը համառոտակի նշում է գյուղատնտեսական արտադրանքի ինքնարժեքի ուսումնասիրման նշանակությունը՝ յուրաքանչյուր տնտեսություն խելացի, գիտական հիմունքներով վարելու, արտադրությունը ճիշտ մասնագիտացնելու և տեղաբաշխելու, ինչպես և գնագոյացման հարցերը ճիշտ լուծելու համար։ Այդ ամենը, ինչպես իրավացիորեն ընդգծում է ընկ. Զուրաբյանը, ինքնարժեքը դարձնում է կոլտնտեսային արտադրության ծավալի ու կառուցվածքի հեռանկարային պլանավորման կարևորագույն ցուցանիշներից մեկը (տես էջ 10)։

Հեղինակը գրում է, որ կոլտնտեսային արտադրանքի ինքնարժեքի հաշվարկումն պետք է կատարել երկու մեթոդով։ Առաջինը՝ «համապետական կարիքների համար (գների սահմանման, գյուղատնտեսական արտադրության տեղաբաշխման ու մասնագիտացման, համեմատության և այլն) կոլտնտեսականի աշխատանքը պետք է գնահատել ըստ սովխոզների բանվորների աշխատավարձի տարիֆային դրույքների և երկրորդ՝ ներկոլտնտեսային կարիքների համար (որևէ կոլտնտեսության հարցերի ուսումնասիրության, տնտհաշվարկի արմատավորման և այլն) աշխատանքի գնահատումը պետք է կատարել փաստացի վարձատրությամբ» (էջ 17)։

Որքան էլ վիճելի և երկակի լինի հեղինակի վերոհիշյալ տեսակետը, այնուամենայնիվ ներկա պայմաններում այն որոշ չափով օգնում է խուսափելու միակողմանիության սխալներից։ Ինչպես հայտնի է, 1962 թվականից սկսած կոլտնտեսային տարեկան հաշվետվություններում գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը հաշվարկվում է երկու եղանակով։

Սակայն այս կարևորագույն հարցում հեղինակի մոտ նկատվում է անհետևողականություն ու հակասություն։ Օրինակ, մի դեպքում նա միանգամայն իրավացիորեն առարկում է այն տնտեսագետներին, որոնք «սովխոզներում գոյություն ունեցող աշխատանքի վարձատրությունը... ձգտում են ներկայացնել որպես աշխատանքի հանրորեն անհրաժեշտ ծախսումներ գյուղատնտեսական մթերքների արտադրության մեջ» (էջ 13)։ Մինչդեռ մի քանի էջ հետո հեղինակը պարզորոշ կերպով ելնում է այն տեսակետից, որ բանվորական ուժի նորմալ վերարտադրության համար պահանջվող մակարդակը, դա հենց սովխոզներում գոյություն ունեցող վարձատրության մակարդակն է (էջ 17)։

Եթե նկատի առնենք, որ բանվորական ուժի նորմալ վերարտադրության համար պահանջվող ծախքերը և աշխատանքի հանրորեն անհրաժեշտ ծախքերը միևնույն հասկացությունն (կատեգորիան) են, ապա հեղինակն ի վերջո հանգում է այդ նույն տեսակետին, որի դեմ քիչ առաջ առարկում էր, այն է՝ գյուղատնտեսության մեջ այդ թվում և կոլտնտեսությունում աշխատանքի հանրորեն անհրաժեշտ ծախսումներն այժմ արտահայտվում են սովխոզներում գործող վարձատրության դրույքներով։ Դա, իհարկե, պատահական վրիպում չէ։ Աչքի է ընկնում, որ գրքույկի սկզբում պաշտպանելով ինքնարժեքը երկու եղանակով էլ հաշվարկելու տեսակետը, հեղինակը հետագայում փաստորեն իր ամբողջ ուսումնասիրությունը և եզրակացությունները հիմնում է նորմատիվային ինքնարժեքի տեսակետի վրա, որից բխում են մի շարք սխալներ։

Հաշվարկելով Արտաշատի շրջանի կոլտնտեսությունների գյուղատնտեսական մի շարք մթերքների ինքնարժեքը հիշյալ երկու եղանակով, հեղինակը նշում է, որ դրանց արդյունքների մեջ կան էական տարբերություններ։ Այդ բացատրվում է նրանով, գրում է նա, որ հետազոտված կոլտնտեսություններում աշխօրի փաստացի վճարումը 1,5—2 անգամ բարձր է սովխոզային բանվորների աշխատավարձի օրական դրույքից։ Մինչդեռ, ասում է հեղինակը, վկայակոչելով ՍՄԿԿ Կենտկոմի 1959 թ. դեկտեմբերյան պլենումը «կոլտնտեսականի աշխատանքի վարձատրությունը չպետք է անցնի համապատասխան արտադրական ուղղություն ունեցող սովխոզների բանվորների աշխատավարձից։ Կնշանակի, եթե կենդանի աշխատանքի վարձատրությունն իրականում կատարվեր այնպես, ինչպես սովխոզներում է, ապա այդ մթերքների ինքնարժեքը... կիջներ ևս 1,5—2 անգամ» (էջ 39)։

Այստեղ հեղինակն առնվազն երկու սխալ է կատարում։ Առաջին. պլենումի որոշման մեջ ասված է. «Կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը չպետք է առաջ անցնի տվյալ

* Ան. Զուրաբյան — Կոլտնտեսային արտադրանքի ինքնարժեքը և նրա իջեցման ուղիները։ Հայպետհրատ, Երևան, 1963 թ.։

փորեն կծկվում է, բայց միմյանց միջև երկու տիպի թելերի սահում տեղի չի ունենում: Լայնական շերտավորության ապարատը ասես թե մնում է անջատված:

Այդ ժամանակ մկանի մութ ու լուսավոր տեղամասերի երկարությունը համեմատական կարգով փոքրանում է, մինչդեռ կծկման կլասիկ դեպքում, որի վրա հիմնվում է ժամանակակից թեորիան, մութ տեղամասերը կարծես կլանում են լուսավորներին՝ ենթադրվող սահումի հաշվին:

Դրանով ցույց է տրված, որ պրոտոֆիբրիլաները բոլորովին էլ կոշտ չեն, որ նրանք ընդունակ են իրոք կարճանալու: Այստեղից կասկածելի է դառնում սահումի սխեմայի ճշտությունը և, ինչպես արդեն ասվել է վերևում, անհրաժեշտ է փնտրել երկու պրոցեսի ինչ-որ զուգակցում: Հնարավոր է, որ մի տիպի թելերի մյուս տիպի թելերի մեջ ավելի խոր սեպվելը ավտոմատիկ սահում չէ, այլ արդեն որոշ վերջնական պրոցես, որը կապված է նախնական ակտիվ կծկման հետ կամ մի տիպի թելերով մյուս տիպի թելերը ձգելու հետ:

Վերջերս հայտնագործված անսպասելի բարդությունը հենց մեզ մոտեցնում է կատարվող երևույթների ըմբռնմանը:

## ԻՆՔՆԱԿԱՆՈՆԱՎՈՐՈՒՄԸ ԿԵՆԴԱՆԻ ԲՋՋՈՒՄ

Եթե օգտագործենք ժամանակակից տեխնիկական տերմինոլոգիան, ապա կարելի է ասել, որ կենդանի բջիջը դա մի սիստեմ է, որն ավտոմատիկորեն ինքնահամալրվում է. աշխատանքի ամենաձեռնտու ռեժիմի համար և ապահովվում կյանքի պահպանումը արտաքին միջավայրի փոփոխվող պայմաններում: Կարծում ենք, որ այժմ ծագում են առաջին նշույլները հասկանալու համար, թե կենդանի բջջում ինչպես, ինչպիսի մեխանիզմներով է կատարվում այդպիսի ինքնականոնավորումը: Կոպիտ սխեմատիկ ձևով կարելի է պատկերացնել այդպիսի երեք մեխանիզմ: Հնարավոր է, որ իրոք դեռ ամեն ինչ ավելի բարդ է:

Առաջին մեխանիզմը՝ դա միանգամայն որոշակի քիմիական կառուցվածքի մակրոմոլեկուլների առկայությունն է կենդանի բջջում, առաջին հերթին՝ նուկլեինային թթուների, որոնք հանդիսանում են կարծես հենց այդպիսի մոլեկուլների վերարտադրության կատալիզատորներ և, միաժամանակ, տվյալ տիպի բջջին հատուկ որոշակի սպիտակուցների սինթեզի կատալիզատորներ:

Վերջին ամիսներին այդ բնագավառում ստացվել են առաջնակարգ նշանակություն ունեցող արդյունքներ՝ վերածնվել է այն «կոդը», որի օգնությամբ նուկլեինային թթուն «տալիս է» սինթեզի ծրագիրը:

Երկրորդ մեխանիզմը կարող է լինել այս կամ այն ֆերմենտ-կատալիզատորի միջոցով կատարվող ռեակցիաների պրոդուկտների ազդեցությունը հենց այդ կատալիզատորի վրա: Այդ դեպքում, եթե որևէ ռեակցիայի արագությունը գերազանցում է նորմալ կենսագործունեությունն ապահովող սահմանից, այսինքն՝ եթե տեղի է ունենում մի տեսակ քիմիական «արտանետում» ապա գոյացած պրոդուկտների ավելորդ քանակությունը արգելակում է կատալիզատորի գործողությունը:

Վերջապես, երրորդ մեխանիզմը, որը, մեր տեսակետից, կարող է հանդիսանալ կանոնավորման ամենաճկուն գործիքը և որին մինչև այժմ պատշաճը չի հատուցվում, դա կառուցվածքային էլեմենտների ներբջջային շարժունությունն է: Բացի առանձին, մասնակի պրոցեսների կանոնավորումից, որոնց մասին խոսվել է վերևում, այսինքն՝ նուկլեինային թթվով ծրագրվող անհատական սպիտակուցների սինթեզից, կանայան քիմիական ռեակցիաների արագության կառավարումից, պետք է գոյություն ունենան բոլոր ներբջջային պրոցեսների ընդհանուր կառավարման մեխանիզմներ ամբողջովին առած: Այդ կարող է տեղի ունենալ երկու ճանապարհով: Մեկը, որի մասին արդեն ասվել է վերևում, դա այս կամ այն նյութի հարկադիր ուղղված շարժման փոփոխությունն է փոքրիկ կանալների սիստեմի և մոլեկուլյար հոսքերի սահմանափակման օգնությամբ: Ենթամիկրոսկոպիկ փոքրիկ կանալները, մեմբրաններն ու կծկվող գոյացումները անհրաժեշտ ուղղությամբ և անհրաժեշտ կարողությամբ բաժանում կամ վերամղում են փոխանակությանը մասնակցող պրոդուկտները:

Մյուս հնարավոր ուղին՝ դա կառուցվածքային կազմակերպության փոփոխությունն է, որը տանում է դեպի կատալիտիկ պրոցեսների դադարեցում կամ ուժեղացում: Ամեն մի ավտոմատիկ կանոնավորման համար անհրաժեշտ է հետադարձ կապերի սիստեմ: Այդ գոյություն ունի նաև բջիջների կառուցվածքային կազմակերպության ու փոխանակային պրոցեսների փոխազդման մեջ: Մենք ասացինք, որ միայն որոշակի բարդ «վերմոլեկուլյար» կազմակերպության առկայությունն է ապահովում փոխանակության քիմիական պրոցեսների օրինաչափ ընթացքը: Բայց այդ նույն քիմիական պրոցեսները պահպանում են այդ կազմակերպությունը: Բավական է մի քանի րոպե որևէ եղանակով ընդհատել, կանգնեցնել փոխանակության պրոցեսները, թթվածնից զրկելով, օրինակ, կենդանի բջջին, որ ներքին մոլեկուլյար կազմակերպությունն սկսի բառացիորեն քայքայվել:

Այսպիսով, գոյություն ունի կառուցվածքային կազմակերպության և կոորդինացված ձևով ընթացող փոխանակային պրոցեսների սերտ փոխապրում՝ «հետադարձ կապերի» տիպիկ սիստեմ, որն



անհրաժեշտ է ինքնականոնավորման համար: Այդ մասին է խոսում թեկուզ ներբջջային կառուցվածքների շարժունության և կենսագործունեության սերտ կապը: Այն երևան է գալիս ամենուրեք, որևէ օբյեկտի դիտման ժամանակ: Դեռ ավելին, ներբջջային շարժունության կասեցումը, մի տեսակ սառչելը հանդիսանում է բջջի կործանման բնորոշ հատկանիշը: Իմանալով, որ այդ քայքայումը հանգեցնում է փոխանակային պրոցեսների կազմալուծմանը կարելի է ենթադրել, որ կառուցվածքի ձևափոխությունը դա միջամտություն է փոխանակության առանձին օղակների կարողության և ուղղվածության մեջ: Մյուս կողմից, փոխանակային պրոցեսների խախտումը. անպայման, կանդրադառնա կառուցվածքային կազմակերպության վրա, քանի որ նրա պահպանման համար անհրաժեշտ է այդ պրոցեսների նորմալ ընթացքը:

Մեզ թվում է, որ այդ տեսակետը կարող է հաստատել նաև վերևում ասվածը մկանային կծկման ցիկլում կառուցվածքների օրինաչափ փոխակերպման մասին: Այդ փոխակերպման մեջ մենք տեսնում ենք ո՛չ միայն մեխանիկական շարժման ապարատը, այլև մեկ վայրկյանում շատ անգամ ընթացող մեխանիկական կծկումների կատարյալ սինխրոնացման ապարատը, յուրաքանչյուր կծկման էներգետիկ հիմքով՝ քիմիական փոխակերպումներով: Դեռ ավելին, եթե մկանին ստիպենք մի այլ եղանակով կծկվել, երբ տեղի չի ունենում կառուցվածքների բնորոշ վերափոխում լայնական շերտավորության փոփոխությամբ, ապա, ինչպես մեզ հաջողվեց ցույց տալ, այդպիսի կծկման փոխանակային հիմքն էլ ընթանում է այլ սկզբունքով:

Ամբողջ ասվածը վկայում է ներբջջային պրոցեսների ուսումնասիրության բնագավառում նոր, անակնկալ գյուտերի մասին, թերևս այդ գյուտերը դեռ ավելի շատ նոր հարցեր են առաջադրել: Սակայն հարցերը դարձան ավելի կոնկրետ, և որոշվեց նրանց լուծման ուղիները: Դրա համար անհրաժեշտ է էքսպերիմենտալ տեխնիկայի հետագա վերափինում և, չենք վախենա այդ խոսքից՝ բիոլոգիական էքսպերիմենտի «ինդուստրացում», որքան էլ տարօրինակ է, բոլոր տեսակետներից ավելի բարդ ու բազմազան, քան այդ անհրաժեշտ եղավ ֆիզիկայի որոշ բաժինների համար:

## «ՄԵՔԵՆԱԿԱՆ» ՄԵԹՈԴՆԵՐԸ ԲԻՈԼՈԳԻԱՅՈՒՄ

Գիտության մեջ նոր մեթոդական եղանակների բացառիկ դերը ոչ մի կասկածի ենթակա չէ: Ինչպես արդեն տեսանք, իզոտոպների կիրառումը բիոլոգիայում, իսկ դրանից անմիջապես հետո նաև էլեկտրոնային միկրոսկոպիայում, մեր առջև բացեց ամբողջ նոր աշխարհներ: Հաշվողական էլեկտրոնային մեքենաների օգնությամբ արդեն արվել են առաջին քայլերը քիմիական պրոցեսների բարդ միահյուսության վերլուծման, նրանց փոխազդման ըմբռնության գործում: Այդ նույն եղանակով մշակվում են նաև բիոլոգիական ծագման նյութերի բարդ խառնուրդների օպտիկական վերլուծման տվյալները: Բայց դեռ ավելի շատ բան պետք է անել վերոհիշյալ հարցերին պատասխանելու համար:

Բիոլոգը միշտ գործ ունի մեծ թվով առանձին էլեմենտների, բջիջների և բջջային կառուցվածքների հետ: Որոշ հատկություններ լուսային կամ էլեկտրոնային միկրոսկոպում աչքով տեսնելով, լուսանկարելով, չափելով, որոշելով սովորական ձեռքի կամ տվյալ դեպքում «աչքի» եղանակով, հաջողվում է բնութագրել միայն մեկ հետաքրքրող նյութի աննշան մասը: Այդ բնութագիրը շատ դեպքերում մոտավոր է միայն, խոսում է տպավորության, սուբյեկտիվ գնահատման մասին: Դրանում է բիոլոգիայի երկու, մի կողմից՝ էքսպերիմենտալ, մյուս կողմից, այսպես կոչված՝ նկարագրական ուղղությունների հակադրման էությունը: Նկարագրական շարադրանքը՝ դա կոնսերվատիզմի դրսևորում չէ, ինչպես երբեմն կարծում են, այլ եղած նյութի անսահմանության և տեխնիկայի բացակայության հետևանք, որը կարող էր թարգմանել այն քանակական անալիզի լեզվով:

Անշուշտ, առաջին հերթին անհրաժեշտ է բիոլոգիական օբյեկտների կազմության դիտումից անցնել մեքենական անալիզին: Այդ տեսակի պարզագույն հարմարանքը, որ թույլ է տալիս կարճ ժամանակամիջոցում հաշվել հայարավոր բջիջներ ու սահմանել դրանց բաշխումը ըստ չափերի, արդեն նկարագրված է գրականության մեջ: Բայց այդ առաջին քայլն է միայն: Նոր հաշվիչ էլեկտրոնային անալիզատորների կիրառումը բացում է անսահման հնարավորություններ ավտոմատիկ տեսակավորման, բջիջների կանայան տիպերի ճանաչման ու կյանքի պրոցեսում դրանց կազմության փոփոխման հաշվառման համար:

Այդ վերաբերում է ո՛չ միայն բջիջների ձևի կամ նրանց ներքին կառուցվածքի պրիմիտիվ անալիզին: Այդ նույն ուղիով կարելի է գնալ բջիջների քիմիական հատկությունները, նրանց կառուցվածքային էլեմենտները և նրանց փոփոխությունը որոշելիս: Այդ ամենը կարելի է որոշել բջջի այս կամ այն օպտիկական բնութագրով: Մեքենաների օգնությամբ կարելի է մշակել հսկայական վիճակագրական նյութ, որը մատչելի չէ «աչքով» տարվող ոչ մի հետազոտության:

Էլեկտրոնային միկրոսկոպիայի օգնությամբ ժամանակակից բիոլոգիայի ձգտումը դեպի են-

թամիկրոսկոպիկ «վերմոլեկուլյար» բնագավառը, բջջի կառուցման հարցերի անմիջական շփումը նրա քիմիայի հետ, փոխանակության հետ, ինչպես նաև անհամար քանակությամբ բջջային կառուցվածքների ու նրանց քիմիական բնութագրերի մեքենայական անալիզը ամենամոտ ժամանակում բջջի կյանքի ուսումնասիրության ասպարեզում կհասցնեն դեռ ավելի մեծ հաջողության:

Ի՞նչը կարող է ավելի ավնիվ լինել այն պայքարից, որը մղվում է կյանքի համար, նրա էության իմացության համար:

Այդ վիթխարի խնդիր է: Այն պահանջում է գիտնականների խոշոր կոլեկտիվների ջանքեր, նոր մեթոդների մշակում, տեխնիկայի ներգրավում, գաղափարների փոխանակություն, վեճեր, դիսկուսիաներ: Յուրաքանչյուր քայլ այդ իմացության մեջ խոստանում է նոր հաջողություններ առողջության, երկարակեցության, նյութական բարեկեցության հիմքերի ստեղծման համար մղվող պայքարում:



## ՄԵՐ ՆՅՈՒԹԵՐԻ ՀԵՏՔԵՐՈՎ

ՀԿՊ Կենտկոմի «Լենինյան ուղիով» ամսագիրը իր սեպտեմբերյան համարում հանդես է եկել «Գրական ժառանգության հարցի առթիվ» խմբագրական հոդվածով, որի մի զգալի մասը նվիրված է գրականագետ Ց. Խանզադյանի հոդվածների ժողովածուի կազմման, խմբագրման և ապա գնահատման հարցերին:

Հոդվածում համոզիչ փաստերով ցույց է տրվում, որ ժողովածուի թե՛ կազմողը, թե՛ խմբագիրները անհեթեթ վերաբերմունք են ունեցել Ց. Խանզադյանի գրական ժառանգությանը, որտեղ աչքի է զարնում էկլեկտիզմը, նիհիլիստական վերաբերմունքը հայ գրականության նկատմամբ:

Այդ կապակցությամբ խմբագրական հոդվածում քննադատության է ենթարկվել նաև «Գրական թերթը», վերոհիշյալ ժողովածուի առթիվ տպագրված Ս. Աղաբաբյանի գրախոսականի համար, որի մեջ նույնպես անհեթեթ վերաբերմունք է ցուցաբերված Ց. Խանզադյանի գրական ժառանգության նկատմամբ:

«Գրական թերթի» խմբագրությունը գտնում է, որ «Լենինյան ուղիով» ամսագրի քննադատությունը ճիշտ է ու տեղին: Իսկապես, թերթը սխալ է թույլ տվել, տպագրելով գրախոսություն, որտեղ ճիշտ չի գնահատված Ց. Խանզադյանի գիրքը:

---


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵՆՈՒՆՑ Ա. Մ., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.

Թողարկիչ՝ Ա. ՑԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2-02-24
Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении тел. 2-02-24

ՎՖ 05267 Պատվեր 2821 Տիրաժ 9100 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ. մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 23/X 1963 թ.:

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան:





# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԿԻՆՈՆ ԳՐՊԱՆՈՒՄ

*Կինոսիրող «էկրան» ապարատը իսկապես գրպանի է: Նրա ծավալը 105 . 98 . 38 մմ է, իսկ քաշը ընդամենը 600 գրամ: Այն հարմար է թե՛ էքսպեդիցիաների, թե՛ տուրիստական արշավների ժամանակ և թե զբոսնելիս: Ապարատի կոմպլեկտի մեջ մտնում են երեք կասետա, որոնցից յուրաքանչյուրում տեղավորվում է 10 մետր երկարությամբ 8 միլիմետրանոց նեղ ժապավեն: Նորմալ հաճախականության և անընդմեջ նկարահանման դեպքում ամբողջ ժապավենը կարող է օգտագործվել 2—5 րոպեում: Զսման մեխանիզմի զսպանակի լրիվ լարումը նախատեսված է երկու մետր ժապավենի համար: Կարելի է ժապավենը անմիջապես փոխել ըստ զգայնության՝ սև-սպիտակի գունավորով: Կարելի է կատարել դանդաղեցված, նորմալ և արագացված նկարահանում:*

## ԵՐԿԱՆԻՎ ԱՎՏՈՄԵՔԵՆԱ

*Երկանիվ ավտոմեքենա ստեղծելու վրա շատ երկրների կոնստրուկտորներ աշխատում են արդեն ավելի քան հիսուն տարի: Բոլորովին վերջերս հաղորդվեց չեխ կոնստրուկտոր Ռ. Վաշեչկի ստեղծած «Դալնիկ—02» երկանիվ ավտոմեքենայի մասին: Նրա երկարությունը 3230 մմ է, լայնությունը՝ 970 մմ, բարձրությունը՝ 1180 մմ, 100 կմ ճանապարհի համար ծախսում է 3,5 լիտր վառելիք, իսկ առավելագույն արագությունը հավասար է 140 կմ ժամի: Կանգառի ժամանակ հավասարակշռությունը պահպանվում է կողքերից շարժվող անվակների միջոցով: Մեծ ուշադրություն է նվիրված ղեկի կայունությանը. ծանրության կենտրոնը տեղավորված է առաջամասում, իսկ պլաստմասսայից իրանի հետևի մասում տեղակայված է կայունարարը:*

*Առաջին մոդելը փորձնական է, բայց այն արդեն պատկերացում է տալիս այդ մոդելի սերիական արտադրության ապագայի մասին:*

## ԼՈՒՅՍԸ ՈՐՈՇՈՒՄ Է ԿԱԹԻ ՅՈՒՂԱՅՆՈՒԹՅՈՒՆԸ

*Կաթը կյանքի էլեքսիրն է, այն ուժ է տալիս նորածնին, մշտական ուղեկիցն է ծերության: Կաթի մեջ կա այն ամենը, ինչ անհրաժեշտ է կյանքի համար, բայց այնտեղ ամենից գլխավորը յուղն է և սպիտակուցը: Շատ կարևոր է արագ որոշել դրանց պարունակությունը կաթի մեջ: Դրանում շահագրգռված են սելեկցիոներները, ֆերմաների կաթ ընդունող կետերի աշխատողները և կաթնարդյունաբերության մասնագետները:*

*Յուղայնության տոկոսը քիմիական մեթոդով որոշելը տևում է 20—25 րոպե, բացի դրանից, յուրաքանչյուր անալիզի համար ծախսվում է 10 սմ³ ծծմբաթթու և դեֆիցիտային իզոամիլային սպիրտ: Այս հանգամանքը բիոֆիզիկների առջև խնդիր դրեց՝ մշակել կաթի յուղայնությունը արագ որոշող և էժան մեթոդ:*

*Բելոռուսական ՍՍՌ գիտությունների ակադեմիայի բիոֆիզիկայի և իզոտոպների լաբորատորիայի աշխատողները ստեղծեցին մի հարմարանք, որի մեջ լցնում են կաթը, վրան ավելացնում 0,02 տոկոսանոց հատուկ ներկի՝ ֆուկսինի լուծույթ, մի քիչ ալկալի, այնուհետև խառնուրդը եռացնում են մեկ րոպե:*

*Կանաչ լուսաֆիլտրի միջոցով այդպիսի կաթի լուսավորման ինտենսիվությունը չափելուց հետո ֆոտոէլեմենտի կամ ֆոտոբազմացուցչի միջոցով կարելի է բավականին հեշտությամբ որոշել յուղի տոկոսը: Մի անալիզի համար պահանջվում է 3—5 րոպե, ծախսվում են նվազագույն չափի ռեակտիվներ, քանի որ անալիզի համար պահանջվում է չնչին քանակությամբ կաթ: Այդ գործիքը կարող է աշխատել ամեն տեղ, ուր կա փոփոխական էլեկտրահոսանք:*

# ԲԱՑՎԱԾ Է

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ

# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ»

ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳՐԻ

## 1964 ԹՎԱԿԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*հրապարակում է ՍՄԿՊ և ՀԿՊ պատմության, ռևոլյուցիոն շարժման, քաղաքատնտեսության, փիլիսոփայության, արդյունաբերության և գյուղատնտեսության էկոնոմիկայի, միջազգային կյանքի վերաբերյալ հոդվածներ։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*լուսաբանում է ռեսպուբլիկայում կոմունիստական շինարարության պրակտիկան, զետեղում է նյութեր պարտիական, կոմերիտական, պրոֆմիութենական և սովետական շինարարության, պրոպագանդիստական և մասսայական-քաղաքական աշխատանքի հարցերի մասին։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*լուսաբանում է գիտության, գրականության ու արվեստի զարգացման հարցերը, տպագրում է կոնսուլտացիաներ, տեղեկանքներ, մամուլի տեսություններ, քննադատական-գրախոսական հոդվածներ, պատասխանում է ընթերցողների հարցերին։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*տպագրում է նյութեր եղբայրական սովետական ռեսպուբլիկաների, ժողովրդական դեմոկրատիայի երկրների, միջազգային կոմունիստական շարժման մասին։*

### ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ԱՐԺԵՔԸ

Մեկ տարին — 3 ռ.

Վեց ամիսը — 1 ռ. 50 կ.

### ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է՝

*Կապի գրասենյակներում, բաժանմունքներում, «Սոյուզպեչատ»-ի քաղաքային բաժիններում, գործարաններում, ֆաբրիկաներում, հիմնարկ-ձեռնարկություններում, ուսումնական հաստատություններում, սովխոզներում, կոլտնտեսություններում՝ մամուլի հասարակական լիազորների միջոցով։*

*«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»*